Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք


# 3

ՄԱՐՏ

1988 թ.


# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԱՄԻՍԸ ՄԵԿ ԱՆԳԱՄ ՀԱՅԵՐԵՆ ԵՎ ՌՈՒՍԵՐԵՆ


## Բովանդակություն




ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

Խմբագրության հասցեն՝
*375023, Երևան-23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2*

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 53—86—11
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

Բաժիններ

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
53—59—94
թողարկիչ, սրբագրիչ՝ 53—86—11



# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1988 թվականի փետրվարի 17-ին աշխատանքն սկսեց ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը: Պլենումը բացեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը: Պլենումի քննարկմանն է դրված «Միջնակարգ ու բարձրագույն դպրոցի վերակառուցման ընթացքի և դրա իրականացման բնագավառում կուսակցության խնդիրների մասին» հարցը: Այդ հարցի առթիվ զեկուցումով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Ե. Կ. Լիգաչովը:

Նիստում զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակության ժամանակ ելույթ ունեցան՝ ՍՄԿԿ Իրկուտսկի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Ի. Սիտնիկովը, Ուկրաինայի կոմկուսի Պոլտավայի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Ֆ. Տ. Մորգունը, Պերմ քաղաքի «Ֆ. Է. Ձերժինսկու անվան մեքենաշինական գործարան» արտադրական միավորման կարգաբերող բանվորուհի ընկ. Ն. Մ. Երշովան, ՀամԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Ի. Միրոնենկոն, Մոսկվայի ժողովրդական դեպուտատների քաղաքային սովետի գործկոմի նախագահ ընկ. Վ. Տ. Սայկինը, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի փոխպրեզիդենտ, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի Սիբիրի բաժանմունքի նախագահ ընկ. Վ. Ա. Կոպտյուգը, Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ք. Մ. Բագիրովը, Էստոնիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Գ. Վայնոն, ՍՍՀՄ բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստր ընկ. Գ. Ա. Յագոդինը, Ուկրաինական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Վ. Ս. Շևչենկոն, Ղազախական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Ն. Ա. Նազարբաևը, ՍՍՀՄ էլեկտրոնային արդյունաբերության մինիստր ընկ. Վ. Գ. Կոլեսնիկովը, ՍՍՀՄ գրողների միության վարչության նախագահ ընկ. Գ. Մ. Մարկովը, ՍՄԿԿ Լենինգրադի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Յու. Ֆ. Սոլովյովը, Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ե. Ե. Սոկոլովը, ՍՍՀՄ ներքին գործերի մինիստր ընկ. Ա. Վ. Վլասովը, Վրաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ջ. Ի. Պատիաշվիլին, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի փոխպրեզիդենտ, Մոսկվայի Մ. Վ. Լոմոնոսովի անվան պետական համալսարանի ռեկտոր ընկ. Ա. Ա. Լոգունովը, ՍՄԿԿ Թաթարիայի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Գ. Ի. Ուսմանովը:

1988 թվականի փետրվարի 18-ին ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում շարունակվում էր ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, Կենտկոմի քարտուղար Ե. Կ. Լիգաչովի «Միջնակարգ ու բարձրագույն դպրոցի վերակառուցման ընթացքի և դրա իրականացման բնագավառում կուսակցության խնդիրների մասին» զեկուցման քննարկումը:

Մտքերի փոխանակության ժամանակ ելույթ ունեցան. ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ ընկ. Գ. Ի. Մարչուկը, ՍՄԿԿ Տոմսկի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Ի. Զորկալցևը, սովետական բանակի և ռազմածովային նավատորմի գլխավոր քաղաքական վարչության պետ ընկ. Ա. Դ. Լիզիչևը, ՌՍՖՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ ընկ. Ե. Մ. Չեխարինը, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, ՀԱՄԿԽ-ի նախագահ ընկ. Ս. Ա. Ծալաևը, Կրասնոդարի երկրամասի ՍՄԿԿ Կուրգանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Զ. Ի. Բորովիկովան, ՍՍՀՄ պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության տուղար Մ. Ս. Գորբաչովը:

Պլենումում մեծ ճառով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

Պլենումը քննարկված հարցի առթիվ ընդունեց ծավալուն որոշում:

Պլենումը ընկ. Մ. Ս. Գորբաչովի ելույթի առթիվ ընդունեց որոշում:

Պլենումում քննարկվեցին կազմակերպական հարցեր:

Պլենումը ընկ. Յու. Դ. Մասլյուկովին ընտրեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու:

Պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկ. Գ. Պ. Ռազումովսկուն ընտրեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու:

Պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընտրեց ընկ. Օ. Դ. Բակլանովին:

Պլենումը ընկ. Բ. Ն. Ելցինին ազատեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածուի պարտականություններից:

Պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի անդամության թեկնածությունից անդամ փոխադրեց ՍՄԿԿ Կենտկոմի ընդհանուր բաժնի վարիչ ընկ. Վ. Ի. Բոլդինին, Ղազախական ՍՍՀ Ամանգելդիի անվան սովխոզի մեխանիզատոր ընկ. Ն. Վ. Գելլերտին, ՀամԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Ի. Միրոնենկոյին:

Դրանով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը ավարտեց իր աշխատանքը:

---

# ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆԸ՝ ՆՈՐԱՑՄԱՆ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ

## ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ ճառը ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում 1988 թվականի փետրվարի 18-ին

Ընկերներ:

Մեր պլենումը տեղի է ունենում վերակառուցման պատասխանատու ժամանակաշրջանում: Հասարակական կյանքի դեմոկրատացումը, արմատական տնտեսական ռեֆորմը կուսակցությունից պահանջում են գործողությունների հստակ հեռանկար: Հենց սրանով է ղեկավարվում քաղբյուրոն, մշակելով XIX կուսակցական կոնֆերանսի կոնցեպցիան: Այն պետք է շատ բան որոշի կուսակցության ստրատեգիական աշխատանքում:

Բայց ինչ դիրքերից էլ որ մենք մոտենանք մեր էկոնոմիկայի, մշակույթի, սոցիալական ու հոգևոր կյանքի զարգացման ուղիների որոշմանը, վճռական գործոնը միշտ կլինեն մարդն ինքը, նրա քաղաքական ու ինտելեկտուալ կերպարը, նրա վարպետությունը, նրա հայրենասիրությունն ու ինտերնացիոնալիզմը, ստեղծագործելու նրա ընդունակությունը, նրա քաղաքացիական դիրքորոշումն ու ակտիվությունը:

Ոչ մի կասկած չկա. այն ամենը, ինչ վերաբերում է դպրոցին, կրթությանը և դաստիարակությանը, ուղղակի կապված է սոցիալիզմի զարգացման հետ, վերակառուցման հետ: Ավելին, իրենից ներկայացնում է վերակառուցման կարևորագույն ուղղությունը:

Հիշեցնեմ, որ արդեն առաջին, դժվարագույն հետհեղափոխական տարիներին Վ. Ի. Լենինը նոր սովետական դպրոցի շինարարությունը համարում էր կուսակցության ամենաանհետաձգելի գործերից մեկը: Եվ դա հասկանալի է, քանի որ դպրոցից, նոր մարդու ուսուցումից ու դաստիարակումից էր կախված, առանց որևէ չափազանցության, սոցիալիզմի ապագան:

Հարցն այդպես է դրված նաև այսօր, երբ մեր հասարակությունը իրականացնում է հեղափոխական անցում դեպի որակապես նոր վիճակ: Հասարակությունը կրթված, համոզված, սոցիալիզմին նվիրված և դրա հետ մեկտեղ ակտիվ, որոնող, դեմոկրատիայի, կոլեկտիվների տնտեսական ինքնուրույնության պայմաններում, իր ու երկրի համար տնտեսական ու սոցիալական հարանուն պատասխանատվության մթնոլորտում ապրել ու աշխատել կարողացող քաղաքացու կարիք ունի:

Նման մարդու ձևավորման գործում բոլոր մակարդակների դպրոցի ունեցած դերի մասին ասվեց ընկեր Ե. Կ. Լիգաչովի զեկուցման մեջ, մյուս ընկերների ելույթներում. չեմ կրկնի:

Բայց եթե մենք այդպիսի մեծ պահանջներ ենք ներկայացնում դպրոցին, ապա որքան նշանակալի, հեղինակավոր դեմք պետք է լինի ուսուցիչը, գիտելիքների ինչպիսի լայնածավալ պաշար, ինչպիսի մանկավարժական ձիրք ու վարպետություն նա պետք է ունենա: Այստեղ է, ընկերներ, կրթության ամբողջ համակարգի վերակառուցման «հիմնական օղակը»:

Իհարկե, հարկավոր են, և որքան կարելի է ավելի արագ, թե՛ կրթության նոր կազմակերպում, թե՛ նոր ծրագրեր և թե ուսուցման նյութատեխնիկական ապահովում, հաշվեսարքերով ուսուցման հագեցում: Բայց առանց իրենց գիտելիքներն ու իրենց սիրտը մեր երեխաներին նվիրող մարդկանց, առանց մեծատառով Ուսուցչի այդ ամե-

նը կարող է մնալ սոսկ որպես ձևական ու թանկ արժեցող նորամուծություն, չդառնալ կենդանի գործ:

Ուսուցիչը վերակառուցման կարևորագույն գործող անձ է: Եթե նա մեզ պաշտպանի համոզված կերպով, խելացիորեն ու կրքոտությամբ, ապա վերակառուցումը կստանա բազմաթիվ նոր անկեղծ կողմնակիցներ և մարտիկներ, հեղափոխական սոցիալիստական գործի շարունակողներ: Դե, իսկ եթե պաշտպանի ձևականորե՞ն, մնա անտարբե՞ր, չեզո՞ք: Ո՞վ կարող է հանձն առնել կանխագուշակելու, թե ինչպիսի սոցիալական լճացման, ինչպիսի հետընթաց շարժման կարող է հանգեցնել նման անտարբերությունը:

Իհարկե, միշտ էլ կարելի է հույս դնել բուն կյանքի վրա. այսօր կյանքը խոսում է վերակառուցման լեզվով՝ ճշմարտության ազնիվ, անկեղծ լեզվով, իսկ դա երևի հենց ամենալավ սոցիալական մանկավարժությունն է: Եվ, այնուամենայնիվ, ու դա բնական է, ապագայի հույսերը մենք զգալի չափով կապում ենք մեր դպրոցի աշխատանքի հետ, նրա իսկ վերակառուցման հետ, սովետական ուսուցչի մանկավարժական տաղանդի և ստեղծագործական որոնման հետ:

Ուսուցչի նկատմամբ վերաբերմունքը պետք է փոխել արմատապես, վճռականորեն, առանց քաշքշուկի ու տատանումների: Նրան ազատել մանրախնդիր խնամակալությունից, վերացնել կասկածամտությունը որոնումների ու ձեռքբերումների նկատմամբ: Բեռնաթափել ուսուցչական աշխատանքին խորթ պարտականություններից, նրա ժամանակը և ուժերը առավելագույնս ազատել գլխավորի համար: Վերացնել մանկավարժության մեջ նորարարության ճանապարհին եղած բոլոր արգելքները ու խոչընդոտները, արժանավայել նյութական պայմաններ ստեղծել ուսուցչի ստեղծագործական աշխատանքի համար: Սա կուսակցական ու սովետական մարմինների պարտքն է:

Բազմազգ սովետական դպրոցում աշխատում են հրաշալի նորարար մանկավարժներ, որոնք իրենց ուղիները են փնտրում երեխաների ուսուցման և դաստիարակության գործում: Նրանց անունները հայտնի են: Եվ որքան շատ լինեն բարձր որակավորում ունեցող այդպիսի ուսուցիչներ, որքան հաճախակի առաջանան համախոհների ինքնատիպ մանկավարժական կոլեկտիվներ, մեր դպրոցը այնքան արագ կազատվի քարացածությունից, ձևականությունից, լճացման ոգուց: Դրանից կշահեն թե՛ մեր երեխաները, թե՛ մեր թոռները և թե հեղափոխական վերակառուցման ամբողջ գործը:

Աշխատանքի մյուս կարևորագույն ուղղությունը միջնակարգ ու բարձրագույն դպրոցի նյութական բազան է: Ես նկատի ունեմ կրթության և ուսուցման բոլոր ձևերը, ուսումնական հաստատությունների բոլոր տեսակները:

Ակներևաբար մենք այսուհետև էլ պետք է ամենուրեք՝ թե կենտրոնում և թե տեղերում, լրացուցիչ հնարավորություններ գտնենք կրթության բազայի զարգացման ու ամրապնդման համար: Այստեղ մենք երկու կարծիք չունենք ու չենք կարող ունենալ:

Մեր պլենումը քննության առավ կրթության ռեֆորմի իրագործման հարցերը պետական լայն դիրքերից: Գլխավորն այն է, որ մենք պարտավոր ենք միջնակարգ ու բարձրագույն դպրոցի ռեֆորմը հասցնել մինչև վերջ և ամենուրեք: Չի կարելի թույլ տալ դանդաղում, կիսատ-պռատ միջոցներ և անհամաձայնություններ: Պետք է գործել հետևողականորեն և նպատակասլաց կերպով:

Այս երկու օրվա ընթացքում մեզ մոտ չափազանց արգասավոր դիսկուսիա տեղի ունեցավ: Դա մեկ անգամ ևս ցույց տվեց, թե որքան շատ պրոբլեմներ են կուտակվել, թե մենք որքան համառորեն պիտի աշխատենք: Այստեղ ընդհանուր գիծը պարզ է. սովետական դպրոցը պետք է բարձրացվի որակական նոր մակարդակի: Այս հարցում մենք միասնական ենք:

Բայց, կարծում եմ, ճիշտ չէր լինի այժմ, պլենումում կանխորոշել այն բոլոր կոնկրետ ուղիները, որոնցով ընթանալու է կրթության համակարգի նորացումը: Սա հեշտ գործ չէ: Այստեղ իրենց վճռական խոսքը պետք է ասեն լայն հասարակայնությունը և ամենից առաջ մասնագետները. ուսուցիչները, դասախոսները, գիտնականները: Թող մեր պլենումի որոշումները կուսակցության քաղաքական հանձնարարականը դառնան ուսուցչության համար, որը պատրաստվում է իր հերթական համագումարին:

Թող այս մասին մտածեն նաև բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական



կրթության աշխատողները: Կասկածից վեր է, որ հենց նման մոտեցումը դեմոկրատացման ոգով, վերակառուցման ոգով կլինի:

Ընկերնե՛ր: Իմ ելույթում կուզենայի անդրադառնալ վերակառուցման մի քանի սկզբունքային գաղափարախոսական կողմերի: Այն է՝ մեր կողմից կատարվող գործերի գաղափարախոսական ընկալմանը, քանի որ ոչ մի բան մարդու գիտակցության կողքից չի անցնում, ոչ մի բան առանց նրա չի արվում:

Կուզենայի նաև օգտվել այս հնարավորությունից՝ նախնական կարգով առաջադրելու մի քանի հարցեր, որոնք պետք է կշռադատվեն, քննարկվեն XIX համամիութենական կուսկոնֆերանսի նախօրեին:

Այժմ, երբ մենք թևակոխել ենք ընդունված որոշումների կենսագործման համար պայքարի վճռական փուլ, երբ քաղաքականությունը ամենօրյա պրակտիկա է դառնում, երբ վերակառուցումը լայն ասպարեզ է դուրս եկել, այն ավելի ու ավելի խորն է շոշափում տասնյակ միլիոնավոր մարդկանց կենսական շահերը, ամբողջ հասարակությանը: Եվ նորից հրատապ են դարձել այն հարցերը, որոնց պատասխանները, ինչպես թվում էր, արդեն տրված են: Մարդիկ ուզում են ավելի լավ ըմբռնել հասարակության մեջ սկսված փոփոխությունների իմաստը, հասկանալ, թե որոնք են վերակառուցման էությունն ու նպատակը, թե դեպի ուր ենք մենք գնում, ինչ բնագծեր ենք ձգտում դուրս գալ, ինչ ենք հասկանում հասարակության նոր որակ ասելով, որին ուզում ենք հասնել:

Այդ ցանկությունը միանգամայն բնական է. մենք սկսել ենք հասարակական կյանքի ձևերի վերակառուցում, յուրացնում ենք նորը, հրաժարվում ստեղծված ստերեոտիպերից: Փոփոխությունները շոշափում են մարդկանց գիտակցությունն ու հոգեբանությունը, նրանց շահերը, հասարակության մեջ, աշխատավորական կոլեկտիվներում նրանց ունեցած դիրքը: Մեղքներս ինչ թաքցնենք. նույնիսկ բազմաթիվ լավ մարդիկ անցյալում ասես ընտելացել էին խախտումներին ու թերություններին, անտարբեր դարձել դրանց նկատմամբ, նվազեցրել իրենց սոցիալական ակտիվությունը: Շատերը միանգամից չէ, որ հասկացան սկսված վերափոխումների իմաստը, միանգամից չէ, որ տեսան, որ վերակառուցումը կյանքում նոր նպատակներ է բացում, բարձրացնում հենց իրենց, որ վերակառուցումը լիովին համապատասխանում է իրենց նյութական ու հոգևոր շահերին: Վերակառուցումը առանձնակի հաշիվ է ներկայացնում նրանց, ովքեր ապրել են ոչ ըստ աշխատանքի, ոչ խղճի մտոք, ովքեր վատ են աշխատել: Ես արդեն չեմ խոսում սոցիալիստական հասարակության օրենքների և բարոյականության բացահայտ խախտումների մասին:

Այսպիսին է, ես կասեի, այն ոչ հասարակ քաղաքական ու գաղափարախոսական իրադրությունը, որի պայմաններում մեզ հարկ է լինում գործել: Կուսակցությանը հաճախ հարկ է լինում բառիս բուն իմաստով վերակառուցման համար պայքարել ինչպես արտադրության մեջ, այնպես էլ հոգևոր ոլորտում: Իհարկե, այդ պայքարը մեզ մոտ դասակարգային հակամարտությունների ձև չի ընդունում: Բայց մենք տեսնում ենք, ընկերներ, թե ինչպիսի սրությամբ է այն ընթանում: Թեժ դիսկուսիաներ են տեղի ունենում այն խոչընդոտների մասին, որոնց բախվում է վերակառուցումը, մարդկանց մտահոգում է, որ դանդաղորեն, դժվարություններով են կենսագործվում ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան և հունիսյան պլենումների նորարարական որոշումները: Շատ տասնամյակների ընթացքում առաջին անգամ մենք ռեալ կերպով զգում ենք կարծիքների սոցիալիստական պլյուրալիզմը: Եվ դա նույնպես անսովոր է ու գնահատվում է ոչ միանշանակ կերպով, պահանջում է ուսումնասիրություն, վերլուծություն, պարզաբանում: Բայց այդ ամենով հանդերձ, մենք պետք է տեսնենք գլխավորը՝ ժողովրդի հարաճուն աջակցությունը վերակառուցման քաղաքականությանը:

Մենք ասում ենք, որ պաշտպանում ենք և կպաշտպանենք այն, ինչ օգուտ է բերում սոցիալիզմին, մերժում ենք ու կմերժենք այն ամենը, ինչ վնասում է ժողովրդի շահերին: Մենք տեսնում ենք, որ ոմանց մտքերի մեջ խառնաշփոթ է առաջացել. մենք արդյոք չե՞նք նահանջում սոցիալիզմի դիրքերից, մանավանդ, երբ մտցնում ենք տնտեսավարման, հասարակական կյանքի նոր, անսովոր ձևեր, արդյոք ռևիզիայի չե՞նք ենթարկում բուն մարքս-լենինյան ուսմունքը: Զարմանալի չէ, որ արդեն հայտնվել են նաև մարքսիզմ-լենինիզմի այնպիսի «պաշտպաններ», սոցիալիզմի համար սգացողներ, որոնք գտնում են, որ թե՛ մեկը և թե՛ մյուսը սպառնալիքի տակ են:

Որտեղի՞ց է սա գալիս: Ո՞րն է նման երկյուղների պատճառը: Կարծում եմ բանն

այն է, որ վերակառուցումն ինքը ըմբռնվում է հաճախ տարբեր կերպ: Ոմանք դրա մեջ տեսնում են կոսմետիկական նորոգում, ճակատամասի ներկում, գոյություն ունեցող մեխանիզմի յուրատեսակ «լրակարգաբերում», որը խղճուկ կերպով, բայց աշխատում է, իսկ նոր մեխանիզմից դեռ հայտնի չէ, թե ինչ կստացվի: Ուրիշները պահանջում են հիմնովին ապամոնտաժել սոցիալիզմի բուն սիստեմը, այն ուղին, որով տասնամյակներ շարունակ առաջ է ընթացել ժողովուրդը, հայտարարում են ոչ մի տեղ չտանող կեղծ ուղի, ամբողջովին ժխտում են սոցիալիզմի արժեքները, դրանց այլընտրանքներ փոխառնում բուրժուական լիբերալիզմի և նացիոնալիզմի զինանոցից: Ոմանք էլ տարվում են արմատական ֆրազաբանությամբ, կոչ անում ցատկել սոցիալիստական զարգացման փուլերի վրայով, անտեսելով վերակառուցման տրամաբանությունը:

Այս ամենի մեջ, ինչ ես ասում եմ, չկա չափազանցություն, չկա պրոբլեմի դիտավորյալ սրում: Այո, այս ամենը տեղի է ունենում: Եվ նման իրավիճակը ծնունդ առավ վերակառուցման թափից, դրա խորացումից, նոր բնագծեր դուրս գալուց, երբ մեծամասնությանը պարզ դարձավ, որ մեր նպատակներն ու պլանները ռեալ են, որ դրանք, լենինյան արտահայտությամբ, «լուրջ են ու երկար ժամանակի համար»:

Չի կարելի հաշվի չառնել նաև այն հսկայական դժվարությունները, որոնց հետ կապված է սկզբունքային հարցերում մտածողության վերակողմնորոշումը: Նման բան արդեն եղել է մեր պատմության մեջ: Լենինը, մշակելով իր կոոպերատիվ պլանը, նշում էր. «... մենք հարկադրված ենք խոստովանելու, որ սոցիալիզմի վերաբերմամբ ունեցած մեր ամբողջ տեսակետը արմատական փոփոխության է ենթարկվել»: Բայց մենք գիտենք, թե կուսակցությանը ինչպիսի ջանքեր հարկ եղավ գործադրել դրա համար: Դրա վկայությունը այն տարիների դիսկուսիաներն են: Պահանջվեցին Լենինի հեղինակությունն ու հանճարը, որպեսզի սոցիալիզմի նկատմամբ նոր մոտեցումը աջակցություն գտներ կուսակցության մեջ ու երկրում: Այն ժամանակաշրջանի դասերը մենք պետք է լավ յուրացնենք: Մեզ համար այժմ դա կենսականորեն անհրաժեշտ է:

Վերակառուցումը մեզ պարտավորեցնում է նորովի նայել մի քանի սովորական դարձած բնութագրերի վրա, ոչ միայն անցած, այլև առաջիկա ուղին համադրել առաջադիմության այն չափանիշների հետ, նոր հասարակության կառուցման այն նպատակների հետ, որ ձևակերպել են մարքսիզմ-լենինիզմի կլասիկները: Այլ կերպ ասած՝ մեր պրակտիկ գործողությունների ուղղությունները ստուգել այն գլխավոր փարոսներով, որոնցով ահա ավելի քան մեկ դար կողմնորոշվում են կոմունիստները: Եվ ոչ թե սոսկ կրկնել քարացած ճշմարտությունները հանուն ինչ-որ արարողակարգի, այլ գտնել ստեղծված իրավիճակի ծնունդը հանդիսացող շատ հարցերի պատասխանը:

Ահա թե ինչու, ընկերներ, այդքան մեծ նշանակություն են ստանում գաղափարախոսական գործունեության պրոբլեմները, սոցիալիզմի տեսության և վերակառուցման հարցերը: Չի կարելի ասել, թե գաղափարատեսական հարցերը մեր ուշադրությունից դուրս են մնացել: Դրանք լայնորեն արտացոլված են կուսակցության XXVII համագումարին Կենտրոնական կոմիտեի ներկայացրած Քաղաքական զեկուցման մեջ, ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության մեջ, Կենտկոմի պլենումների նյութերում, մի շարք ուրիշ կուսակցական փաստաթղթերում: Էկոնոմիկայում, հասարակության քաղաքական, սոցիալական ու հոգևոր ոլորտներում վերակառուցման խնդիրների բուն առաջադրումը անհնար կլիներ առանց տեսության վրա հենվելու, առանց գաղափարախոսական հիմնավորման:

Հոկտեմբերի 70-ամյակին առնչվող փաստաթղթերում մենք ձգտել ենք տալ սովետական ժողովրդի անցած ուղու անաչառ, կշռադատված գնահատականը, պատասխանել սովետական մարդկանց հուզող բազմաթիվ բարդ հարցերի: Բայց այժմ, և սա պետք է ընդգծել, հրամայաբար պահանջմունք է զգացվում այդ հարցերին մոտենալ՝ հաշվի առնելով նոր պահանջները, դրանց վրա աշխատել հիմնավորապես:

Հենց կուսակցությունն է պարտավոր՝ զինված լինելով անցյալի ու ներկայի մասին, զարգացման ռեալ հեռանկար ունեցող միտումների մասին գիտական գիտելիքով, գլխավորել հասարակության մեջ սոցիալիստական գիտակցության ձևավորման պրոցեսները: Հենց կուսակցությունը կարող է ու պետք է տեսականորեն լուսաբանի սոցիալիստական շինարարության նոր փուլը՝ հաշվի առնելով այն ամբողջ նորությունը, որ վերակառուցումը մտցնում է դրա մեջ: Ընտրել և ամբողջ հասարակության ի սպաս դնել այն, ինչ իրոք ծառայում է սոցիալիզմին, համապատասխանում



նրա զարգացման շահերին, մեզ առաջնորդում դեպի սոցիալիստական և ոչ թե ինչ-որ օտար, «փոխառնված» նպատակներ:

Վերակառուցման անհրաժեշտությանը մեզ հանգեցրեց, իհարկե, ամենից առաջ նախորդ ժամանակաշրջանի լճացման հետևանք հանդիսացող ամենաանհետաձգելի պրոբլեմները լուծելու ձգտումը: Բայց որքան լայնորեն է ծավալվում վերակառուցումը, այնքան հասկանալի են դառնում դրա ավելի ընդհանուր իմաստն ու բախտորոշ նշանակությունը սոցիալիզմի համար:

Այսօր այն ըմբռնումն է հաստատվել, որ վերակառուցումը սովետական հասարակության զարգացման օբյեկտիվորեն անհրաժեշտ փուլ է, որի էությունը հասարակության անցումն է դեպի նոր որակական վիճակ: Մենք պետք է ապահովենք արմատական փոփոխություններ արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների մեջ, հասարակական և քաղաքական կառուցվածքների հեղափոխական նորացում, հասարակության հոգևոր, ինտելեկտուալ պոտենցիալի աճ: Մենք ձգտում ենք ներկա պայմաններում վերածնել նոր կարգերի լենինյան կերպարանքը, դա մաքրել շերտանստվածքներից ու ձևախախտումներից, ազատվել այն ամենից, ինչ կաշկանդում էր հասարակությանը և թույլ չէր տալիս լիովին իրացնել սոցիալիզմի պոտենցիալը: Եվ գլխավորն է նոր որակ տալ սոցիալիստական հասարակությանը՝ հաշվի առնելով ժամանակակից աշխարհի բոլոր իրողությունները:

Սոցիալիզմի էությունը աշխատավորների իշխանության, մարդու, բանվոր դասակարգի, ամբողջ ժողովրդի բարօրության առաջնայնության հաստատումն է: Վերջին հաշվով սոցիալիզմի խնդիրն է վերջ դնել մարդու սոցիալական օտարացմանը, որը բնորոշ է շահագործողական հասարակությանը, իշխանությունից, արտադրամիջոցներից, իր աշխատանքի արդյունքներից, հոգևոր արժեքներից օտարացմանը:

Հոկտեմբերյան հեղափոխությունը ուղի բացեց այդ պատմական խնդրի լուծման համար: Շրջադարձային նշանակություն ունեցող սկզբունքային քայլեր էին աշխատավորների իշխանության հաստատումը, արտադրամիջոցների մասնավոր սեփականության վերացումը, մարդու կողմից մարդու շահագործման վերացումը: Սրանք սոցիալիզմի հիմնարար նվաճումներն են:

Բոլոր 70 տարիների ընթացքում մեր կուսակցությունը և ժողովուրդը ոգևորվել են սոցիալիզմի գաղափարով և կառուցել այն: Բայց թե՛ արտաքին և թե ներքին պատճառների բերումով մենք չկարողացանք բավականաչափ լրիվ իրագործել նոր հասարակարգի լենինյան սկզբունքները: Դրան լրջորեն խանգարեցին անհատի պաշտամունքը, կառավարման հրամայողական-վարչական համակարգը, որը ստեղծվել էր 30-ական թվականներին, բյուրոկրատական, դոգմատիկ ու վոլյունտարիստական խեղաթյուրումները, կամայականությունը, իսկ 70-ական թվականների վերջին 80-ական թվականների սկզբին՝ աննախաձեռնողականությունը և լճացման հանգեցրած արգելակիչ երևույթները: Այդ երևույթները և այն ամենը, ինչ դրանցից մնացել ու հասել է մինչև մեր ժամանակները, պետք է անվերադարձ կերպով անցյալի գիրկը գլորվեն:

Այստեղ էլ՝ պատասխան հենց նրանց, ովքեր կասկած են հայտնում. մենք չե՞նք նահանջում արդյոք սոցիալիզմից, սովետական մարդկանց սերունդների կողմից դրված նրա հիմքերից: Ո՛չ, մենք ոչ մի քայլ չենք նահանջում սոցիալիզմից, մարքսիզմ-լենինիզմից, այն ամենից, ինչ նվաճել ու ստեղծել է ժողովուրդը: Բայց մենք վճռականորեն հրաժարվում ենք դոգմատիկ, բյուրոկրատական և վոլյունտարիստական ժառանգությունից, քանի որ դա ընդհանուր ոչինչ չունի ո՛չ մարքսիզմ-լենինիզմի հետ, ոչ էլ իսկական սոցիալիզմի հետ:

Ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմը միշտ էլ կենդանի զարգացող իրականության անաչառ, խորապես գիտական վերլուծություն է: Ոչ մի բանից չխուսափող, ոչինչ չթաքցնող, ոչ մի ճշմարտությունից չվախեցող քննադատական վերլուծություն: Միայն այդպիսի վերլուծությունն է գործում սոցիալիզմի օգտին: Իսկական գիտական որոնման համար չկան ու չեն կարող լինել որևէ սահմանափակումներ: Տեսության հարցերը չեն կարող ու չպիտի լուծվեն որևէ դեկրետով:

Հարկավոր է մտքերի ազատ մրցակցություն: Դրանից միայն կշահի մեր հասարակական միտքը, կբազմապատկվի դրա կանխատեսիչ ուժը, հետևաբար նաև կուսակցության քաղաքականության մշակման համար հուսալի հիմք ծառայելու ունակությունը:

Մարքսիզմ-լենինիզմը հասարակական զարգացման ճանաչողության նկատմամբ, կոմունիստական շինարարության պրակտիկայի նկատմամբ կուսակցական մոտեց-

ման գիտական բազան է: Մոտեցում, որին ներքուստ բնորոշ են նպատակների հումանիզմը, ստեղծագործական սկզբունքը, իրականության գնահատման անաչառությունն ու ազնվությունը, իր նկատմամբ մեծ պահանջկոտությունը և ինքնաքննադատությունը: Մենք ուզում ենք ինչպես հարկն է ուսումնասիրել, իմաստավորել մեր նվաճումներն ու կուտակված պրոբլեմները և դասեր առնել վերակառուցման ու սովետական հասարակության նորացման պայմաններում աշխատելու համար: Հենց այդ պատճառով մենք այդպես սևեռուն կերպով հայացքներս հառում ենք մեր սովետական անցյալին, հենց այդ պատճառով մեզ այդպես հուզում են պատմության հարցերը:

Մենք ի՞նչ նկատի ունենք, երբ խոսում ենք կուսակցության և սովետական հասարակության ճշմարիտ, օբյեկտիվ պատմության ստեղծման մասին: Այս հարցը չի հանգում միայն այս կամ այն անունը նշելուն, հանիրավի մոռացվածներին պատշաճը հատուցելուն, թեև դա այդ վիթխարի աշխատանքի կարևոր, անկապտելի, ես կասեի մարդկային մասն է: Հարցն այն է, որ գրվի ճշմարտացի և լիակատար պատմություն, որը լինի ժողովրդի կյանքի ու պայքարի պատմությունը: Սա պատմական հետազոտությունների մարքս-լենինյան մեթոդաբանության հիմնական հարցն է:

Եվ եթե դրան հետևենք, ապա հարկավոր է վառ կերպով ցույց տալ, թե ինչպես են ապրել, ինչպես են աշխատել, ինչին են հավատացել միլիոնավոր մարդիկ, ինչպես են միախառնվել հաղթանակներն ու անհաջողությունները, հայտնագործություններն ու սխալները, լուսավորն ու ողբերգականը, մասսաների հեղափոխական խանդավառությունն ու սոցիալիստական օրինականության խախտումները, իսկ երբեմն էլ՝ հանցագործությունները: Հենց դա էլ կլինի պատմությանը՝ որպես ժողովրդական զանգվածների գործունեության արդյունքին ուղղված գիտական, մատերիալիստական հայացք: Հենց դա էլ կլինի դրա դիալեկտիկական ըմբռնում, որին խորթ է միակողմանիությունը, որը պատմությունը քննության է առնում ամբողջ բազմազանությամբ, բարդությամբ ու հակասականությամբ հանդերձ, առանց առանձին կողմերի գերաճած ուռճացման:

Հասարակության պատմության վերլուծության նկատմամբ մարքս-լենինյան մոտեցումը ենթադրում է մտքի համառ, լարված և քննախույզ աշխատանք: Դա պահանջում է ժամանակ, տաղանդ և պատասխանատվություն: Կարելի է հասկանալ հասարակայնության անհամբերությունը, մեր անցյալի փակ էջերին ավելի շուտ նայելու ցանկությունը: Եվ այնուհանդերձ, դա չի կարող լինել հապճեպ ելույթների, գնահատումների որևէ շտապողականության արդարացում, որը կարող է հանգեցնել միայն տեղի ունեցած պրոցեսների ամբողջ բարդությունը չարտացոլող մակերեսային հետևությունների: Անթույլատրելի է, որ իրոք գիտական հետազոտությունների փոխարեն լայն հասարակայնությանը մատուցվեն կոնյունկտուրային նորոգումներ, որոնք ավելի շուտ մթագնում, քան լուսաբանում են ճշմարտությունը: Մենք պետք է ազատվենք դրանից:

Կենտրոնական կոմիտեում, մասսայական ինֆորմացիայի միջոցների խմբագրություններում բազմաթիվ նամակներ են ստացվում այն մարդկանցից, որոնք մտահոգված են մեր պատմության վերջին ժամանակներս երևան եկած միակողմանի, սուբյեկտիվիստական գնահատումներից: Կեսդարյա վաղեմության իրադարձությունների մասին մարդիկ գրում են ոգևորված և սրտացավությամբ, ինչպես այսօրվա պրոբլեմների մասին: Եվ դրանում զարմանալի ոչինչ չկա: Խոսքը մեզ համար ամենագլխավորի մասին է՝ սոցիալիզմի նկատմամբ վերաբերմունքի մասին, սոցիալիզմի ըմբռնման մասին, այն մասին, թե ինչպես կարող էր պատահել, որ ժողովրդի հերոսական մեծագործությունների հետ մեկտեղ հնարավոր դառնային նրա դեմ կատարված հանցագործությունները:

Ի՞նչ կարելի է ասել ամենքիս համար դժվարին այդ հարցի առթիվ: Հարկավոր է սոցիալիզմի էական դրսևորումները տարբերել նրա ձևախախտումներից, այն, ինչ պայմանավորված է օբյեկտիվ պատճառներով, տարբերել նրանից, ինչ առաջացրել է սուբյեկտիվ գործոնը: Դժբախտաբար մեր պատմության փաստարկված հետազոտությունը այդ դիրքերից մինչև վերջ չկատարվեց ՍՄԿԿ XX համագումարից անմիջապես հետո:

Հետագայում այդ դժվարին հարցերը առհասարակ ջանում էին շրջանցել: Բայց գաղափարական կյանքում դատարկություն չի լինում: Այն լցվում էր կամ պարզունակ առասպելներով, կամ էլ ընդհանրապես խորթ գաղափարախոսությամբ: Այսօր գլխավորն է պայմաններ ստեղծել հանգիստ, անաչառ աշխատանքի համար, ապա-



հովել այդ աշխատանքի հրապարակայնությունը, որը մնացած ամեն ինչից բացի նպաստում է մեր պատմության հարցերի քննարկմանը հենց ժողովրդի ակտիվ մասնակցությանը, հետևաբար նաև նրա դաստիարակությանը, նրա մեջ պատմական ճիշտ գիտակցության ձևավորմանը:

Ընկերնե՛ր, ուզում եմ մեկ անգամ ևս ընդգծել, որ մեր պատմությանն անդրադառնալը թելադրված է ոչ միայն սոսկ անցյալի նկատմամբ եղած հետաքրքրությամբ: Դա մեզ կենսականորեն հարկավոր է այսօրվա աշխատանքի համար, վերակառուցման խնդիրների լուծման համար: Մենք հռչակել ենք «ավելի շատ սոցիալիզմ» լոզունգը և պետք է պարզենք, թե այսօր որ արժեքներն ու սկզբունքները պետք է համարել իրոք սոցիալիստական:

Սոցիալիզմը հասել է նորացման պատմական նոր բնագծերի: Հետևաբար, նորացվում է ամեն ինչ: Թե՛ պրակտիկան և թե տեսությունը: Վերակառուցումը միաժամանակ թե՛ մեր ամբողջ նախորդ սոցիալ-տնտեսական ու հոգևոր զարգացման արդյունքն է և թե «բացասման բացասման» յուրօրինակ փուլը, երբ մենք ազատվում ենք այն ամենից, ինչը վերածվել է արգելակի:

Վերակառուցումը, եթե վերցնենք դրա հոգևոր չափումները, բոլորի աչքին սոցիալիստական արժեքների վիթխարի նշանակությունը լրիվ կերպով վերականգնելու վճռական փորձերից մեկն է, արժեքներ, որոնցից գլխավորը կողմնորոշումն է դեպի աշխատավոր մարդը: Հարկավոր է սոցիալիզմի արժեքներից և իդեալներից հանել բյուրոկրատիզմի ժանգը, մաքրել ամենայն անմարդկայինից, ինչով փորձում էին դրանք նենգափոխել, ազատել մարդու լավագույն, ստեղծարար ուժերը, ապահովել անհատի հոգևոր ծաղկումը:

Վերակառուցումը հասարակությանն առաջարկում է գաղափարներ, որոնք կարող են մարդկանց իրականում միավորել, համախմբել ոչ թե նրանց համահարթման միջոցով, ինչպես շքերթի համար, այլ մարդկային հնարավորությունների, ձգտումների, շահերի, ընդունակությունների բազմազանության հիման վրա: Վերակառուցումը նախատեսված է յուրաքանչյուր մարդու գիտելիքների, մտքի և փորձի համար, մարդկային լավագույն հատկանիշների համար: Այն առավելագույն հնարավորություններ է ստեղծում մարդկանց դաստիարակելու կյանքով, հասարակական վերափոխումներին մասնակցելու անձնական փորձով: Եվ ոչ միայն ստեղծում է: Նա պահանջում է, որ այդ հնարավորություններն օգտագործվեն ռեալ կերպով, գործնականում: Դա փաստորեն վերակառուցման էությունն է:

Ինչպե՞ս են հիմա գործերը նրա գլխավոր ուղղությունում: Մարդիկ սովորում են գործնական էկոնոմիկա, սովորում են դեմոկրատիա, հրապարակայնություն: Սովորում են ոչ թե պասիվորեն, այլ ռեալ կերպով մասնակցելով տնտեսավարման նոր մեթոդների յուրացմանը: Կուսակցական ժողովներում, մասսայական ինֆորմացիայի միջոցներում դիսկուսիաների և կարծիքների բախման միջոցով, սեփական պրակտիկայով մարդիկ ըմբռնում են, թե ինչ է վերակառուցումը: Հենց իրենցից ինչ գործողություններ է պահանջում այն կոնկրետ պայմաններում, որոնցում նրանք ապրում և աշխատում են:

Ինքը կյանքը մարդուն մշտապես կանգնեցնում է ընտրության առաջ: Ի՞նչ ձևեր ընտրել բրիգադի, արտադրամասի, ձեռնարկության ամբողջ կոլեկտիվի աշխատանքը կազմակերպելիս: Ի՞նչպես վարձատրել աշխատանքը, ու՞մ ընտրել ղեկավար, ու՞մ և ի՞նչ վստահել: Ինչպե՞ս կառուցել հարաբերությունները համասեռ ձեռնարկությունների հետ: Ինչպե՞ս վերաբերվել հասարակական կյանքի, գրականության և արվեստի նոր երևույթներին: Կամ էլ հին երևույթներին, որոնք, սակայն, այսօր ի հայտ են եկել անսովոր կողմերով: Այդպիսի հարցերը քիչ չեն և դրանք մարդու առջև ծառանում են ամեն օր: Այսօր ընտրելու անհրաժեշտությունը արթնացնում է մարդու, նրա դատողությունների և արարքների ակտիվությունը, ինքնուրույնությունը: Թեկուզև այստեղ վիճելի, պատահական բաներ դեռ շատ կան, սակայն առողջ հիմքը, ցավոտ հարցի արդարացի լուծումը, նորմալ, սոցիալիզմի սկզբունքներին համապատասխանող ամենօրյա կյանքը իրենց գործը կանեն:

Գլխավորը, ընկերնե՛ր, դեմոկրատացումն է: Դա վերակառուցման նպատակներին հասնելու վճռական միջոցն է: Դեմոկրատացումը համապատասխանում է սոցիալիզմի լենինյան կոնցեպցիայի բուն էությանը: Դա մեր հասարակությանը թույլ է տալիս հասնել այն իդեալներին, հանուն որոնց կատարվեց Հոկտեմբերյան հեղափոխությունը: Անհրաժեշտ է ամբողջ կուսակցության մեջ այն բանի հստակ ըմբռնում, որ միայն դեմոկրատացման միջոցով կարելի է մարդկային գործոնը լրիվ չափով ներ-

գրավել հասարակության կյանքի բոլոր կողմերի խոր վերափոխումների մեջ, կառավարման և ինքնակառավարման ռեալ պրոցեսների մեջ: Միայն դեմոկրատացման և հրապարակայնության միջոցով կարելի է վերջ դնել խորապես արմատացած անտարբերությանը և հուժկու ազդակ հաղորդել աշխատավորների սոցիալ-քաղաքական ակտիվությանը: Միայն հասարակության բոլոր գործերին հենց նրանց շահագրգիռ և գիտակցական մասնակցության միջոցով է հնարավոր սոցիալիզմի հումանիստական նպատակների իրականացումը:

Մենք այժմ խորապես գիտակցում ենք, թե որքան շատ ենք կորցրել անցյալում, ոչ տեսության մեջ, ոչ էլ մանավանդ պրակտիկայում մինչև վերջ չյուրացնելով լենինյան այն գաղափարների, մտահղացումների և գործնական հանձնարարականների ամբողջ արգասավորությունը, որոնք վերաբերում են սովետական սոցիալիստական դեմոկրատիային: Դա, ընկերներ, պետք է ընդգծել, քանի որ մինչև օրս էլ վիճակվում է հանդիպել այնպիսի մարդկանց, ովքեր կծկվում են, նկատելով դեմոկրատացման պրոցեսների թափը: Ոմանք նյարդայնացել են, մեզ նախազգուշացնում են. հանկարծ դեմոկրատիան քաոսի չվերածվի: Բայց տեսեք, թե ինչի՞ համար են հուզվում այդ մարդիկ: Բնավ էլ ոչ այն պրոբլեմների համար, որոնք կենսականորեն կարևոր են հասարակության համար: Ավելի շուտ նրանք մտահոգված են իրենց շահադիտական պահանջներով: Ում-ում, իսկ կուսակցականների, հատկապես ղեկավար կազմում գտնվող կուսակցականների համար դա միանգամայն անընդունելի դիրքորոշում է:

Կուսակցությունը, ինչպես և մյուս գործերում, պետք է դեմոկրատիզմի օրինակ ծառայի: Այդ մասին խոսում եմ ոչ պատահաբար: Մենք տեսնում ենք, թե ինչպիսի դժվարությամբ է հաղթահարվում հնացած, խորապես արմատացած արատներից մեկը՝ բազմաթիվ կուսակցական կոմիտեների, նրանց ապարատի հակվածությունը հրահանգման մեթոդներին, բոլորին թելադրելու, բոլորի փոխարեն վճռելու ձգտումը: Այստեղ ինչ ասես գործի չեն դնում: Տեղ-տեղ կուսակցական մարմիններում այնքան են հավանել, օրինակ, սելեկտորային խորհրդակցությունները, որ ամիս է լինում անցկացնում են մինչև 40 այդպիսի խորհրդակցություն. երեկոյան 11-ին վերջացնում են մեկը, իսկ արդեն առավոտյան ժամը 8-ին սկսում են նորը: Եվ այսպես ամեն օր: Ինչի՞ է դա նման: Շրջանների աշխատողները դառը հեգնանքով ասում են, որ միայն «մարզկոմ-շրջկոմ» հեռուստակամուրջն է պակասում տեսնելու, թե ինչպես է շրջկոմի առաջին քարտուղարը կանգնած և արդյոք ձեռքը տարե՞լ է հովհարին՝ պատիվ առնելու համար:

Տակավին բազմաթիվ են հրապարակայնությունը, դեմոկրատիան հարմար շրջանակների մեջ դնելու, մամուլը զսպելու, հասարակայնության կարծիքը հաշվի չառնելով գործելու փորձերը: Մի տեղ ճնշում են «հանգստության խռովիչին», որը համարձակվել է ըմբոստանալ լճացածության, անտնտեսվարության, չարաշահումների դեմ: Մեկ այլ տեղ ոտնահարում են կոլտնտեսականների իրավունքները: Երրորդում խեղկատակության են վերածում ղեկավարի ընտրությունները: Չորրորդում, անտեսելով մարդկանց կարծիքը, ընդունում են նրանց կենսական շահերին և իրավունքներին ներհակ որոշումներ: Անկասկած այստեղ զգացվում է տարիներ շարունակ մեր կադրերի զգալի մասի մեջ ստեղծված սովորությունը: Ամեն ինչ «պահել բռունցքի մեջ», բոլոր գործերում լինել բարձրագույն ատյան, գործել ուժային ճնշման մեթոդներով: Ըստ էության նրանք ուրիշ մեթոդներ չեն էլ ընդունում: Նրանց պարզապես վախեցնում է մարդկանց հարաճուն ակտիվությունը:

Բայց պետք է հաստատակամորեն յուրացնել. վերակառուցման նոր փուլում կուսակցությունը կարող է իր ղեկավար, ավանգարդային դերն ապահովել, մասսաներին խոր վերափոխումների մեջ ներգրավել միայն աշխատանքի դեմոկրատական մեթոդներ կիրառելով: Մենք շատ բան ենք կորցրել և շարունակում ենք կորցնել այն պատճառով, որ չկարողացանք լրիվ չափով կապանքներից ազատել մարդկանց նախաձեռնությունը, ստեղծագործությունը, ինքնուրույնությունը: Հենց դա է վերակառուցման ամենամեծ, ամենադժվար, բայց նաև ամենակարևոր խնդիրը: Այսօր առանց չափազանցության դրա լուծման վրա է հենվում ամեն ինչ:

Առանց նախաձեռնության, առանց ստեղծագործող մարդկանց անհնար է որևէ առաջընթաց շարժում: Առավել ևս հեղափոխական փոփոխություններ: Սա ասում եմ, որովհետև պրակտիկայում հաճախ առիթ է լինում բախվել նախաձեռնության բացասական արձագանքի, այն չընդունելու հետ: Ընդ որում շատ դեպքերում նույնիսկ չեն փորձում խորամուխ լինել գործի էությանը, այլ դիտավորյալ պատրվակներ են



փնտրում նախաձեռնողին սանձելու համար: Դա առայժմ շատ տարածված երևույթ է: Այսպիսի իրավիճակի հետ մենք չենք կարող համակերպվել: Հակառակ դեպքում վերակառուցումը առաջ չի ընթանա: Մենք պետք է այդ ամենը գիտակցենք և ամեն կերպ նպաստենք հասարակության մեջ նախաձեռնության զարգացմանը: Այսօր մենք ունենք տասնյակ հազարավոր նորարարներ, համարձակ, որոնող, նախաձեռնող, նորամուծությունից չվախեցող մարդիկ: Հարկավոր է, որ արդեն վաղը նրանք լինեն հարյուր հազարավորներ, իսկ մյուս օրը՝ միլիոնավորներ:

Սոցիալիզմը նախաձեռնող մարդկանց հասարակություն է: Հենց ինքը սոցիալիզմն էլ մեծագույն նախաձեռնությունն է պատմության մեջ: Մի խոսքով, նախաձեռնությունը ոչ թե խոչընդոտ է, կյանքի անհարմարություն, կամպանիա, այլ առաջադիմության պարտադիր, կարևորագույն պայմանը:

Դեմոկրատացման և հրապարակայնության պրոցեսների ծավալման գործում հսկայական դեր ունեն կուսակցական պրոպագանդան և ագիտացիան, մասսայական ինֆորմացիայի միջոցները: Անկեղծորեն ասած, ընկերներ, մենք դեռևս մի տեսակ ժլատորեն, երբեմն ավելի քան համեստորեն ենք գնահատում այն մեծ գործունեության արդյունքները, որ կատարում է մեր պրոպագանդիստների, դասախոսների, գաղափարախոսական աշխատողների բազմամարդ բանակը: Չէ որ նրանց խոսքով են կուսակցության գաղափարները, հասարակության նորացման գաղափարները նվաճում մարդկանց մտքերն ու հոգիները:

Պետք է ասեմ, որ մեր թերթերը, հասարակական-քաղաքական և գեղարվեստական հանդեսները, հեռուստատեսությունը, ռադիոն, դասախոսական պրոպագանդան, առաջավորների հետ, վերակառուցման «աշխղեկների» հետ անցկացվող անմիջական հանդիպումները զգալի գործ են արել և անում են նոր մթնոլորտի ստեղծման համար, մտքերի ազատագրման համար, վերակառուցման բոլոր կողմերի նկատմամբ հետաքրքրություն հարուցելու և բազմապիսի կարծիքներ հավաքելու համար:

Մամուլը և հեռուստատեսությունը հրապարակայնության լուսարձակն ուղղում են նրանց վրա, ովքեր գիտակցաբար կամ անհասկացողության և անկարողության պատճառով հակառակվում և խանգարում են վերակառուցմանը: Պաշտպանում են խանդավառ մարդկանց, տարածում նրանց փորձը, անարդարությունից պաշտպանում նրանց, ովքեր ամբողջ հոգով նվիրվել են նոր ձևով աշխատելուն, ովքեր չեն վախենում սխալվել իսկական գործում, դիմում են ռիսկի, ովքեր անձամբ իրենց պատասխանատու են զգացել այն բանի համար, որպեսզի վերակառուցումը նոր թափ առնի:

Ինձ արդեն առիթ է եղել ՍՄԿԿ Կենտկոմում կայացած հանդիպումների ժամանակ խոսել մասսայական ինֆորմացիայի միջոցների այդ աշխատանքի նկատմամբ մեր դրական վերաբերմունքի մասին: Դա, իհարկե, չի նշանակում, թե այստեղ ամեն ինչ բարվոք վիճակում է: Մասսայական ինֆորմացիայի միջոցներին երբեմն չի բավականացնում կուսակցության և ժողովրդի կողմից լուծվող խնդիրների ամբողջ բարդությունը, նորությունը ցույց տալու հմտությունը:

Հանդեսներում, թերթերում մեկ էլ տեսար երևան են գալիս խափանումներ. չեն կարողանում դիմանալ սենսացիայի գայթակղությանը, տրվում են ներկայի և անցյալի իրադարձությունների մակերեսային գնահատականներ, դրսևորվում են խմբակայնության տարրեր: Թեև շատացել են, բայց այնուամենայնիվ առայժմ ակնհայտորեն անբավարար են աշխատավորական կոլեկտիվներում, քաղաքներում և շրջաններում, մարզերում և հանրապետություններում, կենտրոնում վերակառուցման փորձին վերաբերող նյութերը: Իհարկե, պրոցեսը բարդ է, այն ընթանում է դժվարությամբ, որոնումներով: Բայց մենք վճռականորեն և հաստատակամորեն առաջ կմղենք վերակառուցման գործը, վերլուծելով դրա պրոբլեմները և դրական արդյունքները: Հենց դրան էլ պետք է բևեռված լինի մասսայական ինֆորմացիայի միջոցների ուշադրությունը:

Ընկերնե՛ր, դեմոկրատացման պրոցեսը սրությամբ դնում է մեր հասարակության մեջ օրենքները կիրառելու հարցը: Իրավական նիհիլիզմը, որի դեմ այդքան անխնա պայքարում էր Վ. Ի. Լենինը, շատ տարածվեց հրահանգման մեթոդների կիրառության պայմաններում: Չէ որ մի կողմից չափից ավելի ցենտրալիզմն ու վարչարարությունը, իսկ մյուս կողմից տեղայնությունը առհասարակ վատ են հարմարվում օրինականությանը: Դրանց ավելի հարմար է Շչեդրինի քաղաքապետի

ման, սովետական մարդկանց մտադրությունների, զգացմունքների, ձգտումների ու խոհերի ամբողջ հարստության գեղարվեստական արտացոլման մեջ: Վստահ եմ՝ մենք բոլորս կկարդանք, կտեսնենք և կլսենք մեր փոթորկալի ժամանակներին արժանի ստեղծագործություններ:

Մեր մշակույթի եզակի գիծը նրա բազմազգ բնույթն է: Այդ մասին մենք ասում ենք հաճախ ու սովորական ձևով, բայց, թվում է, դեռևս լիովին չենք սովորել գնահատել այն: ՍՍՀՄ ժողովուրդները շաղկապված են պատմական ճակատագրի ընդհանրությամբ: Այն մեր եղբայրության ու հարազատության հիմքն է, որն անցել է ամենածանր փորձությունների միջով: Մեր ուժի աղբյուրը եղբայրական ժողովուրդների և բովանդակ մարդկության հոգևոր փորձով հարստացած ազգային մշակույթների ազատ զարգացումն է:

Իսկական ինտերնացիոնալիզմը, ժողովուրդների իսկական բարեկամությունը հնարավոր են միայն յուրաքանչյուր ժողովրդի արժանապատվության, պատվի, մշակույթի, լեզվի ու պատմության հանդեպ խոր հարգանքի, նրանց լայն շփման դեպքում: Մենք պետք է ըստ ամենայնի նպաստենք ազգային մշակույթների շփումների հետագա ընդլայնմանը, դրանց փոխադարձ հարստացմանը, դրանց վերելքին ու ծաղկմանը:

Սովետական հայրենասիրությունը մեր մեծագույն արժեքն է: Նրա հետ անհամատեղելի են նացիոնալիզմի և շովինիզմի ամեն մի դրսևորում: Նացիոնալիզմը, ինչ ձևով էլ որ դրսևորվի, կույր է: Ինքնամեկուսացման փորձերը հանգեցնում են սոսկ հոգևոր փակուղու: Սովետական հայրենասիրության արմատային համակարգը սնում են սոցիալիստական հեղափոխության մասշտաբների, վեհության և մարդ-անհատի գործունեության, սոցիալիզմի համար կուսակցության ու ժողովրդի մղած պայքարի, սոցիալիստական հայրենիքի պաշտպանության լիակատար ճշմարտության և հերոսականության իմացությունն ու ըմբռնումը: Եվ այստեղ մենք մոտենում ենք մի շատ կարևոր հարցի՝ հեղափոխության և սովետական իշխանության միջոցով յուրաքանչյուր ժողովրդի ազգային հպարտության և ազգային հարստության միահյուսմանը սոցիալիստական հասարակության ինտերնացիոնալիզմի հետ:

Մի խոսքով, արդի փուլում մենք պետք է շատ հիմնավոր կերպով զբաղվենք ազգային քաղաքականությամբ: Բոլոր ուղղություններում՝ թե՛ տեսության մեջ, թե՛ պրակտիկայում: Դա մեր հասարակության ամենասկզբունքային, կենսական հարցն է: Կարծում եմ, որ մենք պետք է Կենտրոնական կոմիտեի պլենումներից մեկը նվիրենք ազգային քաղաքականության պրոբլեմներին:

Ուզում եմ միանալ այն ընկերներին, որոնք ելույթ ունենալով պլենումում, խոսեցին նաև մշակույթի, գաղափարախոսության հարցերում կոկետության անթույլատրելիության մասին: Մենք պետք է հոգևոր ոլորտում նույնպես, իսկ միգուցե նախ և առաջ հենց այստեղ գործենք՝ առաջնորդվելով մեր, մարքս-լենինյան սկզբունքներով: Ընկերներ, մենք ոչ մի պատրվակով չպետք է ընկրկենք սկզբունքներից: Ըստ Լենինի, ամենաճիշտ քաղաքականությունը սկզբունքայինն է:

Ընկերնե՛ր: Ուսումնասիրման և լուծման կարոտ բազմաթիվ նոր, այդ թվում գաղափարախոսական պրոբլեմներ է մեր առջև դրել արմատական տնտեսական ռեֆորմը: Այսօր մենք կարող ենք ասել, որ այն դուրս է գալիս լայն ասպարեզ, ընդգրկում ժողովրդական տնտեսության փաստորեն բոլոր ոլորտները: Սկսվել է պլանավորման, ինքնաֆինանսավորման, ինքնակառավարման, աշխատանքի վարձատրության նոր մեթոդների զանգվածային յուրացումը: Վերակառուցվում են կառավարման կազմակերպական կառուցվածքները: Էկոնոմիկայի իրավիճակի նորությունը նաև այն է, որ տարբեր բնագավառներում թափ են առնում կոոպերացիան, անհատական աշխատանքային գործունեությունը: Ըստ էության, նոր հիմքի վրա է ծավալվում սոցիալիստական էկոնոմիկայի կոոպերատիվ հատվածի ձևավորումը:

Այդ ամենը էական փոփոխություններ է մտցնում թե կառավարման ու տնտեսավարման սկզբունքների և թե տնտեսական հարաբերությունների ամբողջ համակարգի կազմակերպման մեջ: Այժմ արդեն չի կարելի ապավինել պետության, այսպես ասած, բարեգործությանը: Պետք է հույսը դնել նախ և առաջ սեփական ուժերի վրա, էլ ավելի արդյունավետ տնտեսական լուծումներ որոնելու, գիտատեխնիկական առաջընթացի նվաճումները լայնորեն ներդնելու վրա, կադրերի բարձր որակավորման ու ձեռնհասության, աշխատավորների նախաձեռնության վրա: Մենք, ընկերնե՛ր, ականատես ենք այն բանին, թե ինչպես է փոխվում մարդկանց վերաբերմունքը գործի նկատմամբ: Նրանք ավելի ու ավելի պարզորոշ են գիտակցում աշխատան-



քային և նյութական ռեսուրսների գինը, հասկանում, որ առանց դրանց խնայողական, արդյունավետ օգտագործման հնարավոր չէ հասնել վերջնական բարձր արդյունքների: Մարդիկ սկսում են հասկանալ, որ այսօր հին մոտեցումներով, իրենց պարտականությունների կատարման նկատմամբ նախկին վերաբերմունքով հնարավոր չէ լուծել նոր խնդիրները:

Իհարկե, մենք դեռ նոր ենք ձեռնամուխ լինում տնտհաշվարկին: Նրա համակարգը կատարելագործվելու է: Առաջիկայում անցում է կատարվելու արտադրության միջոցների մեծածախ առևտրին, զարգացվելու են անմիջական կապերը, կոոպերացումը, գնագոյացման ռեֆորմ է անցկացվելու: Այդ ամենը մենք պետք է անենք, յուրացնենք և ամրապնդենք: Բայց տնտհաշվարկի ներդրումը անգամ նրա ներկայիս տեսքով արդեն հարուցել է և հարուցում է մի շարք պրոբլեմներ, դեմ է առնում խոչընդոտների, երևան հանում դեռևս մինչև վերջ չհաղթահարված արգելակման մեխանիզմի զանազան կողմեր:

Թվում է, որ մենք պարզել ենք ռեֆորմի հիմնական հարցերը, մշակել, համաժողովրդականորեն քննարկել և ընդունել ենք պետական ձեռնարկության մասին օրենքը: Այժմ պետք է գործենք՝ թույլ չտալով նվազագույն իսկ նահանջ նրանում գրանցվածից: Բայց կյանքում դեռևս բախվում ենք այն բանին, որ և՛ կենտրոնում, և՛ տեղերում հաճախ վարվում են հին ձևով, փորձում ժողովրդական տնտեսությունը քաշ տալ հին մեթոդներով:

Կենտրոնում դեռևս պինդ կառչում են համախառն ցուցանիշներից, վարչարարություն է դրսևորվում պետական պատվերների միջոցով, փորձեր են արվում տնտեսավարման տնտեսագիտական մեթոդները վերածելու հրամայողականության քողարկված ձևերի: Կան փաստեր, երբ առաջադրանքներ են տրվում ի խախտումն պետական ձեռնարկության մասին օրենքի, հաշվի չնստելով աշխատավորական կոլեկտիվների կարծիքի հետ, առանց պատշաճ շաղկապման ռեսուրսային բազայի և արտադրական կարողությունների հետ:

Ձեռնարկությունների մակարդակով դրսևորվեց տնտհաշվարկի պայմաններում գործելու շատերի անպատրաստությունը, առայժմ թույլ են օգտագործվում մեծ հնարավորությունները և լայն իրավունքները, տնտեսական շատ կադրեր սպասողական դիրք են բռնում, հույս դնում ինչ-որ բաների վրա, դանդաղ են ընդգրկվում տնտեսավարման նոր մեթոդները յուրացնելու աշխատանքում: Հնին կապվածությունը այնքան ուժեղ է, որ նույնիսկ այն դեպքում, երբ՝ հնարավորություն կա մեծ եկամուտ ստանալու՝ ավելացնելով պահանջարկ վայելող, հարկավոր արտադրանքի թողարկումը, չեն դիմում դրան, հանգիստ կյանքը գերադասելով նյութական ավելի մեծ առատությունից: Հավանաբար, դա բացատրվում է նրանով, որ մի շարք դեպքերում տնտեսագիտական նորմատիվների հետ կապված ամեն ինչ չէ, որ բարեհաջող է: Բայց, այդուհանդերձ, գլխավորը ստեղծված հոգեբանությունն է, ինքնաապահովագրումը, իսկ երբեմն էլ անձեռնհասությունը:

Իհարկե, ընկերնե՛ր, այս բոլոր երևույթները ինչ-որ կերպ կարելի է հասկանալ: Չէ որ ձեռնարկությունները տնտհաշվարկի փոխադրելու իրական պրոցեսը դեռ նոր է սկսվել: Դա հասկանալ կարելի է, բայց, ըստ երևույթին, հարկավոր է ժամանակին էլ նախազգուշացնել, որ եթե մենք չհաղթահարենք նմանօրինակ տրամադրությունները, կտրուկ չփոխենք վերաբերմունքը տնտեսավարման նոր մեթոդների նկատմամբ, ապա գործն էլ չի ընթանա այնպես, ինչպես հարկն է:

Քիչ խնդիրներ չի հարուցել նաև կոոպերատիվ շարժման, անհատական աշխատանքային գործունեության, կապալի կոլեկտիվ, ընտանեկան և մյուս ձևերի զարգացումը: Քանի որ այդ մեծ գործում դեռևս ամեն ինչ չէ, որ հարթ է ընթանում, դեռևս կան նաև չարաշահումներ, մերթ այստեղ, մերթ այնտեղ արծարծվում են տնտեսավարման այդ ձևերի կիրառման օրինաչափության հարցերը: Կան սոցիալ-տնտեսական այդ կարևոր պրոցեսը արհեստականորեն ձգձգելու փաստեր:

Այստեղ ի՞նչ պետք է ասել: Մեզ հարկավոր է հանգիստ ու գործարար կերպով փորձ կուտակել, հատելով շահարկիչ նկրտումները, գործելով նախ և առաջ տնտեսագիտական, հարկային մեթոդներով, վերջապես հրապարակայնությամբ: Այստեղ սկզբունքը մեկն է՝ սոցիալիստական. կոոպերատիվ և անձնական եկամուտները պետք է լինեն վաստակած, որոշվեն, ինչպես որ ամենուրեք, աշխատանքի քանակով ու որակով:

Լուրջ փոփոխություններ են տեղի ունենում նաև կառավարման կազմակերպման կառուցվածքների կատարելագործման ասպարեզում: Դրանք լիովին հասունացել



2. «Լենինյան ուղիով», № 3

են, անհրաժեշտ են, քանի որ նպատակամղված են տնտեսության ղեկավարման, վարչարարական-հրամայական մեթոդների ժառանգության հաղթահարմանը: Բայց այդտեղ էլ հին մոտեցումները առանց մարտի տեղի չեն տալիս թե՛ մարզային, թե՛ հանրապետական, թե՛ միութենական մակարդակներով:

Այդ ամենը, ընկերներ, դժվարին իրադրություն է ստեղծում, բորբոքում կրքերը, կարծիքների պայքարը և, ուղղակի ասենք, որոշ լարվածություն ստեղծում թե՛ արտադրական գործերում, թե՛ գաղափարախոսական ոլորտում: Ոմանք լիովին ընդունում են տեղի ունեցող փոփոխությունները և վստահորեն առաջ ընթանում տնտեսավարման նոր մեթոդների, մարդկանց նախաձեռնության, նրանց ձեռներեցության վրա հենվելու ուղիով, իրենց ստեղծագործական ավանդն են ներդնում ռեֆորմի մեջ: Ուրիշները կարծես թե չեն ուզում մի կողմ կանգնել ընդհանուր շարժումից, բայց բանը հանգեցնում են, ինչպես ավելի մեղմ ասեմ, նմանակման, սահմանափակվում կիսատ-պռատ միջոցներով, ինչը ոչ մի դեպքում չի կարող արդարացվել: Եվ, անշուշտ, պետք է հաշվի առնել, որ կան մարդիկ, որոնք ըստ էության դեմ են ռեֆորմին, սաբոտաժի են ենթարկում տնտեսավարման տնտեսագիտական մեթոդների ներդրումը, փորձում ամեն կերպ վարկաբեկել դրանք, ընդսմին քողարկվելով օբյեկտիվ պատճառների, իսկ երբեմն էլ աշխատավորների կարծիքի վկայակոչումներով:

Ի՞նչ կարելի է ասել այդ կապակցությամբ: Արմատական տնտեսական ռեֆորմի կենսագործումը մենք առաջադրել ենք որպես քաղաքական խոշորագույն խնդիր: Նրա հաջողությամբ է պայմանավորված երկրի վերելքը դեպի սոցիալ-տնտեսական առաջընթացի գագաթներ: Այստեղ պարզապես չի կարելի նահանջ թույլ տալ: Եվ իսկապես էլ նահանջի տեղ չկա: Այստեղ բոլորը պետք է գործեն եռանդագին ու նպատակասլաց: Չի կարելի թույլ տալ, որ մենք լռվենք-մնանք կես ճանապարհին կամ ինչ-որ տեղ նրա սկզբին: Պետք է առաջ ընթանալ: Ելնելով դրանից, պետք է գնահատել նաև բոլոր գերատեսչությունների, կուսակցական, սովետական, տնտեսական կադրերի դիրքորոշումները և, եթե ուզում եք, աշխատավորական կոլեկտիվների դիրքորոշումները:

Ուզում եմ այս հարցն ավելի լայնորեն դնել: Չէ որ տնտեսական ռեֆորմը սոցիալիզմի՝ որպես հասարակական սիստեմի, վերափոխման, նորացման անկապտելի կողմն է, նրան էլ ավելի արդիական և դինամիկ ձևեր հաղորդողը: Այն պետք է անհրաժեշտ նախադրյալներ և հզոր խթաններ ստեղծի գիտատեխնիկական առաջընթացի համար, պլանային տնտեսավարման հնարավորությունները մարդկանց անձնական շահերի, նախաձեռնության, ձեռներեցության հետ միավորելու համար, այնպիսի ձևեր հաղորդի հանրային սեփականությանը, տնտեսավարման ու կառավարման մեթոդներին, որոնց դեպքում մարդն իրոք իրեն զգա արտադրության իսկական տերը:

Գիտական վերլուծությունը, ասենք գործնական փորձը ևս մեզ հանգեցրին այն հաստատ համոզմունքին, որ այդ բոլոր խնդիրներն իրենց օրգանական փոխկապակցվածությամբ և միասնությամբ հանդերձ կարելի է հաջողությամբ լուծել ձեռնարկությունները տնտհաշվարկի, ինքնածախսածածկման, ինքնաֆինանսավորման և ինքնակառավարման սկզբունքների փոխադրելու միջոցով: Դա հասարակության, կոլեկտիվի և անհատի շահերը ներդաշնակորեն միահյուսելու ուղին է, որով երաշխավորվում է հանրային պահանջմունքների բավարարումը և միևնույն ժամանակ ապահովվում հենց իրենց աշխատավորների շահագրգռվածությունը արտադրության վերջնական արդյունքներով:

Դա հավասարարությունը, խնամառությունը արմատախիլ անելու ուղին է, որոնցից մենք այնքան շատ վնաս ենք կրել: Դա սոցիալական պրոբլեմների շուտափույթ լուծման ուղին է, որը դարձյալ ուղղակի շոշափում է առանձին մարդու և ամբողջ կոլեկտիվների շահերը, նպաստում է կարգապահության ամրապնդմանը և արդյունավետության բարձրացմանը: Դա իրական տնտեսական հիմք է դեմոկրատիայի խորացման, կառավարմանը աշխատողների մասնակցության համար, տնտեսական պրոցեսից և նրա արդյունքներից մարդկանց խորթացածությունը հաղթահարելու համար:

Տնտեսական ռեֆորմի լայն ծավալման փուլում է՛լ ավելի է սրվել սոցիալական արդարության հարցը: Թվում էր, թե այդ պրոբլեմը բավականաչափ պարզված է. պետք է հետևողականորեն ընթանալ սոցիալիզմի գլխավոր սկզբունքը՝ «Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի», խստիվ կիրառելու ուղիով: Այդ ամենն այդպես է: Բայց պրակտիկայում, այո՛, ինչ մեղքներս



թաքցնենք, նաև մեր պատկերացումներում, մենք բնավ չենք ազատվել հավասարարական հոգեբանությունից:

Հազիվ թե որևէ մեկի համար գաղտնիք լինի, որ շատերն այսօր էլ են աշխատավարձ ստանում միայն աշխատանքի դուրս գալու համար և պաշտոնն զբաղեցնում՝ առանց հաշվի առնելու իրական աշխատանքային ներդրումը: Եվ ամենից զարմանալին այն է, որ դա քչերին է անհանգստացնում: Բայց ահա հենց որ մարդիկ տնտհաշվարկային կոլեկտիվներում աշխատավարձի ավելացման են հասնում աշխատանքի վերջնական արդյունքների աճի հաշվին, անմիջապես բողոքներ են հայտնվում, նյարդային ձայներ են լսվում՝ իբր, չափազանց շատ են ստանում: Բայց սոցիալիզմի օրոք հարցը կարելի է դնել միայն այսպես. ոչ թե «շատ է» կամ «քիչ», այլ «վաստակված է», թե «չի վաստակված»: Այլ բան է, որ աշխատանքի քանակի և որակի գնահատականը պետք է հենվի գիտականորեն հիմնավորված, գործնականորեն ստուգված չափանիշների վրա:

Ընդհանուր առմամբ, ընկերներ, մենք պետք է հիմնավորապես զբաղվենք հավասարարական մոտեցումներն արմատախիլ անելու խնդրով: Դա սոցիալ-տնտեսական ու գաղափարախոսական կարևորագույն պրոբլեմն է: Իր էությամբ համահավասարեցումը քայքայիչ ներգործություն է ունենում ոչ միայն տնտեսության, այլև բարոյականության վրա, մարդկանց ամբողջ մտածելակերպի և գործելակերպի վրա: Այն գցում է բարեխիղճ և ստեղծագործական աշխատանքի վարկը, թուլացնում կարգապահությունը, մարում է որակավորման բարձրացման հանդեպ շահագրգռվածությունը, հարված հասցնում մրցունակությանը, մրցակցությանը աշխատանքում: Մենք պետք է ուղղակի ասենք, որ համահավասարեցումը արտացոլումն է մանրբուրժուական հայացքների, որոնք ոչ մի ընդհանուր բան չունեն մարքսիզմ-լենինիզմի, գիտական սոցիալիզմի հետ: Եվ մենք առաջ չենք շարժվի, չենք կատարի վերակառուցման խնդիրները, եթե դեն չնետենք հավասարարական հայացքներն ամենուրեք, որտեղ դրանք դեռևս պահպանվում են:

Այո՛, սոցիալիզմը սոցիալական երաշխիքների հասարակություն է, որը մարդուն չի թողնում մեն-մենակ կյանքի դժվարությունների և ձախորդությունների դեմ հանդիման: Սովետական մարդկանց սոցիալական պաշտպանվածությունը խարսխվում է մասնավոր սեփականության ու շահագործման ոչնչացման վրա, աշխատավորների իշխանության վրա: Մարդու սոցիալական պաշտպանվածության սկզբունքը վավերագրված է մեր օրենքներում, հաստատված բազմամյա պրակտիկայում: Երկրում ստեղծված են կարևորագույն սոցիալական երաշխիքներ՝ բնակարանի իրավունք, ապահովվածություն աշխատանքով, անվճար կրթություն և բուժսպասարկում:

Այստեղ եղած բոլոր թերություններով ու բացթողումներով հանդերձ, այդ նվաճումների սկզբունքային նշանակությունը կասկածի ենթակա չէ: Սակայն հասարակության մեջ սոցիալական պաշտպանվածության մակարդակը կախված է ազգային հարստության մեծությունից, իսկ սա էլ իր հերթին «Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի» սոցիալիզմի սկզբունքը ճիշտ ու հետևողականորեն կիրառելուց: Այդ սկզբունքին համապատասխան, մարդու բարեկեցությունը, կենսապայմանները անմիջականորեն կախված են նրա ընդունակությունների, տաղանդի գործադրումից, ընդհանուր գործում նրա ունեցած ներդրումից: Սա է սոցիալիզմի կենսունակության հիմքը: Հենց յուրաքանչյուր աշխատավորի տաղանդից և երկրի հանրային հարստության մեջ նրա ներդրած կոնկրետ ավանդից: Դրա հետ մեկտեղ մենք պետք է վճռականորեն կասեցնենք ամեն տեսակ գռփողական նկրտումները, որտեղ էլ որ դրանք դրսևորվեն: Միայն մեր օրենքների և գոյություն ունեցող նորմաների շրջանակներում ազնիվ ու բարեխիղճ աշխատանքը կարող է նյութական բարձր վարձատրություն ունենալ և հասարակական ճանաչման արժանանալ:

Ընկերնե՛ր: Մեծ են էկոնոմիկան զարգացնելու մեր պլանները: Դրանք ձեզ հայտնի են: Բայց բոլոր ուժերը նվիրաբերելով այդ խոշորամասշտաբ աշխատանքի ծավալմանը, չպետք է կտրվել ժողովրդի ամենօրյա կարիքներից ու պահանջմունքներից:

Հիշեցնեմ, որ բուն վերակառուցումը մենք սկսեցինք հրատապ, կենսականորեն կարևոր պրոբլեմների ճնշման ներքո: Քանիցս հարկ է զգացվել, անդրադառնալ այն իրավիճակի գնահատականին, որը երկրում ստեղծվել էր 80-ական թվականների սկզբներին: Կցանկանայի ավելացնել ևս մի քանի նկատառումներ: Ինչպես հայտնի է, մեզանում տնտեսական զարգացման տեմպերը նվազում էին և հասել էին ճգնա-

ժամային կետի: Բայց այդ տեմպերն էլ, ինչպես այժմ պարզ է դարձել, ձեռք էին բերվում գգալիորեն ոչ առողջ հիմքի վրա, կոնյունկտուրային գործոնների հիմման վրա: Ես նկատի ունեմ համաշխարհային շուկայում նավթի առևտուրը այն ժամանակ առաջացած բարձր գներով, ոգելից խմիչքների վաճառքին զարկ տալը, որը ոչ մի բանով արդարացված չէր: Եթե աճի տնտեսական ցուցանիշները մաքրենք այդ գործոնների ազդեցությունից, ապա կստացվի, որ փաստորեն չորս հնգամյակի ընթացքում մենք ազգային եկամտի բացարձակ աճի ավելացում չենք ունեցել, իսկ 80-ական թվականների սկզբներին այն նույնիսկ սկսել էր կրճատվել: Այսպիսին է իրական պատկերը, ընկերնե՛ր: Եվ միայն այժմ է սկսվում էկոնոմիկայի աճը առողջ հիմքի վրա:

Անցյալում ստեղծված իրավիճակի հետևանքները մենք շարունակում ենք զգալ ուժգնորեն: Այժմ, երբ համաշխարհային շուկայում իրադրությունը փոխվել է և վառելիքաէներգետիկ ռեսուրսների գները ընկել են, երբ, հանուն բնակչության սոցիալական առողջության պահպանման, մենք ստիպված ենք կրճատել գինու-օղու արտադրությունն ու վաճառքը, երկրի էկոնոմիկան բախվել է ֆինանսական շատ լուրջ պրոբլեմի: Ոգելից խմիչքների վաճառքի կրճատման հետևանքով վերջին երեք տարում պետությունը պակաս է ստացել ավելի քան 37 միլիարդ ռուբլի: Բացի այդ, 1987 թվականին, 1985 թվականի համեմատությամբ, 9 միլիարդ ռուբլով նվազեցին ներմուծվող ապրանքների վաճառքից ստացված եկամուտները, որոնց գնումները մենք ստիպված էինք սահմանափակել վալյուտայի պակասի պատճառով:

Ստեղծված իրադրությունը մեզանից հսկայական, ես կասեի արտակարգ ջանքեր է պահանջում միաժամանակ երկու ասպարեզում՝ արմատական տնտեսական ռեֆորմ իրականացնելու և ընթացիկ տնտեսական իրավիճակն առողջացնելու, մեր բնակչության կենսական պահանջմունքները բավարարելու բնագավառներում:

Կենտկոմի հունիսյան պլենումում, ինչպես հիշում եք, պրոբլեմների ամբողջ շրջանակից մենք առանձնացրել էինք առաջնահերթ նշանակություն ունեցողները՝ պարենայինը, բնակարանայինը և անհրաժեշտ ապրանքներով ու սպասարկումներով բնակչությանն ապահովելու պրոբլեմները: Մեր որոշումներն ինչպե՞ս են ամրապնդվում գործնական ձեռնարկումներով երկրի, հանրապետությունների, երկրամասերի, մարզերի մասշտաբներով: Սա, ընկերներ, պետք է իմանա կուսակցությունը, պետք է իմանա ժողովուրդը:

Նախ և առաջ պարենավորման մասին: Տասներկուերորդ հնգամյակի երկու տարում հացահատիկի համախառն բերքն ավելացել է 17 տոկոսով: Մսի արտադրությունը տասնմեկերորդ հնգամյակի միջին տարեկան արտադրության համեմատությամբ աճել է 2,1 միլիոն տոննայով կամ 12 տոկոսով, կաթինը՝ 8,2 միլիոն տոննայով կամ 9 տոկոսով, ձվինը՝ 7 միլիարդով կամ 9,4 տոկոսով: Աճ, ինչպես տեսնում եք, կա: Այն ապահովեց պարենային մատակարարման որոշ բարելավումը: Եվ դա՝ չնայած այդ մթերքների ներմուծման կրճատմանը վալյուտային ներմուծումների նվազելու հետևանքով: Եվ, այդուհանդերձ, պարենային ռեսուրսների վիճակը մեզ չի բավարարում, և մենք պետք է համառորեն ավելացնենք դրանք: Այստեղ մեծ ռեզերվներ կան, բայց դրանք տարբեր կերպ են օգտագործվում:

Մի կողմից կան մի շարք հանրապետություններ ու մարզեր, որտեղ վերջին տարիներին նկատելիորեն ավելացել է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը: Օրինակ, դեռ վերջերս իր զարգացմամբ լրջորեն հետ էր մնում Օրյոլի մարզի գյուղատնտեսությունը: Բայց վերջին ժամանակներս այնտեղ բարեփոխումներ են նկատվում: Մարզի տնտեսություններում մեծ ուշադրություն դարձրին աշխատանքի կազմակերպման ու վարձատրման արդյունավետ ձևերի օգտագործմանը: Փաստորեն ամբողջ բուսաբուծությունը ընդգրկում է կապալի տարբեր՝ կոլեկտիվ, վարձակալական, ընտանեկան և անհատական ձևերը: Ավարտվում է աշխատանքի կապալային սկզբունքներին անցնելը նաև անասնապահության մեջ: Նախկինից ավելի շատ ուշադրություն է դարձված գյուղերի սոցիալական զարգացմանը: Անցյալ տարի մարզի հետ մնացող տնտեսություններում միջին հաշվով շահագործման էին հանձնվել 50—100-ական բնակարան, 40-ական նոր տեղեր դպրոցներում և 43-ական տեղեր՝ մանկական նախադպրոցական հիմնարկներում: Դա հանգեցրեց գյուղի կադրային ապահովման բարելավմանը, պայմաններ ստեղծեց հողագործության և անասնապահության մթերատվության բարձրացման համար: Դրա հետևանքով 1986—1987 թվականներին գյուղատնտեսության համախառն արտադրանքը, նախորդ հնգամյակի միջին տարեկան մակարդակի համեմատությամբ, ավելացավ 18 տոկոսով, իսկ աշխատանքի արտադրողականությունը՝ 27 տոկոսով: Արտապլանային արտադրության շնորհիվ վերջին երկու տարում տեղական մատակարարման համար մսի վաճառքն աճեց 33 տոկոսով, կաթնամթերքներինը՝ 17 տոկոսով: Բնակչությունը ռեալորեն զգաց իրականացվող վերակառուցման պտուղները:

Ցավոք, բնավ ամենուրեք չէ աշխատանքն այդպես տարվում: Հայաստանում, Նովոսիբիրսկի, Վորոնեժի, Յարոսլավլի, Կիրովոգրադի, Կոստրոմայի, Ռոստովի մարզերում դաշտերի ու ֆերմաների մթերատվությունը, տնտեսությունների էկոնոմիկայի արդյունավետությունը մնում են ցածր: Կաթնատու անասնապահության հետ մնալու պատճառով այստեղ չեն կատարել նույնիսկ կաթի պլանային մատակարարումները տեղական պահանջարկը բավարարելու համար: Նույն վիճակն է Ադրբեջանում, Վրաստանում, Ուզբեկստանում, Չեչենա-Ինգուշեթիայում, Օդեսայի, Չարջոուի մարզերում՝ կապված մսի մատակարարման հետ:

Որպեսզի իրադրությունը փոխվի, պետք է վճռականորեն հաղթահարել խնամառությունը, պարենով ապահովելու հարցերը կենտրոնին ուղղվող նորանոր խնդրանքների հաշվին լուծելու՝ տեղական ղեկավար շատ կադրերի ձգտումը:

Ինչն է այստեղ գլխավորը: Պետք է դադարել վարչարարություն անելուց, կոլտնտեսություններին ու սովխոզներին հրամայելուց: Կարևոր է լայն ճանապարհ բացել ագրարային հատվածի աշխատավորների նախաձեռնողական, ձեռներեց գործունեության համար, ակտիվորեն օգտագործել աշխատանքի կազմակերպման ու վարձատրության բոլոր արդյունավետ ձևերը՝ կոլեկտիվ, վարձակալական, ընտանեկան կապալները, կոլտնտեսությունների և սովխոզների ներսում, ինչպես նաև նոր մոտեցումները շրջագրոարդմիավորման շրջանակներում:

Բնակարանային շինարարության և սոցիալական ոլորտի զարգացման մի քանի հարցերի մասին: Ինչպես գիտեք, այս բնագավառում ծառացած խնդիրների արագ լուծման համար ձեռնարկված են և իրացվում են միջոցներ: Աշխատանքի առաջին արդյունքները հետևյալն են. 1987 թվականին ֆինանսավորման բոլոր աղբյուրների հաշվին կառուցվել է մոտավորապես 130 միլիոն քառակուսի մետր բնակմակերես, ինչը գրեթե 2,5 միլիոն քառակուսի մետրով ավելի է պլանավորվածից և 10 միլիոն քառակուսի մետրով գերազանցում է 1986 թվականի արդյունքները: Դա ավելի է, քան նախորդած ամեն մի տարում: Միայն անցած տարի շահագործման հանձնված հանրակրթական դպրոցների թիվն ավելացավ 18 տոկոսով, նախադպրոցական հիմնարկներինը՝ 7 տոկոսով, պրոֆտեխուսումնարաններինը՝ 61 տոկոսով, պոլիկլինիկաներինը՝ 17 տոկոսով, ակումբներինն ու մշակույթի տներինը՝ 36 տոկոսով:

Ես արդեն խոսել եմ Ղազախական ՍՍՀ-ում բնակելի տների շինարարության բնագավառում կատարված որոնումների և ձեռքբերումների մասին: Ղազախստանի շինարարները լավ աշխատեցին անցած տարի. տարեկան ծրագիրը նրանք կատարեցին մինչև մեծ Հոկտեմբերի 70-ամյակը: Դրա շնորհիվ բնակարան ստացավ հերթագրված յուրաքանչյուր հինգերորդ ընտանիքը:

Այդ հաջողությունները ռեալ են դարձնում նոր խնդրի լուծումը՝ մինչև 1991 թվականը բնակարանով ապահովել հանրապետության այն բոլոր աշխատավորներին, ովքեր հաշվառման են վերցված մինչև 1987 թվականի սկիզբը:

Սոցիալական ոլորտի զարգացման ուղղությամբ բազմապլան աշխատանք է տարվում Էստոնիայում: Այստեղ տարեցտարի կայունորեն կատարվում են նախատեսված պլանները, ձեռք է բերված բնակարանով ապահովվածության ամենաբարձր մակարդակը երկրում, ինչին քիչ չի նպաստում բնակչության միջոցների հմուտ ներգրավումը: Պլանաչափորեն է լուծվում մյուս կարևոր խնդիրը՝ գյուղական յուրաքանչյուր տնտեսությունում ունենալ դպրոց, մսուր-մանկապարտեզ, ակումբ, ճաշարան, ընդ որում դրանք կառուցել ժամանակակից պահանջների մակարդակով ու որակով: Առանձնապես ուզում եմ ընդգծել, որ էստոնացի շինարարների հաջողությունները հենվում են սեփական նյութատեխնիկական բազայի առաջանցիկ զարգացման վրա:

Կենտկոմի հունիսյան պլենումում, ինչպես հիշում եք, շատ հանրապետությունների ու մարզերի ղեկավարներ քննադատության ենթարկվեցին բնակելի տների կառուցման գործում հետ մնալու համար: Նման երևույթներ տեղի են ունենում նաև ներկայումս: Բնակարանային և սոցիալական շինարարությունը դանդաղ է կատարվում Տաջիկստանում, Ռուսաստանյան Ֆեդերացիայի մի շարք ռեգիոններում, առանձնապես Գորկու, Նովոսիբիրսկի, Պենզայի, Ռյազանի, Չիտայի մարզերում և Դաղստանում:

Իսկ ի՞նչ է տեղի ունենում: Որո՞նք են հետ մնալու գլխավոր պատճառները:

Եթե նկատի ունենանք, որ բոլորի ելակետային պայմանները փաստորեն միատեսակ են, ապա այս հարցի պատասխանը պետք է փնտրել ամենից առաջ հին հիվանդության ռեցիդիվների՝ խոսքի ու գործի միջև եղած խզման մեջ: Ամեն տեղ մշակվում են ոչ վատ ծրագրեր, բայց բնավ ամենուրեք չէ, որ դրանց իրագործումը ամրապնդվում է անհրաժեշտ կազմակերպչական, տնտեսական աշխատանքով:

Օրերս Կենտկոմի քաղբյուրոն քննարկեց և հավանություն տվեց քաղաքներում և գյուղական վայրերում անհատական բնակարանային շինարարության զարգացման մասին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմանը: Նախատեսված միջոցառումներով վերացվում են նախկինում եղած չարդարացված սահմանափակումները և բարենպաստ պայմաններ են ստեղծվում անհատական տների վարկավորման ու շինարարության համար: Այս ամենը պետք է ծանրակշիռ նեցուկ դառնա մեր սոցիալական ծրագրերի իրագործման ասպարեզում: Հիմա պետք է տեղական մարմինները անհրաժեշտ ուշադրություն դարձնեն անհատական տներ կառուցողներին և հարկ եղած օգնությունը ցույց տան նրանց:

Մի խոսքով, ընկերներ, ինչպես տեսնում եք, բազմապիսի միջոցներ են ձեռնարկվում, և այսօր հարկավոր է ավելի ակտիվորեն օգտագործել դրանք բնակարանային պրոբլեմը ավելի արագ լուծելու, սովետական մարդկանց համար ավելի լավ կենսապայմաններ ստեղծելու նպատակով:

Եկեք, ընկերնե՛ր, անզիջում լինենք գնահատումների մեջ. բնակարանային և սոցիալ-կուլտուրական շինարարության պլանները չկատարելը աններելի է և ոչնչով չի կարող արդարացվել: Առաջադրանքների ձախողման փաստերը ամենուրեք պետք է հրապարակայնություն ստանան, իսկ կարևոր սոցիալական ծրագրի ձախողման համար մեղավորները պետք է պատասխանատվություն կրեն աշխատավորների առջև:

Լուրջ մտահոգություն է առաջացնում ապրանքների արտադրության և բնակչությանը սպասարկումների մատուցման գործում տիրող վիճակը: Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության զարգացումն արագացնելու միջոցառումները որոշակի արդյունքներ են տալիս: Վերջին երկու տարում ժողովրդական սպառման արդյունաբերական ապրանքների արտադրությունը ավելացել է 16,5 միլիարդ ռուբլով կամ 9,4 տոկոսով, այդ թվում թեթև արդյունաբերության մեջ՝ 3,3 միլիարդ ռուբլով կամ 4 տոկոսով: Եվ, այնուամենայնիվ, սպառողական շուկայում դրությունը մնում է լարված, բնակչության վճարունակ պահանջարկը չի բավարարվում: Անցած տարի արդյունաբերությունը 3,6 միլիարդ ռուբլով ավելի քիչ ժողովրդական սպառման ապրանքներ արտադրեց, քան նախատեսվում էր պլանով: Ընդ որում մեծ քանակությամբ արտադրանք պակաս տվեցին միութենական մինիստրությունների ձեռնարկությունները, առանձնապես բնակչության շրջանում ավելի մեծ պահանջարկ վայելող ժամանակակից տեխնիկական մակարդակի ապրանքներ:

Փաստորեն շոշափելի բարեփոխումներ չեն կատարվել ժողովրդական սպառման ապրանքների որակի մեջ: Հատկապես դանդաղ է աճում բնակչությանը ցույց տրվող սպասարկումների ընդլայնման նյութատեխնիկական բազան:

Երկրի էկոնոմիկայի կառավարման արմատական վերակառուցումը, պատասխանատվությունից չազատելով ճյուղային մինիստրություններին, ապրանքների և սպասարկումների հարցում մարդկանց պահանջմունքների բավարարման, բնակչության դրամական եկամուտների ու ծախսումների հաշվեկշռայնության ապահովման գործնական աշխատանքի ծանրության կենտրոնը տեղափոխում է հենց հանրապետությունները, երկրամասեր, մարզեր: Կենսականորեն կարևոր այդ պրոբլեմների լուծմանը մասնակցելուց ամեն մի պատրվակով խուսափելու փորձերը պետք է սուր գնահատական ստանան:

Հավանաբար պետք է մտածել նաև մի այսպիսի հարցի մասին. ինչքա՞ն է կատարյալ ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ավելացման բնագավառում աշխատավորական կոլեկտիվների և ճյուղերի խթանման մեր ընդունած տնտեսական մեխանիզմը: Մանավանդ որ ապրանքների և սպասարկումների քանակի ու որակի պրոբլեմը միայն վարչարարության մեթոդներով լուծելու փորձերը մինչև հիմա քիչ արդյունավետ են եղել: Մենք վախենալու բան չունենք ընդունելու այստեղ թույլ տրված վրիպումները: Ընդհակառակը, որքան արագորեն դրանք նկատվեն և ուղղվեն, այնքան լավ կլինի, այնքան արագորեն հատույց կստանանք:

Միայն մի պահանջ պետք է անփոփոխ մնա. պրոբլեմները պետք է լուծել արագ, առանց ձգձգելու:

Գուցե, լսելով ճառի այս մասը, ոմանք հարց տան. իսկ դա իսկն ասած ի՞նչ



առնչություն ունի վերակառուցման գաղափարախոսական կողմերի հետ: Ես կարծում եմ, որ այստեղ կապն ուղղակի է. այն բանից, թե ինչպե՞ս կլուծվեն այդ խնդիրները, մեծապես կախված են մեր մարդկանց ինքնազգացողությունն ու գիտակցությունը, նրանց տրամադրությունը գործին, կուսակցության քաղաքականությանը, վերակառուցմանը ցույց տրվող վերաբերմունքը:

Ընկերնե՛ր: Մեր տնտեսական ռեֆորմը, դեմոկրատացման և հրապարակայնության պրոցեսների զարգացումը, հոգևոր-բարոյական ոլորտի նորացումը, այսինքն այն ամենը, ինչ մենք կապում ենք հեղափոխական վերակառուցման հասկացության հետ, միևնույն շղթայի օղակներ են: Դրանք սերտորեն փոխկապակցված են ու փոխադարձաբար կախված, պահանջում են, որ դրանցից մեկում վերակառուցում սկսելով, մենք այն շարունակենք մյուսում:

Ուստի մենք միանգամայն բնականաբար, ես կասեի, տրամաբանորեն հիմա մոտեցել ենք մեր քաղաքական սիստեմի վերակառուցման անհրաժեշտությանը: Խոսքը վերաբերում է, իհարկե, ոչ թե գործող սիստեմը փոխելուն, այլ այն բանին, որ դրա մեջ մտցնենք որակապես նոր կառուցվածքներ ու տարրեր, դրան տանք նոր բովանդակություն ու դինամիկություն, որոնք ապահովեին մեր հասարակության հաջող զարգացումը: Այս հարցերն արդեն լայնորեն ու ակտիվորեն քննարկվում են երկրում: Եվ ոչ պատահականորեն: Վերակառուցումը խորանում է: Այն պետք է ընդգրկի բոլոր ոլորտները և, իհարկե, մի այնպիսի կարևորագույն ոլորտ, ինչպիսին է հասարակության քաղաքական սիստեմը:

Ինչպես ես արդեն ասացի, մենք պետք է դեռ մինչև XIX կուսկոնֆերանսը հիմնավոր աշխատանք կատարենք այդ հարցերի գծով: Մեր քաղաքական սիստեմի զարգացման գլխավոր պրոբլեմը իշխանության ու կառավարման այնպիսի մեխանիզմի ստեղծումն է, որտեղ հստակորեն կազմակերպված լինի գործուն դեմոկրատական վերահսկողություն, մշակվեն համապատասխան իրավական պրոցեդուրաներ, որոնք լրջորեն նվազեցնեն, նույնիսկ ի չիք դարձնեն պատահականության տարրը կարևորագույն քաղաքական, պետական հարցերի լուծման գործում, բացառեն սուբյեկտիվիզմի հնարավորությունը մեր քաղաքական սիստեմի բոլոր «հարկերում»: Պետք է հասնել այն բանին, որ սկզբունքային որոշումները մշակվեն և ընդունվեն ժողովրդի ակտիվ մասնակցությամբ: Հենց դա էլ կհամապատասխանի մեր սոցիալիստական դեմոկրատիային:

Ամենից առաջ խոսքը պետք է վերաբերի սովետների՝ որպես մեր հասարակության քաղաքական սիստեմի առանցքի, նրա պետական մարմնավորման, դերի արմատական մեծացմանը: Հենց այստեղ, սովետների կազմավորման ու գործունեության մեջ պետք է ամենից առաջ իրագործվեն սոցիալիզմի դեմոկրատական սկզբունքները: Որոշակի իմաստով մենք այսօր խոսում ենք սովետների իշխանության վերածնման անհրաժեշտության մասին՝ դրա լենինյան ըմբռնմամբ: Պետք է բոլոր մակարդակների սովետները դարձնել ռեալ կերպով աշխատող, նախաձեռնողական, պետական իշխանության և կառավարման լիիրավ կենտրոններ:

Սա ըստ երևույթին կպահանջի ավելի լավ կշռադատել, թե ինչպես պետք է ձևավորվեն սովետները: Իսկ դա նշանակում է, որ անհրաժեշտ է կատարելագործել մեր ընտրական համակարգը, որպեսզի իշխանության մարմինների ձևավորման պրոցեսը ապահովի ժողովրդի ակտիվ մասնակցություն և այնպիսի մարդկանց մանրակրկիտ ընտրություն, որոնք կարողանան ապահովել սովետների գործունեությունը՝ նկատի ունենալով վերակառուցման խնդիրները: Հարկավոր է սովետներում հաշվի առնել մեր երկրի ողջ բազմազանությունը, ներառյալ նաև ազգային առանձնահատկությունները: Եվ, իհարկե, մենք չպիտի շրջանցենք ՍՍՀՄ Գերագույն սովետի գործունեության հարցերը: Պետք է նորովի իմաստավորել նրա դերը աշխատանքի արդյունավետության ուժեղացման առումով, սկսած նախագահությունից, նստաշրջաններից և վերջացրած հանձնաժողովների ու դեպուտատների գործունեությամբ:

Քաղաքական սիստեմի ռեֆորմի արմատական հարցը վերաբերում է կուսակցական և պետական մարմինների ֆունկցիաների սահմանազատմանը: Այստեղ նույնպես հիմքում պետք է դրվեն լենինյան գաղափարները: Կուսակցության ուղղություն տվող և ղեկավար դերը սոցիալիստական հասարակության գործունեության ու զարգացման պարտադիր պայմանն է: Կուսակցությունն է տեսականորեն մշակում և ճշտում քաղաքական կուրսը: Կուսակցությունն է իր մշակած քաղաքականությունը հասցնում մասսաներին, նրանց կազմակերպում ու համախմբում առաջադրված նպատակների իրագործման համար, վարում համապատասխան կադրային քաղաքակա-

նություն: Ըստ էության, հենց սրանք են կուսակցության՝ որպես հասարակության
քաղաքական ավանգարդի հիմնական ֆունկցիաները: Այժմ վերակառուցման, դեմո-
կրատացման պայմաններում կուսակցության մասին, սոցիալիզմի պայմաններում նրա
գործունեության մասին լենինյան ուսմունքը պետք է վերածնվի լրիվ ծավալով: Մենք
համամիութենական կուսկոնֆերանս պետք է գանք հենց այդ հարցերի վերաբերյալ
կշռադատված, կոլեկտիվ կերպով մշակված առաջարկություններով:

Ստեղծվող քաղաքական սիստեմը անհնար է պատկերացնել նաև առանց հա-
սարակական կազմակերպությունների զարգացած սիստեմի, նրանց աշխատանքի
բովանդակության ու մեթոդների արմատական փոփոխման:

Այդ աշխատանքը պետք է հիմնված լինի այն բանի ըմբռնման վրա, որ յուրա-
քանչյուր հասարակական կազմակերպության հետևում կանգնած են որոշակի սո-
ցիալական խավեր՝ իրենց առանձնահատկություններով ու շահերով: Եվ խնդիրը ոչ
թե այն է, որ դրանք համահարթվեն, այլ, ընդհակառակը, այն, որ առավել լրիվ չա-
փով ի հայտ բերվեն, հաշվի առնվեն ու ի սպաս դրվեն հասարակական առաջադի-
մությանը: Հասարակական կազմակերպությունների գլխավոր խնդիրն է զարգացնել
քաղաքացիների սոցիալ-քաղաքական ակտիվությունը, բավարարել նրանց բազմա-
պիսի հետաքրքրությունները, նրանց մեջ ձևավորել հասարակական ինքնակառա-
վարման ունակություններ:

Կարծում եմ, մեր խնդիրը պետք է լինի հաղթահարել հասարակական կազմա-
կերպություններում վճարովի ֆունկցիոներների ճնշիչ ազդեցությունը, կազմակերպա-
մոլությունն ու բյուրոկրատիզմը՝ կենտրոնական մարմինների լիազորությունների մի
մասը ստորադաս մարմիններին հանձնելու հիման վրա: Ստորադաս կազմակերպու-
թյունները ազատել վերադաս ապարատի հետ իր ամեն մի քայլը համաձայնեցնելու
անհրաժեշտությունից:

Պահանջ է զգացվում զարգացնել հասարակական կառուցվածքների համակար-
գը, ստեղծել մի շարք հասարակական միավորումներ, որոնք իրենց շարքերում միա-
վորեն մարդկանց ըստ տարբեր սոցիալական, պրոֆեսիոնալ և այլ հետաքրքրություն-
ների: Ըստ երևույթին հարկ կլինի ընդլայնել այն հարցերի շրջանակը, որոնք պետա-
կան մարմինները կարող են լուծել միայն հասարակական կազմակերպությունների
մասնակցությամբ:

Սոցիալիստական դեմոկրատիզմը սոցիալական, քաղաքական կյանքի ձևերի
բազմազանություն է, բնականաբար, մեր սոցիալիստական սկզբունքների և արժեք-
ների բազայի վրա: Եվ այս գաղափարը պետք է դրվի այն որոշումների հիմքում,
որոնք, մեր կարծիքով, կոչված է մշակելու կուսակցական կոնֆերանսը:

Սա վերաբերում է նաև ազգային հարաբերությունների, ազգային-պետական շի-
նարարության հարցերին: Այսօր մենք խոսում ենք երկրի բոլոր ազգերի և ազգու-
թյունների ազգային ինքնագիտակցության աճի մասին, ազգային զգացմունքների
դրսևորումների մասին (ինչը երբեմն ի հայտ է գալիս ձևախախտված կերպով):
Սրանք բոլորը կենդանի հարցեր են, և դրանք պետք է լուծել: Պետք է մտածել նաև
հանրապետությունների միջև կապերի հետագա զարգացման, նրանց իրավունքների
ամրապնդման ձևերի մասին, այդ թվում նաև կենտրոնական պետական մարմիննե-
րում ներկայացուցչության գծով:

Ինչպես տեսնում եք, շատ պրոբլեմներ են կուտակվել: Եվ այստեղ կիսատ-
պռատ միջոցներով գործը առաջ չես տանի: Ակներևաբար, մեր առջև կանգնած է
առաջիկա կուսակցական կոնֆերանսի առթիվ քաղաքական սիստեմի կատարելա-
գործման վերաբերյալ ծավալուն առաջարկությունների նախապատրաստման խնդիրը,
որոնք հիմնվեին ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման մասին կուսակ-
ցության XXVII համագումարի, Կենտկոմի պլենումների գաղափարների վրա, հաշվի
առնեին դեմոկրատացման այն պրոցեսները, որ տեղի են ունենում հասարակության
մեջ:

Հիմա, ընկերնե՛ր, վերակառուցման գաղափարախոսության միջազգային մի քանի
կողմերի մասին:

Տառապանքի գնով քաղելով, մեր գիտակցության ու հոգու միջով անցկացնե-
լով անցյալի փորձն ու դասերը, մենք մեր առջև խնդիր դրեցինք. հասկանալ, ուսում-
նասիրել, խորամուխ լինել այն հասարակության մեջ, որտեղ ապրում ենք: Ճիշտ
այդպես էլ մենք առաջադրեցինք հարցը նաև միջազգային առումով. հասկանալ, խո-
րամուխ լինել, ուսումնասիրել շրջակա աշխարհը, որտեղ երկիրն է ապրում: Օբյեկ-
տիվ վերլուծության շնորհիվ մենք հանգեցինք վերակառուցման և նոր քաղաքական



մտածողության անհրաժեշտությանը: Դրանով իսկ առաջանցում կատարվեց ժամա-
նակակից իրողությունների գիտական ճանաչողության մեջ, որը փոխակերպվեց նո-
րարարական ու դինամիկ քաղաքականության:

Դեռ մինչև կուսակցության համագումարը, 1986 թվականի հունվարի 15-ի հայ-
տարարության մեջ մենք հռչակեցինք դեպի միջուկային զենքից զերծ աշխարհը գնա-
լու ծրագիր՝ որպես մարդկության գոյատևման անվերապահ պայմանի: ՍՄԿԿ XXVII
համագումարը տվեց դարերի սահմանագծում խաղաղ գոյակցության փիլիսոփայու-
թյան ծավալուն մեկնաբանությունը և հիմնավորեց խաղաղության ու միջազգային
անվտանգության համապարփակ համակարգի կոնցեպցիան: Զինաթափման բնագա-
վառում մեր նախաձեռնությունները և միջազգային ասպարեզում մյուս կոնկրետ
քայլերը հիմա արդեն իմպրովիզացիա չեն, Արևմուտքի այս կամ այն քաղաքական
քայլի ու գործողության նկատմամբ սոսկական վերաբերմունք չեն, ինչպես երբեմն
լինում էր առաջ: Դրանք ամուր, երկարաժամկետ, գիտական հիմք են ստացել:

Այդպես հարթվեց ճանապարհը դեպի Ժնև, հետո դեպի Ռեյկյավիկ և վերջերս
դեպի Վաշինգտոն՝ միջուկային զենքի կրճատման մասին առաջին համաձայնագիրը՝
միջին և փոքր հեռահարության հրթիռների վերաբերյալ պայմանագիրը Միացյալ Նա-
հանգների հետ բարձր մակարդակով ստորագրելու համար: Կարծում եմ, որ, գնա-
հատելով դրա նշանակությունը՝ բոլորս համաձայն ենք, որ այն գործնականորեն է
հավաստում 1985 թվականի ապրիլյան պլենումում սկզբնավորված, XXVII համա-
գումարում տեսականորեն ու քաղաքականապես հիմնավորված քաղաքականության
ճշտությունը: Մենք ասում ենք. Վաշինգտոնում ստորագրված պայմանագիրը ռեալ
զինաթափման սկիզբն է: Մենք ուզում ենք, որ այդպես լինի: Եվ կձգտենք հասնել
այն բանին, որ պայմանագիրը շարունակություն ունենա:

Բայց դա նաև արդյունք է: Միջուկային սպառնալիքի դեմ սոցիալիստական եր-
կրների, մյուս առաջադեմ ու խաղաղասեր պետությունների, մասսայական հասա-
րակական շարժումների, Միավորված ազգերի կազմակերպության, չմիանալու շարժ-
ման մղած պայքարի ջանքերի արդյունքը: Գիտության, մշակույթի, եկեղեցու ակա-
նավոր գործիչների ակտիվության, նրանց համախմբման ու փոխըմբռնման արդյուն-
քը: Դա նաև շատ քաղաքագետների, գործարար աշխարհի, զինվորական շրջանների
ողջամիտ ու գործուն դիրքորոշման արդյունքն է:

Պայմանագիրը այն մակարդակի յուրատեսակ ցուցանիշ է, որին հասել է խա-
ղաղության պոտենցիալը: Դա նաև վկայում է, որ նոր մտածողությունը ոչ միայն
տիրում է մարդկանց մտքերին, այլև արդեն սկսել է ազդեցություն գործել համաշ-
խարհային քաղաքականության վրա: Պայմանագրի մշակումը ուսանելի է նաև կու-
տակված փորձով: Ապացուցված է իրավահավասար, թեկուզ դժվարին, լարված բա-
նակցությունների արգասավորությունը, որոնցում մանրակրկիտ հաշվի են առնվում
փոխադարձ շահերն ու մտահոգությունները:

Սակայն պայմանագրի ստորագրումը հանգստանալու և բարեհոգության պատըր-
վակ չէ: Այն բացեց, կարելի է ասել, զինաթափման ու խաղաղության պայքարի, այդ
թվում գաղափարախոսական պայքարի հերթական փուլը: Համընդհանուր բերկրանքի
առաջին օրերից հետո շատ չանցած ՍՍՀՄ-ի հետ հարաբերությունների նորմալաց-
ման հակառակորդները սկսեցին «հավաք շեփորել», իրենց ուժերը մոբիլիզացնելով
պայմանագրի վավերացման դեմ պայքարելու համար: ԱՄՆ-ի վարչակազմը իր խոս-
քի տերն է մնում, պաշտպանում է պայմանագիրը: Բայց միաժամանակ ձայնակցում
է ծայրահեղ աջերին հակասովետական, հակակոմունիստական ճամարտակության
մեջ: Եվ ոչ միայն խոսքով, այլև ռազմամոլական ոճի որոշակի գործողություններով՝
«հարանճուն սովետական սպառնալիքի» այդ նույն պատրվակով: Մենք նորից բախ-
վեցինք մեր սահմանների մոտ կատարվող պրովոկացիաների: ԱՄՆ կատարած այ-
ցելության ժամանակ ստեղծված մթնոլորտը բացահայտորեն ոմանց դուր չի գալիս:

Զգալիորեն ուժեղացել է ռազմամոլական գործունեության տոնուսը ՆԱՏՕ-ի
եվրոպական մասում: Ծտապում են «փոխհատուցում» կազմակերպել ըստ պայմա-
նագրի վերացման ենթակա հրթիռների դիմաց: Ծրագրում են միջուկային «մյուս»
զինատեսակների արդիականացում և ավելացում, հատկապես ծովում և օդում, ցի-
նիկորեն վկայակոչելով այն փաստը, որ պայմանագիրը դրանք չի ընդգրկում: Լոն-
դոնից, Փարիզից, Բրյուսելում ՆԱՏՕ-ի կենտրոնակայանից մենք կրկին կտրական
«ոչ» լսեցինք գոնե հեռավոր ապագայում միջուկային զենքից հրաժարվելու կապակ-
ցությամբ: Պայմանագրի հաջեհին և ստրատեգիական սպառազինությունների կըր-
ճատման ՍՍՀՄ-ի ու ԱՄՆ-ի բանակցությունների հաջեհին սավող հավանության

խոսքերն ուղեկցվում են այն հայտարարություններով, որ Ֆրանսիան և Անգլիան բնավ էլ մտադիր չեն դադարեցնել միջուկային զենքի ավելացումը: Միանգամայն հակառակը: Հենց պայմանագրի ստորագրումից հետո Նատոյական պետությունները ավելի մեծ ակտիվություն են դրսևորում երկկողմ և բազմակողմ ռազմական ինտեգրացման ոլորտում:

Մեր վերակառուցման վերաբերյալ բարձրաստիճան գործիչների շուրթերին հընչող դրական խոսքերը դարձյալ մեջընդմիջվում են «կոմունիզմի էքսպանսիայի մասին» ճամարտակություններով այն նախազգուշացումներով, որ իբր չի կարելի մոռանալ, թե «ում հետ գործ ունես» և իբր քանի որ ներկայիս սովետական ղեկավարությունը մտադիր չէ փոխել իր սիստեմը, ապա կասկած է հարուցում նաև նրա «ժպիտների դիվանագիտությունը»:

Կրկին աղմկում են ՍՍՀՄ-ի հետ ամեն տեսակ բանակցություններ վարելու անիմաստության մասին, քանի որ նա իբր առհասարակ «արժանի չէ վստահության»: Տեղի է ունենում հետադիմական, ծայրահեղ հակասովետական ուժերի համախմբում: Ամեն կարգի «անալիտիկներ» և կրեմլագետներ կառավարությունների համար կազմում են սարսափեցնող հանձնարարականներ, հիմարությամբ լցնում հասարակայնության ուղեղները, Արևմուտքին ահաբեկում «աղետալի» հետևանքներով, եթե զինաթափման պրոցեսը շարունակվի:

Ուժեղացել են վերակառուցման և զինաթափման հարցերին առնչվող գաղափարախոսական պայքարը մեր տարածքը, մեր միջավայրը փոխադրելու փորձերը: «Ռադիոձայները» տարածում են պրովոկացիոն հերյուրանքներ՝ սովետական հասարակության մեջ, սովետական ղեկավարության մեջ պայքարի սրման մասին, այն մասին, որ արդեն առաջացել և աճում է «ընդդիմությունը» վերակառուցման և ՍՄԿԿ-ի արտաքին քաղաքական կուրսի նկատմամբ: Ուզում են անվստահություն, անհավատություն սերմանել կուսակցության առաջադրած նպատակներին հասնելու հնարավորության նկատմամբ: Հակասոցիալիստական պրովոկացիաների կենտրոնները դրանով զբաղվում են ոչ միայն Սովետական Միության նկատմամբ՝ մենք դա լավ ենք տեսնում: Նրանք հապճեպորեն քայքայիչ աշխատանքի նոր եղանակներ են մշակում մյուս սոցիալիստական երկրների դեմ, որտեղ նույնպես ընթանում են սոցիալիզմի հետագա կատարելագործման դինամիկ պրոցեսներ: Այդ երկրներից յուրաքանչյուրի համար նրանք ինքնատիպ հնարքներ են որոնում, որպեսզի գործեն այսպես ասած՝ ազգային յուրահատկությունը հաշվի առնելով:

Մենք գիտենք, թե ինչու են նրանք անհանգստացել: Ոչ միայն այն պատճառով, որ զինաթափումը սպառնում է ռազմաարդյունաբերական համալիրի շահույթներին և դրա մոտ լավ կերակրվողների եկամուտներին, այլև այն պատճառով, որ նրանք վախենում են սոցիալիստական գաղափարների ձգողական ուժի վերածննդից, սոցիալիզմի՝ որպես աշխատավորների հասարակության վարկի աճից: Նրանց վախեցնում է այն փաստը, որ կրկին աճում է համակրանքը մեր երկրի նկատմամբ, որ տեղի է ունենում Սովետական Միության նոր «հայտնագործություն»:

Այս ամենը խարխլում է «թշնամու կերպարը», հետևաբար նաև հակասովետական և իմպերիալիստական քաղաքականության գաղափարախոսական հիմքերը: Փլուզվում է այն, ինչը հետադիմականներին այդպես հավատարմորեն ծառայում էր վերջին տասնամյակներին: Ահա թե ինչու «աջերին» դուր չի գալիս ՍՍՀՄ-ի նախաձեռնողական, խաղաղասիրական քաղաքականությունը: Ահա թե ինչու նրանք ուզում են կանգնեցնել զինաթափման գնացքը, որն արագացնում է ընթացքը: Մեր գաղափարախոսական աշխատանքում և պրոպագանդայում մենք այս ամենը պետք է տեսնենք և ձեռնարկենք համապատասխան միջոցներ:

Ընկերներ: Կենտկոմի նախորդ պլենումից հետո անցած ժամանակամիջոցում միջին և փոքր հեռահարության հրթիռների վերացման պայմանագրի հետ մեկտեղ միջազգային բնույթի ուրիշ նշանակալի իրադարձություն են աֆղանական պրոբլեմի լուծման ուղղությամբ կատարված քայլերը: Այն վաղուց խորապես և անմիջականորեն շոշափում է սովետական մարդկանց զգացմունքները, մեր ամբողջ հասարակությունը:

ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումից հետո քաղբյուրոն կատարեց իրավիճակի խիստ, անաչառ վերլուծություն և արդեն այն ժամանակ սկսեց ստեղծված վիճակից ելք որոնել: Սակայն անչափ բարդ այդ ռեգիոնալ կոնֆլիկտի գլխավոր հանգույցները արձակելու հնարավորություն տվող պրոբլեմները գործնականորեն լուծելը այնքան էլ հեշտ չէր: Դրա համար հնարավորություններ ստեղծվե-



ցին 1986 թվականի վերջերին Աֆղանստանում Նաջիբուլլայի գլխավորությամբ իրոք ազգային ուժերի քաղաքական առաջաբեմ դուրս գալուց հետո: Ստեղծվեցին նաև կոնֆլիկտի այնպիսի կարգավորման արտաքին նախադրյալներ, որ Աֆղանստանը լինի անկախ, չեզոք, չմիացած պետություն: Դա համապատասխանում է աֆղան ժողովրդի շահերին: Դա համապատասխանում է նաև մեր պետական շահերին:

Տասը օր առաջ հրապարակված հայտարարությունը դուք լավ գիտեք: Այնտեղ փաստորեն ասված է ամեն ինչ. ինչպես ենք մենք վարվելու և ինչի վրա ենք հույս դնում: Այն ըմբռնումով և հավանությամբ ընկալվեց մեր ժողովրդի, մեր դաշնակիցների և բարեկամների, համաշխարհային հանրության լայն շրջանների կողմից: Իսկ նրանց, ովքեր մտադիր են այսուհետև էլ աֆղանական պրոբլեմը չարաշահել շահադիտական նպատակներով, հայտարարությունը կանգնեցնում է նոր իրողությունների առջև, որոնք նրանք ստիպված կլինեն հաշվի առնել: Առաջիկա ամիսները պարզ կերպով ցույց կտան Աֆղանստանի իրավիճակի քաղաքական կարգավորման բոլոր մասնակիցների իսկական դիրքորոշումը:

Իհարկե, ընկերներ, աֆղանական կոնֆլիկտին մեր մասնակցությունը շատ բարդ պրոբլեմ է և շոշափում է այն բանի շատ կողմերը, ինչը մենք հաղթահարում ենք վերակառուցման ընթացքում և նոր մտածողությունը հետևողականորեն գործնական քաղաքականության փոխակերպելու ընթացքում: Սակայն այժմ գլխավորն այն է, որ քաղբյուրոն այս հարցում ևս գործում է ՍՄԿԿ XXVII համագումարի սկզբունքային գծին խստիվ համապատասխան:

Առհասարակ պետք է ասել, որ նոր մտածողության պրոբլեմների գիտական մշակումը և դրանց գաղափարախոսական հիմնավորումը գտնվում են նախնական փուլում:

Ընդլայնվող հրապարակայնության պայմաններում աշխատանքն այստեղ չի պակասի: Բնական է ինքնուրույնաբար ամեն ինչում կողմնորոշվելու, տեղի ունեցող երևույթներն ավելի լավ ըմբռնելու, առավել ևս պատերազմի վտանգի դեմ մղվող համաժողովրդական պայքարին, միջազգային շփմանը գործիմացությամբ մասնակցելու սովետական մարդկանց ցանկությունը:

Հենց այդ պատճառով բոլոր անհրաժեշտ պայմաններն ստեղծվում են, որպեսզի վճռականորեն բարձրացվի արտաքին քաղաքական պրոպագանդայի, միջազգային հարցերին նվիրված բացատրական և մեկնաբանական աշխատանքի ինֆորմացիոն և մտավոր մակարդակը: Դա մեր գաղափարախոսական գործունեության շատ կարևոր տեղամասն է: Քանզի, ինչպես և մեր գաղափարների և ներքին կարգի փոփոխությունների կապակցությամբ, նոր մտածողության էության ըմբռնման մեջ նույնպես ոմանց ուղեղներում խառնաշփոթություն է ստեղծվել: Եվ զարմանալի չէ, պրոբլեմները չափազանց նշանակալի են, դրանք կաճեն, և դրանց շուրջը պայքար է ծավալվել:

Մենք դառնում ենք ականատեսներն ու մասնակիցները չտեսնված երևույթի, մի տեսակ տարօրինակության, որն ստեղծվել է համաշխարհային պատմության մեծ դիալեկտիկայով: Համաշխարհային մասշտաբով բազմաթիվ պրոցեսների արագացված միջազգայնացումը ուղեկցվում է երկրների և ժողովուրդների ազգային ու ռեգիոնալ զարգացման տարբերակների թվի և յուրօրինակության բազմապատկմամբ: Բայց թե մեկը և թե մյուսը գործում են աշխարհի ամբողջականության ամրապնդման օգտին:

Դեռ հարկավոր է լրջորեն յուրացնել նման բաները տեսության մեջ և դրանք փոխադրել քաղաքականություն: Ահա թե՛ տեսական և թե՛ գործնական մի խնդիր, որը շատ ճյուղավորումներ ունի:

Ռազմամոլական դոկտրինային, որի վրա հիմնվում է ուժի քաղաքականությունը, մենք հակադրում ենք «շահերի հաշվեկշռի» և փոխադարձ միատեսակ անվտանգության կոնցեպցիան: Մեր պետական շահերը չեն հակասում ժողովուրդների, որևէ այլ հասարակության աշխատավոր զանգվածների շահերին: Առանց խաղաղության պահպանման առհասարակ չի լինի որևէ առաջադիմություն, և այս խնդրի լուծումից դուրս որևէ մեկի շահերի մասին խոսելն անիմաստ է: Միջազգային քաղաքականությունից պատերազմի բացառման համար մղվող պայքարը պայքար է հանուն միլիոնավոր կյանքերի, նախ և առաջ աշխատավորների փրկության, որոնք ամենքից շուտ և ամենքից շատ են տուժում ամեն տեսակ պատերազմներից: Հակադիր սիստեմին պատկանող պետությունների հետ նորմալ գործարար հարաբերությունների հաստատումը մնացած ամեն ինչից բացի թուլացնում է հակասովետիզմը, հետևա-

բար նաև հակակոմունիզմը, դրանով իսկ նվազեցնելով դեմոկրատական նվաճումների և ձգտումների վրա հետադիմության ճնշումը:

Ռազմամոլության վերացումը (որի հարցը մենք սրությամբ ենք դրել և դրան մոտենում ենք գործարար կերպով, իրատեսորեն) ոչ միայն նպաստում է առավել հետադիմական ուժերի սանձահարմանը, այլև ամենուրեք խոստանում աշխատատեղերի ավելացում: Բացի աշխատավոր մարդկանց համար անմիջական օգուտներից, դա կհանգեցնի աշխատավոր զանգվածի տնտեսապես ու սոցիալապես ակտիվ մասի, այսինքն դեմոկրատիայի և առաջադիմության սոցիալական բազայի ընդլայնմանը:

Համաշխարհային նոր տնտեսակարգի համար և «երրորդ աշխարհի» աղաղակող ճգնաժամային երևույթների հաղթահարման համար մղվող պայքարը վերջին հաշվով նշանակում է ամբողջ աշխարհամասերի նոր միլիոնավոր մարդկանց համար մարդկային գոյության պայմանների ստեղծում և պատմական ստեղծագործության մեջ նրանց ներգրավում: Իսկ դա նաև համաշխարհային առաջադիմության, անկախ զարգացման, հեղափոխական վերափոխումների կարևորագույն գործոն է:

Համաշխարհային պրոցեսների բարդությունները և համաշխարհային քաղաքականության «Քայլերի ու շրջադարձերի» անկանխատեսելիությունը, մեր ձեռնարկած և չտեսնված միջազգային արձագանքի արժանացած խաղաղ հարձակման մասշտաբայնությունն ու անսովորությունը, խաղաղ գոյակցությամբ օբյեկտիվորեն չշահագրգռված հզոր ուժերի դիմադրությունը և վերջապես ճիշտ հասկացվելու անհրաժեշտությունը՝ այս ամենը մի ամբողջ կարգով բարձրացնում է մեր ոչ միայն քաղաքական, այլև տեսական պատասխանատվությունը: Թե մարքսիստների և թե նրանց ընդդիմախոսների առջև հրատապորեն ծառացած արմատական տեսական հարցը ռեալ համաշխարհային զարգացման մեջ, հետևաբար նաև քաղաքականության մեջ դասակարգային և համամարդկային սկզբունքների զուգակցման հարցն է:

Հոկտեմբերի 70-ամյակի առթիվ զեկուցման մեջ սկզբունքային դրույթներ շարադրվեցին դրա վերաբերյալ: Դրված է մի հեմնարար պրոբլեմ. արդյոք հնարավո՞ր է արդի փուլում XX դարի վերջին ձեռք բերված աշխարհի փոխկապակցվածության և ամբողջականության դեպքում այնպես ներգործել իմպերիալիզմի բնույթի վրա, որ շրջափակվեին նրա առավել վտանգավոր դրսևորումները: Նշված են սոցիալական տարբեր սիստեմների մրցակցության չափանիշները և դրանց գոյակցության հնարավորությունները այնպիսի ձևերով, որոնք բացառեին տիեզերական աղետը: Մեր հասարակագիտական միտքը սկսել է ավելի համարձակ ձեռնամուխ լինել նոր դարաշրջանի առանձնահատկությունների և հիմնական նախանշանների վերլուծությանը:

Համաշխարհային հասարակայնության հսկայական զանգվածը մեր վերակառուցումը բարիք է համարում բովանդակ մարդկության համար, դրականորեն, նույնիսկ համակրանքով է վերաբերվում մեր սկսած բարեփոխումներին և մեր արտաքին քաղաքականությանը, իսկ շատերը բացեիբաց և եռանդագին պաշտպանում են այն: Ամբողջ աշխարհում մենք վերածնեցինք ապագայի հույսը: Դա բարոյական մեծ կապիտալ է: Եվ մենք պարտավոր ենք պահպանել այն: Եվ արդարացնել այն վստահությունը, որն զգում ենք ամենուրեք: Այսպիսին է գործի մի կողմը, որն ուղղակի կապված է մարդկային գործոնի հետ, բայց արմատներով խորանում է արդիականության օբյեկտիվ պրոցեսների մեջ:

Մյուս կողմը այն էական փոփոխություններն են, որ կրել են մոնոպոլիստական կապիտալն ու այն հասարակությունը, որտեղ նա տիրապետում է: Բացի այդ, երևան են եկել միանգամայն նոր գործոններ, որոնք վճռական նշանակություն են ստացել արդի համաշխարհային զարգացման համար՝ միջուկային սպառնալիքը, գիտության ու տեխնիկայի մեջ կատարված հեղաշրջման աննախադեպ սոցիալական և միջազգային հետևանքները, բոլորի համար ընդհանուր էկոլոգիական վտանգը, սկզբունքորեն այլ իրավիճակը ինֆորմացիայի և հաղորդակցության բոլոր ձևերի ոլորտում: Համապարփակ պրոբլեմների սրումը, դրանց լուծման ասպարեզում միջազգային համագործակցության անհրաժեշտության գիտակցումը՝ այդ ամենը գործում է խաղաղության ու զինաթափման օգտին: Շատ երկրների մարդկանց վրա շարունակում են հաստատուն հոգեբանական ներգործություն ունենալ ֆաշիզմի ահավոր փորձի և երկրորդ համաշխարհային պատերազմի հետևանքները:

Այդ ամենը փոխում է «պատերազմի կուսակցության» և «խաղաղության կուսակցության» հարաբերակցությունը մոնոպոլիստական կապիտալիզմի և նրա միջազգային քաղաքական վերնաշենքի շրջանակներում, Լենինի խոսքերով ասած, Արևմուտքում տիրապետող դասակարգի «կոպիտ բուրժուական, ագրեսիվ բուրժուա-



կան, հետադիմական բուրժուական» և «պացիֆիստական լագերի» հարաբերակցությունները: Մի խոսքով, միջազգային այն պայմանները, որոնցում մենք թևակոխել ենք մեր հեղափոխության նոր խոշորագույն փուլը, էապես տարբերվում են նրա նախորդ փուլերում եղածից:

Նոր մտածողությունը նոր իրողությունների ճիշտ ըմբռնումն է, որոնք վերլուծվել են մատերիալիստական դիալեկտիկայի մեթոդով: Դա նաև այնպիսի վերլուծության հետևանքներն են, որոնք համեմատվել են հեղափոխական լենինյան փորձի և մարքսիզմ-լենինիզմի հիմնական սկզբունքների հետ: Պետք է նաև ընդգծել, որ նոր մտածողությունը հենվում է իմպերիալիզմի լենինյան տեսության, Վ. Ի. Լենինի կողմից իմպերիալիզմի բնույթի հետազոտման վրա, որը երբեք «լավը» չի դառնա: Այդ հարցում մենք ոչ մի պատրանք չենք ունեցել և չունենք:

Նոր մտածողության կենտրոնական օղակը համամարդկային արժեքների նոր դերն է: Դրանց նշանակությունը մատնանշել են և Կ. Մարքսը, և Վ. Ի. Լենինը: Եվ դրանք սոսկ ընդհանուր նկատառումներ չէին, որ բխում էին նրանց ուսմունքի մարդասիրական էությունից: Ընդգծելով աշխարհում տեղի ունեցող ինտերնացիոնալացման պրոցեսների նշանակությունը, մեր մեծ ուսուցիչները բացահայտում էին համամարդկային արժեքների օբյեկտիվ հիմքը, դրանք դիալեկտիկորեն միավորելով սոցիալ-դասակարգային արժեքների հետ: Այժմ այդ ամենը դառնում է գործնական քաղաքականության առանցքային գիծը: Եվ քաղաքականության նկատմամբ նման պահանջը պայմանավորված է արդի դարաշրջանի ինչպես բացասամետ, այնպես էլ դրականամետ պրոցեսներով՝ մի կողմից մարդկային ցեղի բուն գոյության համար աննախադեպ վտանգների մեծացմամբ, մյուս կողմից՝ ներպետական և համաշխարհային քաղաքականության մեջ զանգվածների դերի և ընդհանուր դեմոկրատական գործոնի բազմապատկումով:

Իսկ դա պահանջում է նաև էականորեն այլ միջազգային հարաբերություններ: Հատկապես ինչպիսի՞ք: Դրանցում ո՞ր սկզբունքը պետք է լինի ելակետային ու անշեղ: Մենք նշել ենք այդ: Դրա մասին ասել ենք ի լուր ամենի և չենք դադարում կրկնել բոլորին՝ ԱՄՆ-ի պրեզիդենտից մինչև մեր բարեկամները՝ ազգային անկախության և սոցիալիզմի մարտիկները: Այդ սկզբունքը յուրաքանչյուր ժողովրդի, յուրաքանչյուր երկրի կողմից սոցիալական ու քաղաքական ազատ ընտրության ճանաչումն է: Նման հարցադրման մեջ ևս ուտոպիայի, պատրանքի ստվեր անգամ չկա: Մենք քաջ հասկանում ենք, որ ոչ դիվանագիտական սիրալիրություններով, ոչ էլ պրոպագանդայով հնարավոր չէ Արևմուտքին համոզել, որ այդ սկզբունքը ճանաչելը անհրաժեշտություն է:

Հասկանալի է, որ բնավ չի կարելի նվազեցնել մեր բարի կամքի, մեր միջազգային գործունեության նոր ոճի, հանուն այն նվազագույն վստահությանը հասնելու նպատակով բացահայտ և արդյունավետ երկխոսության մեր ձգտման նշանակությունը, որը հնարավոր է հասարակական հակադիր սիստեմների ներկայացուցիչների միջև, միջպետական հարաբերությունների գաղափարայնացումից մեր անկեղծորեն հրաժարվելու, հավասար հիմունքներով, առանց որևէ մեկի անվտանգությանը վնաս հասցնելու, փոխզիջումների դիմելու, մի խոսքով այն ամենի նշանակությունը, ինչը բնութագրում է սովետական արտաքին քաղաքականությունը վերակառուցման ժամանակաշրջանում:

Բայց իրենց ցանկացած ձևով, առանց արտաքին միջամտության ապրելու ժողովուրդների իրավունքը ճանաչելու գործում գլխավոր «լուսավորիչ» են դառնում (և հետզհետե ավելի շատ) արդի աշխարհի հենց այն իրողությունները, որոնց մասին խոսվեց վերը և որոնք արտացոլվում են մեր մտածողության մեջ: Ի դեպ, հենց այն պատճառով, որ այդ մտածողությունը ճիշտ է արտացոլում աշխարհը, մենք այն համարում ենք պիտանի ոչ միայն մեզ համար, այլև մնացած աշխարհի համար: Դրանք՝ այդ իրողությունները, յուրաքանչյուրին ստիպում են հաշվի նստել իրենց հետ, քանի որ վերջին հաշվով խնդրո առարկան մարդկության գոյատևումն է, քաղաքակրթության բուն գոյությունը:

Եվ սոցիալիզմի, դեմոկրատիայի ու առաջադիմության ուժերի կարևորագույն ֆունկցիան, ես կասեի, պատմական առաքելությունը հենց այն է, որ ընդլայնվեն ու ամրապնդվեն, նույնիսկ նաև ստեղծվեն նոր իրողություններ, որոնք անհաղթահարելի խոչընդոտ ստեղծեին ագրեսիայի ու ինտերվենցիայի ուժերի համար:

Մենք, Սովետական Միությունը, ստեղծում և ամրապնդում ենք այդ իրողությունները մեր վերակառուցմամբ: Ուզում եմ մեկ անգամ ևս ասել. մեր բոլոր ար-

տաքին քաղաքական նվաճումները և խաղաղության պահպանման բուն գործը արմատավորված են այստեղ՝ վերակառուցման հաջողությունների մեջ, մեր և ձեր աշխատանքում, ընկերներ: Բայց կարևոր է, որ մեր բոլոր մարդիկ լավ յուրացնեն նաև հակադարձ կապը. վերակառուցման հաջողությունը անհնար է առանց նոր մտածողության վրա հիմնված արտաքին քաղաքականության:

Ընկերնե՛ր: Ներքին ու արտաքին քաղաքական կողմերի այսպիսի դիալեկտիկական փոխկապակցությամբ են մեր առջև հառնում վերակառուցման գաղափարախոսական պրոբլեմները նրա նոր փուլում: Եվ դրանք նորից, բայց տասնապատկված ուժով, մեր ուշադրությունը հրավիրում են այն հարցի վրա, որը մեկ տարի առաջ այնքան սրությամբ դրվեց Կենտկոմի հունվարյան պլենումում՝ կադրերի հարցի վրա:

Կենդանի, դինամիկ, ակտիվորեն վերակառուցվող կազմակերպչական, քաղաքական և գաղափարախոսական գործունեության մեջ հիմա տեղ չպիտի ունենան Ծչեդրինի այն հերոսի նման մարդիկ, որն ասում էր. «Նոր գաղափարները չեմ հասկանում: Չեմ հասկանում նույնիսկ այն, թե ինչու պետք է դրանք հասկանալ»: Չարիք է, եթե այդպես է մտածում մեր ժամանակակիցը: Եվ երիցս վատ է, եթե նման տրամադրություններով վարակված է կուսակցության անդամը, ղեկավար կուսակցականը: Կրկին ու կրկին կասեմ. դեմոկրատիզմի օրինակ պետք է ծառայի կուսակցությունը, յուրաքանչյուր կոմունիստ, ինչ պաշտոն էլ որ նա զբաղեցնի: Առանց դրա դեմոկրատացման պրոցեսը առաջ չի շարժվի:

Կուսակցությունը վերակառուցումն սկսել է իրենից, իր կադրերից: ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումից հետո կուսակցության կադրային աշխատանքում քիչ բան չի արված: Այն գլխավոր չափանիշը, որով մենք ղեկավարվել ենք, վերակառուցմանը ցույց տրվող վերաբերմունքն է: Վերջերս ավարտվեցին վերակառուցման ղեկավարման վերաբերյալ ընտրովի մարմինների հաշվետվությունները բոլոր կուսկազմակերպություններում: Հաշվետվությունները ցույց տվեցին, որ կոմունիստների հիմնական մասը չի ուզում հաշտվել անգործության, անպատասխանատվության, իներտության, վերակառուցման նկատմամբ անտարբեր վերաբերմունքի հետ, չի հանդուրժում ճոռոմաբանություններին ու շատախոսներին: Ժողովների ընթացքում անբավարար ճանաչվեց ավելի քան 4800 կուսկոմիտեների և կուսբյուրոների աշխատանքը, փոխվեցին ընտրովի մարմինների ավելի քան 89 հազար անդամներ: Սա կուսակցության մեջ՝ վերակառուցման գործի համար կադրերի նկատմամբ ավելի մեծ խստապահանջության մթնոլորտի ստեղծման օրինաչափ արդյունքն է:

Մենք պետք է հետևողականորեն առաջ ընթանանք այդ ուղիով, հետևաբար նաև անդուլ կերպով սովորենք դեմոկրատիզմ, ինչպես որ դա պահանջում է վերակառուցման ժամանակը: Դժվար գործ է դեմոկրատիզմ սովորելը: Բայց մենք ունենք հուսալի կողմնորոշիչներ, այդպիսի ուսման հուսալի լենինյան մեթոդ:

Դա քննադատության և ինքնաքննադատության աներկյուղ զարգացումն է:

Դա մասսաների հորձանուտում, ամենահրատապ կենսական պրոբլեմների հորձանուտում լինելու մշտական ձգտումն է:

Դա աշխատավորների, հասարակության բոլոր խավերի տրամադրությունների, պահանջմունքների և կենսական շահերի կուտակումն է:

Դա, վերջապես, աշխատանքի լենինյան, գործարար ոճի ամենօրյա հաստատումն է, որի գլխավոր գիծը մասսաների վրա հենվելն է:

Եվ, իհարկե, դեմոկրատացումը պետք է տոգորի ամբողջ ներկուսակցական կյանքը՝ ընտրովի մարմինների դերի բարձրացման միջոցով, սկզբնական կուսակցական կազմակերպությունների մարտունակության վճռական ուժեղացման միջոցով:

Մենք պարտավոր ենք հիշել, որ մեր կուսակցության ղեկավար դերը ինչ-որ մեկի կողմից ի վերուստ և առհավետ չի տրված, այլ նվաճվել է կոմունիստների մի քանի սերունդների կողմից, սոցիալիզմի համար, աշխատավոր մարդկանց շահերի համար նրանց մղած անձնուրաց պայքարով: Եվ ներկայումս՝ ամեն օր և ամեն ժամ հանուն ժողովրդի, հանուն հայրենի երկրի կատարվող համառ աշխատանքով մենք պետք է հաստատենք և ամրապնդենք հասարակության հեղափոխական նորացման ավանգարդում լինելու մեր իրավունքը:

Վերջացնելով, կուզենայի նշել, ընկերներ, որ գրեթե երեք տարում արդեն քիչ բան չի արված, եթե մեր ներկա կյանքը համեմատելու լինենք այն բանի հետ, ինչ կար մինչև վերակառուցումն սկսվելը: Բայց դեռ շատ քիչ բան է արված, եթե համեմատելու լինենք այն բանի հետ, ինչ մենք ակնկալում ենք վերակառուցումից և ինչի



ընդունակ է մեր հասարակությունը: Սովետական հասարակության որակապես նոր վիճակի հասնելու ճանապարհին պետք է դժվարին շատ պրոբլեմներ լուծվեն:

Մենք գնում ենք դեպի XIX համամիութենական կուսկոնֆերանս: Մենք պետք է հիմնավորապես վերլուծենք վերակառուցման պայմաններում երեք տարվա և առանձնապես ձեռնարկության մասին օրենքի գործողության առաջին ամիսների կյանքի ու աշխատանքի սկզբունքային արդյունքները: Որոշենք, թե ինչ բնագծեր են դուրս եկել և դուրս գալիս մեր կուսակցությունն ու հասարակությունը, ծավալելով դեմոկրատացման պրոցեսները, սկսելով արմատական տնտեսական ռեֆորմը: Կոնկրետ որոշումներ ընդունենք երկրի զարգացման նոր փուլում մեր քաղաքական սիստեմի կատարելագործման մասին և կուսակցության՝ որպես քաղաքական ավանգարդի, դերի մասին: Դրանով իսկ նոր հզոր ազդակ կտրվի մեր հեղափոխական վերակառուցմանը:

Եվ այսպես, առջևում մեծ լարված աշխատանք կա: Հսկայական է վերջին ժամանակներս կուսակցության և հասարակության մեջ ծագող նորարարական գաղափարների ու առաջարկությունների ծավալը: Մեծ է ու մշտապես ավելանում է բազմաթիվ կոնկրետ հարցերի զանգվածը:

Ինչպես լուծել դրանք: Այս ուղղությամբ մենք պետք է աշխատենք համատեղ, քայլ առ քայլ առաջ ընթանալով նախատեսված ուղիով: Որոնենք ստեղծագործաբար, համարձակորեն ու միաժամանակ գործարար, պատասխանատու կերպով: Մի խոսքով, լենինաբար, բոլշևիկորեն:

(Ճառը լսվեց մեծ ուշադրությամբ և ուղեկցվում էր երկարատև ծափահարություններով):

---

## ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումի 1988 թվականի փետրվարի 18-ի որոշումը պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ ելույթի մասին

*ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը միահամուռ հավանություն է տալիս ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովի «Հեղափոխական վերակառուցմանը՝ նորացման գաղափարախոսություն» ճառում բովանդակված դրույթներին ու հետևություններին։ Ելույթում տրված է վերակառուցման նոր փուլի խոր վերլուծությունը, շարադրված է դրա գաղափարախոսական ապահովման ծրագիրը։*

*Պլենումն ընդգծում է, որ կուսակցական կազմակերպությունների ամբողջ գաղափարախոսական գործունեությունը պետք է ենթարկված լինի աշխատավորների, աշխատավորական կոլեկտիվների մոբիլիզացմանը վերակառուցման գլխավոր խնդիրների լուծման՝ արմատական տնտեսական ռեֆորմի իրականացման, ամբողջ հասարակական կյանքի դեմոկրատացման, մատաղ սերնդի, աշխատավոր զանգվածների կրթության ու դաստիարակության համար։*

*Պլենումը անհրաժեշտ է համարում գաղափարախոսական, քաղդաստիարակչական աշխատանքի ձևերի ու մեթոդների վճռական նորացումը, սովետական հասարակության հեղափոխական նորացման նպատակներին համապատասխան սոցիալական արդարության հաստատումը։*

*Պլենումը հավանություն է տալիս արտաքին քաղաքականության հարցերի վերաբերյալ Մ. Ս. Գորբաչովի ճառում բովանդակված դրույթներին ու գնահատականներին և նշում ՍՄԿԿ-ի և սովետական պետության միջազգային գործունեության հումանիստական բովանդակության ու նպատակների լայն պարզաբանման կարևորությունը, գործունեություն, որը նպատակամղված է միջազգային հարաբերություններում իրավահավասարության և համընդհանուր անվտանգության սկզբունքների հաստատմանը։*

*Պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյին, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, քաղկոմներին, շրջկոմներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին հանձնարարում է ուշադրություն հրավիրել այն բանի վրա, որ անհրաժեշտ է ակտիվին, բոլոր կոմունիստներին կտրուկ շրջել դեպի վերակառուցման գաղափարական բովանդակություն, մասսաների հետ ՍՄԿԿ-ի կապերի ամրապնդում, հասնել սովետական, արհմիութենական, կոմերիտական, տնտեսական մարմինների, գաղափարախոսական միջոցների, բոլոր կադրերի սերտ փոխգործակցության էկոնոմիկայի, սոցիալական քաղաքականության և հոգևոր կյանքի ոլորտում։ Քաղաքական աշխատանքի բոլոր միջոցներով անհրաժեշտ է հասնել այն բանին, որ վերակառուցումը դառնա յուրաքանչյուր կոմունիստի կուսակցական գործը, յուրաքանչյուր քաղաքացու հայրենասիրական պարտքը։*

---

# ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումի որոշումը

## ՄԻՋՆԱԿԱՐԳ ԵՎ ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ԴՊՐՈՑԻ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ԸՆԹԱՑՔԻ ԵՎ ԴՐԱ ԻՐԱԿԱՆԱՑՄԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը ընդգծում է, որ հանրակրթական ու պրոֆեսիոնալ դպրոցի, բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության վերակառուցումը հատուկ տեղ է գրավում ներկա պատմական փուլում կուսակցության կողմից լուծվող խնդիրների կոմպլեքսի մեջ: Իրականացվող վերափոխումների նպատակն է ապահովել երիտասարդության ուսուցման ու դաստիարակության, կադրերի պատրաստման ու որակավորման բարձրացման նոր որակ, դրանով իսկ անհրաժեշտ պայմաններ ստեղծել սովետական հասարակության սոցիալ-տնտեսական ու հոգևոր առաջադիմության արագացման, ՍՄԿԿ XXVII համագումարի առաջադրած խնդիրների լուծման համար:

### I.

1. ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը նշում է, որ ժողովրդական կրթության համակարգի վերակառուցման ընթացքում ուժեղացել է կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների, հասարակական կազմակերպությունների ուշադրությունը միջնակարգ ու բարձրագույն դպրոցի պրոբլեմների նկատմամբ: Որոշ դրական փոփոխություններ են կատարվում կրթության բովանդակության, սովորողների աշխատանքային դաստիարակության մեջ: Զարգանում է լայն պրոֆիլի բանվորների պատրաստումը պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության համակարգում: Խորանում է բարձրագույն դպրոցի, գիտության և արտադրության ուժերի միավորման պրոցեսը: Ավելացել են հատկացումները ժողովրդական կրթության համար:

2. Դրա հետ մեկտեղ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն գտնում է, որ միջնակարգ ու բարձրագույն դպրոցում կատարվող վերափոխումների խորությունն ու տեմպերը չեն համապատասխանում վերակառուցման նոր փուլում հասարակության պահանջմունքներին: Այնպիսի կարևոր ուղղություններում, ինչպիսիք են ուսուցման ու դաստիարակության մեթոդների կատարելագործումը, տեխնիկական հագեցվածությունը, ուսումնադաստիարակչական պրոցեսի կառավարումը, մանկավարժի պատրաստումը, տեղաշարժերն առայժմ աննշան են: Հարկ եղած տարածումը չի գտնում առաջավոր մանկավարժական փորձը:

Մինչև ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումը մշակված ռեֆորմի հիմնադրույթները չէին ամրապնդված ժողովրդական կրթության համակարգի դեմոկրատացման միջոցառումներով: Դրա իրականացման գործի մեջ հարկ եղածին պես չեն ներգրավվել մանկավարժները, ծնողները, հասարակայնության լայն շրջանները, աշխատավորական կոլեկտիվները: Ռեֆորմի ընթացքում ուսումնական հաստատությունների գործունեությունը կողմնորոշվում էր դեպի էքստենսիվորեն զարգացող ժողովրդական տնտեսության աշխատանքային ռեսուրսների հարցում պահանջմունքների բավարարում: Պրոբլեմներ և բարդություններ էին առաջացել թե՛ դպրոցում և թե՛ պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության համակարգում պրոֆեսիոնալ պատրաստումը հանրակրթականի հետ համատեղելու պրակտիկայում:

Անբավարար է ռեֆորմի անցկացման կազմակերպչական աշխատանքը: ՍՍՀՄ լուսավորության մինիստրությունը, ՍՍՀՄ պրոֆտեխկրթության պետական կոմիտեն, ինչպես նաև ժողովրդական կրթության տեղական մարմինները պասիվություն, դանդաղաշարժություն են դրսևորում կրթության զարգացման հասունացած պրոբլեմների լուծման գործում: Ուսուցիչներին ցույց տրվող օգնությունը հաճախ հանգում է ընդհանուր ցուցումների, մանրախնդիր կանոնակարգման: Բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական դպրոցի վերակառուցման աշխատանքը թույլ է ծավալում ՍՍՀՄ բուհմինը: Ժողովրդական կրթության հարցերի լուծմանը անհրաժեշտ ուշադրություն չեն նվիրում տեղական կուսակցական կոմիտեները, սովետական և տնտեսական մարմինները: Դանդաղ է հաղթահարվում ճյուղային շատ մինիստրությունների ու գերատեսչությունների կողմից կրթության, ուսումնական հաստատությունների կարիքներին ցույց տրվող մնացորդային մոտեցումը:

3. ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն կուսակցական, պետական մարմինների, հասարակական կազմակերպությունների առջև խնդիր է դնում բեկում ապահովել ժողովրդական կրթության վերակառուցման մեջ՝ կուսակցության XXVII համագումարի որոշումներին, ՍՄԿԿ ծրագրի դրույթներին համապատասխան: Կրթությունը որպես տնտեսական ու սոցիալական առաջադիմության վճռական գործոններից մեկը, մարդկության կուտակած հոգևոր հարստությունների պահպանման, զարգացման և սերունդե-սերունդ փոխանցման հզոր միջոց, պետք է լինի առաջնայիններից մեկը պետական քաղաքականության մեջ:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը ելնում է այն բանից, որ կրթության ամբողջ համակարգի վերակառուցման վճռական դեմքը ուսուցիչն է, դասատուն: Նրա գիտելիքներից, մանկավարժական հմտությունից, ակտիվ, համոզված, խանդավառ դիրքորոշումից է վճռականորեն կախված նախատեսված վերափոխումների հաջողությունը: Կուսակցական և սովետական մարմինների պարտքն է արմատապես, վճռաբար, առանց քաշքշուկի ու տատանումների փոխել վերաբերմունքը ուսուցչի նկատմամբ, նրան ազատել մանրախնդիր խնամակալությունից, բեռնաթափել դասատվական աշխատանքին խորթ պարտականություններից, պաշտպանել ստեղծագործական, նորարարական որոնումը, առավելագույն չափով խնայել նրա ժամանակը գլխավորի համար՝ սովորողների ուսուցման ու դաստիարակության համար:

## II

1. ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը նպատակահարմար է գտնում փոփոխություններ մտցնել կրթության ռեֆորմի հիմնադրույթների մեջ, նկատի ունենալով.

Երիտասարդության ընդհանուր միջնակարգ կրթության՝ որպես բազայինի, կոնցեպցիայի ձևավորումն ու իրականացումը՝ որակյալ բանվորական ու մասնագիտական կադրերի հետագա պատրաստման, անհատի բազմակողմ զարգացման համար.

Հանրակրթական, պրոֆեսիոնալ և բարձրագույն դպրոցի մասշտաբային տեխնիկական վերահագեցումը, տասներեքերորդ հնգամյակից սկսած ժողովրդական կրթության զարգացման պլանավորման մեջ գիտականորեն հիմնավորված նորմատիվների կիրառումը.

Ժողովրդական կրթության բնագավառում գերատեսչական միջնորմերի վերացումը և միասնական պետական քաղաքականության գործնական վարումը, բոլոր տեսակի ուսումնական հաստատությունների, գիտական և արտադրական կոլեկտիվների սերտ փոխգործակցությունը:

Ժողովրդական կրթության ըստ ամենայնի դեմոկրատացումը, ուսումնական հաստատությունների կոլեկտիվների ինքնուրույնության և պատասխանատվության բարձրացումը.

Մանկավարժական կադրերի պատրաստման ու վերապատրաստման համակարգի վերափոխումը, ժողովրդական կրթության բնագավառում գիտահետազոտական աշխատանքի արմատական բարելավումը:

Պրոֆեսիոնալ և միջնակարգ մասնագիտական դպրոցում բանվորների ու մասնագետների պատրաստումը զարգացնել առավելապես միջնակարգ կրթության բազայի վրա, պահպանելով երիտասարդության հնարավորությունը պրոֆեսիոնալ կրթություն ստանալու ոչ լրիվ միջնակարգ դպրոցն ավարտելուց հետո: Հանրակրթական դպրոցում բանվորական մասնագիտությունների ուսուցումը իրականացնել սովորողների ու ծնողների ցանկությամբ՝ անհրաժեշտ պայմանների ստեղծման համեմատ:



2. Երիտասարդության ընդհանուր միջնակարգ կրթությանն անցնելը արմատապես փոխել է հանրակրթական դպրոցի սոցիալական դերը հասարակության մեջ, շեշտակիորեն բարձրացրել է նրա պատասխանատվությունը ուսուցման ու դաստիարակության արդյունավետության համար, պահանջ առաջադրել ժամանակակից բովանդակությամբ հարստացնելու սոցիալիստական դպրոցի՝ որպես միասնական, աշխատանքային, պոլիտեխնիկական դպրոցի լենինյան սկզբունքները:

ՍՄԿԿ Կենտկոմը սկզբունքային նշանակություն է տալիս այն բանին, որ մեր դպրոցը, լինելով միասնական, իր բոլոր շրջանավարտներին տա լիարժեք միջնակարգ կրթություն և նրանց առջև բացի հավասար հնարավորություններ: Կրթության նպատակների ու խնդիրների միասնությունը պետք է օրգանապես զուգակցվի դպրոցների բազմազանության, ուսումնական պլանների ու ծրագրերի ճկունության հետ, հենվի առաջավոր մանկավարժական պրակտիկայի, ուսուցման ու դաստիարակության նորարարական մեթոդների վրա:

Պետք է առաջնակարգ ուշադրություն նվիրել սովորողների անհատական ընդունակությունների զարգացմանը, ընդլայնել տարբերակված ուսուցումը՝ նրանց պահանջմունքներին և հակումներին համապատասխան: Զարգացնել տարբեր առարկաների խորացված ուսումնասիրությամբ մասնագիտացված դպրոցների ու դասարանների ցանցը:

Դպրոցը կոչված է նպաստելու արտադրողական աշխատանքի մեջ, հասարակական աշխատանքային հարաբերությունների համակարգի մեջ սովորողների ակտիվ ներգրավմանը, նրանց տալու բազմապիսի աշխատանքային ունակություններ: Սովորողների աշխատանքը պետք է լինի նպատակահարմար, կապված՝ կյանքի ռեալ պահանջմունքների հետ, օգտակար՝ հասարակության և ընտանիքի համար, պետք է դառնա ճանաչողության ու բերկրանքի աղբյուր:

Անհրաժեշտ է հետևողականորեն խորացնել դպրոցի պոլիտեխնիկացումը, հիմնական պատկերացումներ տալ նոր տեխնոլոգիաների, ժամանակակից տնտեսական, իրավական, էկոլոգիական գիտելիքների մասին, ապահովել միջնակարգ կրթության մակարդակի մշտական համապատասխանությունը գիտատեխնիկական և հոգևոր առաջադիմության պահանջներին: Պետք է արագացնել երիտասարդության մասնագիտական կողմնորոշման ճյուղավորված պետական ծառայության ստեղծումը, որի կարևոր օղակը պետք է դառնա հանրակրթական դպրոցը:

Դպրոցում հանրակրթական, աշխատանքային, ընդհանուր կուլտուրական և բարոյական պատրաստումը կոչված է երիտասարդներին օգնելու, որ նրանք գիտակցված կերպով ընտրեն մասնագիտություն, աշխատանքի ոլորտ, կրթությունը շարունակելու ուղիներ՝ հաշվի առնելով հասարակության պահանջմունքները, գործուն մասնակցություն ունենան հասարակական-քաղաքական կյանքին:

3. Սոցիալ-տնտեսական զարգացման արագացման կարևորագույն պայմանն են բանվորական կադրերի պրոֆեսիոնալ և հանրակրթական պատրաստման բարձր որակի ապահովումը, բանվոր դասակարգի երիտասարդ համալրման քաղաքական և քաղաքացիական գիտակցության աճը:

Անհրաժեշտ է այս կարևոր խնդրի լուծման վրա բևեռել պրոֆեսիոնալ տեխնիկական կրթության համակարգի, ժողովրդական տնտեսության ճյուղերի ուսումնաարտադրական ցանցի ուշադրությունը: Հարկավոր է այսուհետև էլ զարգացնել բազային ձեռնարկություններին առընթեր պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանները, ինչպես նաև միջճյուղային մասնագիտացված ուսումնարանները, որոնք կարողանան պատրաստել բարդ և ինտեգրացված մասնագիտությունների որակյալ բանվորներ:

Ըստ ամենայնի ընդլայնել միավորումների ու ձեռնարկությունների հետ կնքող պայմանագրերով բանվորական կադրերի պատրաստման ու վերապատրաստման պրակտիկան: Ուժեղացնել պետական վերահսկողությունը պրոֆեսիոնալ ուսուցման բոլոր ձևերում բանվորական կադրերի պատրաստման որակի նկատմամբ:

4. Կուսակցական, պետական և տնտեսական մարմինները, հասարակական կազմակերպությունները պարտավոր են մեծացնել ջանքերը բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական դպրոցի վերակառուցման գործում: ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը ընդգծում է, որ վերափոխումների նախատեսված ծրագիրը պ[illegible]ք է իրականացվի կոմպլեքսայնորեն: Մասնագետների պատրաստման որակի ա[illegible]տական բարձրացման, ժողովրդական տնտեսության մեջ նրանց ռացիոնալ կիրառ[illegible] գործման, գիտական հետազոտությունների հետագա զարգացման խնդիրներ[illegible]

Լայնամասշտաբ միջոցառումներ իրականացնել ուսումնական հաստատությունների տեխնիկական վերահագեցման նպատակով: Նախատեսել ուսուցման ժամանակակից, համաշխարհային մակարդակին համապատասխանող տեխնիկական միջոցների, ուսումնական և ուսումնագիտական սարքավորումների, սարքերի, մանկական խաղալիքների մշակում և դրանց արտադրության ընդլայնում ինչպես ժողովրդական կրթության համակարգում, այնպես էլ ժողովրդական տնտեսության ճյուղերում: Արագացնել ուսումնադաստիարակչական հաստատությունների ժամանակակից նախագծերի մշակումը և ապահովել սեղմ ժամկետներում այդ նախագծերով դրանց շինարարությանն անցնելը:

Անհրաժեշտ է արմատապես բարելավել դասագրքերի և ուսումնական ձեռնարկների, մանկավարժական գրականության նախապատրաստման ու հրատարակման գործը: Լրիվ չափով ապահովել դրանց նկատմամբ սովորողների, ուսուցիչների, ծնողների պահանջմունքները, դասագրքերի լրացուցիչ թողարկում կազմակերպել ազատ վաճառքի համար:

## IV.

1. ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը կուսակցական, սովետական, հասարակական կազմակերպությունների, մանկավարժական կոլեկտիվների կարևորագույն խնդիր է համարում սովորող երիտասարդության կոմունիստական դաստիարակության ուժեղացումը, վերակառուցման ոգով նրա գիտակցության ձևավորումը: Անանց խնդիր է երիտասարդության մեջ դիալեկտիկական մտածողություն մշակելը, ուսանողների և սովորողների մեջ «ամբողջական հեղափոխական աշխարհայեցողություն» (Վ. Ի. Լենին) ձևավորելը, հենվելով հասարակության կյանքի բոլոր ոլորտների նորացման ուղղությամբ կուսակցության տեսական և պրակտիկ գործունեության միասնության վրա: Խորապես և մատչելիորեն ցույց տալ կուսակցության XXVII համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումների ու նյութերի, ընկ. Մ. Ս. Գորբաչովի «Հոկտեմբերը և վերակառուցումը. հեղափոխությունը շարունակվում է» զեկուցման, ներկա պլենումում նրա արտասանած ճառի բովանդակած գաղափարների հարստությունը: Համոզչորեն ցույց տալ սերունդների ժառանգորդությունը, պարզաբանել երկրում տեղի ունեցող վերափոխումների անխզելի կապը կուսակցության և ժողովրդի հերոսական մեծագործությունների հետ, պատասխանատվության զգացումով բացահայտել մեր ժողովրդի մեծ անցյալը, երիտասարդների մեջ դաստիարակել սոցիալիզմի մարտիկների պատմական փորձը բազմապատկելու ձգտում:

Հասարակագիտական առարկաների դասավանդման ամբողջ պրակտիկան պետք է մշակի ինքնուրույն դատողությունների ընդունակություն, սովորողներին օգնի գիտակցաբար յուրացնելու կյանքի դիալեկտիկան արտացոլող գիտական հետևությունները: Երիտասարդության մեջ դաստիարակել բարձր գաղափարայնություն, գիտական-մատերիալիստական հայացքներ, հասարակական երևույթները հստակ դասակարգային դիրքերից գնահատելու կարողություն:

2. Դպրոցը կոչված է իր ամբողջ գործունեությամբ արմատավորելու աշխատանքային ապրելակերպ, բարձրացնելու սովորողների և ուսանողների գլխավոր աշխատանքի՝ ուսման վարկն ու դաստիարակչական դերը: Հարկավոր է յուրաքանչյուր ուսումնական հաստատությունում հաստատել համառ ուսումնական աշխատանքի, գիտելիքներին տիրապետելու նկատմամբ շահագրգիռ, ստեղծագործական, պատասխանատու վերաբերմունքի մթնոլորտ: Պահանջկոտության բարձրացման հետ մեկտեղ ամեն կերպ ուժեղացնել գերազանց ուսման խթանները, խրախուսել երիտասարդության մասնակցությունը գիտական և գիտատեխնիկական ստեղծագործությանը, բազմազան դարձնել այդ աշխատանքի ձևերը: ՍՄԿԿ Կենտկոմը անթույլատրելի է համարում ուսման ժամանակամիջոցում ուսանողներին և սովորողներին ուսումնական պրոցեսի հետ չկապված զանազան աշխատանքների և միջոցառումների համար շեղելը:

3. Հարկավոր է պրակտիկայում երիտասարդությանը սովորեցնել ապրել և գործել խորացող դեմոկրատիայի պայմաններում: Այդ նպատակով ուսումնական հաստատություններում բոլոր պայմաններն ստեղծել բացախոսության և հրապարակայնության, ուսուցիչների և սովորողների, պրոֆեսորների և ուսանողների փոխադարձ հարգանքի ու համագործակցության համար, սովորողների և ուսանողների մեջ պատվաստել ինքնուրույնություն, լայն ասպարեզ բացել նրանց օգտակար նախաձեռնության և ստեղծագործության համար: Դաստիարակել ընդհանուր քաղաքական և ի-



րավական կուլտուրա, սոցիալիստական դեմոկրատիզմի կուլտուրա, հասնել երիտասարդության կողմից ՍՍՀՄ քաղաքացու սահմանադրական իրավունքների և պարտականությունների խոր ըմբռնման: Կազմակերպել իրավաբանական պարտուս որպես բնակչության բոլոր խավերը, կենտրոնում և տեղերում բոլոր կադրերն ընդգրկող միասնական համապետական ծրագիր:

4. Պահանջվում է էապես ուժեղացնել պատանեկության հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակությունը: Մանկուց պատվաստել սովետական հայրենիքի ավանդույթներին և արժեքներին, մեր բազմազգ երկրի մեծ պատմությանը մասնակից լինելու զգացում, հայրենիքի հավատարիմ պաշտպանները լինելու սրբազան պարտքի գիտակցում: Ուսումնական հաստատություններում ամբողջ մթնոլորտը պետք է տոգորված լինի ինտերնացիոնալիզմի, սովետական ժողովուրդների բարեկամության ու եղբայրության ոգով: Հարկավոր է ակտիվորեն զարգացնել ազգային-ռուսերեն երկլեզվությունը, արմատապես բարելավել ՍՍՀՄ ժողովուրդների լեզուների, ռուսաց լեզվի ուսումնասիրումն ու դասավանդումը, որը սովետական մարդիկ կամովին ընդունել են որպես ազգամիջյան հաղորդակցման միջոց, դպրոցներում ընդլայնել ռուսաց և մայրենի լեզուներով համատեղ ուսուցանելու պրակտիկան: Խրախուսել մյուս ազգությունների երիտասարդության կողմից տեղական ազգային լեզվի ուսումնասիրումը: Ուսուցման լեզվի հարցում անթույլատրելի են որևէ արտոնություն կամ սահմանափակում, վարչարարություն:

5. Ուժեղացնել ուշադրությունը մատաղ սերնդի կոմունիստական բարոյականության ձևավորման, աթեիստական դաստիարակության նկատմամբ: Հարկավոր է երիտասարդության մեջ դաստիարակել հոգևոր վեհ պահանջմունքներ և գեղագիտական ճաշակներ, ֆիզիկական կատարելագործման պահանջմունք:

Երեխաների, աղջիկների և պատանիների գեղագիտական դաստիարակությունն ուժեղացնելու, նրանց մեջ սնահոգության, բուրժուական «մասսայական կուլտուրայի» ազդեցության նկատմամբ կայուն իմունիտետ պատվաստելու նպատակով հարկավոր է նրանց հիմնավորապես ծանոթացնել համաշխարհային և հայրենական մշակույթի լավագույն նվաճումներին, ըստ ամենայնի զարգացնել գեղարվեստական ստեղծագործությունը. հմտորեն և հաստատակամորեն պրոպագանդել իրոք ժողովրդական արվեստը: Այդ հոգսը դպրոցի հետ միասին պետք է ստանձնեն կոմերիտմիությունը, արհմիությունները, ստեղծագործական միությունները, ՍՍՀՄ կուլտուրայի մինիստրությունը, ՍՍՀՄ պետկինոն, ՍՍՀՄ պետհեռուստառադիոն:

Ֆիզիկական կուլտուրայի և սպորտի մեջ երիտասարդությանը լայնորեն ներգրավելու համար անկախ գերատեսչական պատկանելությունից ամրապնդել և ավելի արդյունավետ օգտագործել ուսումնական հաստատությունների, մարզական ընկերությունների, ձեռնարկությունների առկա բազան, բարելավել ֆիզկուլտուրային կադրերի պատրաստումը, այդ նպատակով միավորելով ժողովրդական կրթության մարմինների, ՍՍՀՄ սպորտպետկոմի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի ջանքերը:

ՍՄԿԿ Կենտկոմը անհետաձգելի խնդիրներից մեկը համարում է արտաուսումնական ժամերին, բնակության վայրում դաստիարակչական աշխատանքի ըստ ամենայնի հարստացումը: Այստեղ գլխավորն է յուրաքանչյուր երեխայի, դեռահասի, երիտասարդի ներգրավել հետաքրքրություններին համապատասխանող պարապմունքների մեջ, նրանց ազատ ժամանակը լցնել տեխնիկական և գեղարվեստական ստեղծագործությամբ, սպորտով, տուրիզմով: Մշտական ուշադրություն նվիրել երիտասարդության ինքնագործ միավորումներին, աջակցել նրանց գործունեության հանրօգուտ ուղղվածությանը, պատանեկության առողջ հետաքրքրությունների և պահանջմունքների բավարարմանը:

6. Կուսակցական, սովետական, հասարակական կազմակերպությունները, աշխատավորական կոլեկտիվները, ամբողջ հասարակությունը կոչված են ուժեղացնելու հոգատարությունը կայուն, բարոյապես առողջ, հոգևոր առումով հարուստ ընտանիքի կազմավորման նկատմամբ, կնոջ և մոր նկատմամբ, մանկության՝ որպես երկրի ապագայի նկատմամբ: Հարկավոր է մեծացնել ծնողների պատասխանատվությունը երեխաների դաստիարակության համար, նրանց կյանքի և աշխատանքի նախապատրաստելու համար: Խորացնել ընտանիքի, դպրոցի, աշխատավորական կոլեկտիվների փոխգործողությունը:

Առանձնահատուկ ուշադրություն է պահանջում նախադպրոցական դաստիարակության համակարգը որպես անհատի կազմավորման կարևորագույն աստիճան, որը մեծապես կանխորոշում է նրա հետագա զարգացումը:

7. ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, քաղկոմներին, շրջկոմներին պարտավորեցնում է վճռականորեն բարձրացնել երեխաների և երիտասարդության կրթության ու դաստիարակության ոլորտի քաղաքական ղեկավարման մակարդակը, խորամուխ լինել ուսումնական հաստատությունների աշխատանքի բովանդակությանը, բանիմացորեն, գործարար կերպով լուծել ծագող պրոբլեմները: Միջնակարգ և բարձրագույն դպրոցի վերակառուցման իրականացման գործում, ուսուցման և դաստիարակման որակի բարձրացման համար ուսուցչադասախոսական կորպուսը, ինչպես նաև սովորողների և ուսանողների ջանքերի միավորման գործում պետք է ուժեղացվի ուսումնական հաստատությունների սկզբնական կուսակցական կազմակերպությունների դերը, հոգածություն դրսևորվի դրանց ամրապնդման նկատմամբ: Կուսակցության շրջանային և քաղաքային կոմիտեները, նկատի ունենալով դպրոցների, ուսումնարանների, տեխնիկումների կուսակցական կազմակերպությունների սակավանդամությունը, պարտավոր են դրանց կոլեկտիվների կյանքում կուսակցական ազդեցության աճն ապահովել ոչ միայն ուսուցիչ-կուսակցականների, այլև կոմունիստ ծնողների, բազային ձեռնարկությունների կուսկազմակերպությունների, կուսակցության շրջկոմների և քաղկոմների աշխատողների ուժերով:

Հարկավոր է արմատապես բարելավել ուսուցչական կադրերի պատրաստությունը, մանկավարժական ուսումնական հաստատություններում սովորելու համար ընտրել երիտասարդության լավագույն ներկայացուցիչներին, որոնք ունեն երեխաների հետ աշխատելու հակում, դրանում են տեսնում իրենց կոչումը: Ուսումնական հաստատությունների ղեկավարների ընտրությունների ընդլայնվող պրակտիկան, մանկավարժական կադրերի ատեստավորումը մեծացնում են կուսակցական կոմիտեների պատասխանատվությունը մանկավարժական աշխատանքում արժանավոր աշխատողների առաջ քաշելու համար, որոնք օժտված են քաղաքական, գործարար և բարոյական անհրաժեշտ հատկանիշներով:

Կուսակցության ամբողջ գաղափարախոսական աշխատանքը պետք է ակտիվորեն նպաստի միջնակարգ և բարձրագույն դպրոցի հաջող վերակառուցմանը, անընդհատ կրթության համակարգի՝ որպես սովետական մարդու անհատականության կազմավորման ամբողջական պրոցեսի կարևորագույն օղակի ծավալմանը:

8. Ժողովրդի կրթության և կուլտուրայի բարձրացումը սովետական իշխանության, կենտրոնում և տեղերում նրա մարմինների առաջնագույն հոգածության առարկան է: Պլենումն ընդգծում է, որ ժողովրդական դեպուտատների սովետները, հենվելով լայն հասարակայնության վրա, պարտավոր են հանդես գալ որպես երիտասարդության համընդհանուր միջնակարգ կրթությունը, նրա մասնագիտական կողմնորոշումն ու պատրաստությունը, աշխատանքի տեղավորումն ապահովելու ուսումնական հաստատությունների, նախադպրոցական և արտադպրոցական հիմնարկների նյութական բազան ամրապնդելու և զարգացնելու, դրանք կադրերով համալրելու, մանկավարժների աշխատանքի, կենցաղի, հանգստի պայմանները բարելավելու ամբողջ աշխատանքի կազմակերպիչներ:

9. Կրթության վերակառուցումը, երիտասարդության մեջ գիտելիքների պրոֆեսիոնալ վարպետության ձգտման զարգացումը, նրա մեջ կոմունիստական բարոյականության, հայրենիքին ծառայելու քաղաքացիական վսեմ պարտքի ձևավորումը պետք է իր գործունեության կարևորագույն ուղղությունը համարի լենինյան կոմերիտմիությունը: Կոմերիտական կազմակերպությունների աշխատանքը պետք է նպատակաուղղել երիտասարդության ստեղծագործական տվյալներին, գործի նկատմամբ պատասխանատու վերաբերմունքի ըստ ամենայնի զարգացմանը, նրա բազմապիսի հետաքրքրությունների ու պահանջմունքների բավարարմանը՝ ընդդեմ սպառողականության և խնամառուականության:

Հարկավոր է նորացնել պիոներական աշխատանքի բովանդակությունը, այն դարձնել երեխաների համար գրավիչ և նրանց զարգացման համար օգտակար: Հասարակայնությանը, գրականության և արվեստի գործիչներին կոչ անել պիոներական կոլեկտիվների հետ ակտիվ աշխատանքի: Բարձրացնել պիոներջոկատավարների գաղափարական և պրոֆեսիոնալ պատրաստության մակարդակը:

10. Ուսումնական հաստատությունների լիարյուն կյանքը, երիտասարդության ուսուցման և դաստիարակության բազմապիսի խնդիրների հաջող լուծումը աներևակայելի են առանց լայն հասարակայնության, նրա բոլոր կազմակերպությունների շահագրգիռ վերաբերմունքի: Ուսուցիչների, դասախոսների, դաստիարակների, սովորողների և ուսանողների աշխատանքի, կենցաղի և հանգստի պայմանների բարելավումը արհմիությունների առաջնագույն հոգսն է: Ամենայն աջակցության է արժանի գեղարվեստական ստեղծագործության, առողջարարական-մարզական աշխատանքի նյութական բազան ամրապնդելու նրանց նախաձեռնությունը: Կրթության և դաստիարակության ոլորտում, որտեղ ապահովվում է սովետական ժողովրդի սերունդների անընդմեջ կապը, որտեղ լուծվում են հասարակության բարոյաքաղաքական միասնության ամրապնդման բազմաթիվ խնդիրներ, մեծ հնարավորություններ կան պատերազմի և աշխատանքի վետերանների կազմակերպությունների, «Գիտելիք» համամիութենական ընկերության, գիտական և ինժեներային ընկերությունների միության, ինչպես նաև ռացիոնալիզատորների և գյուտարարների ընկերությունների, ԴՕՍԱԱՖ-ի, ստեղծագործական միությունների, մշակույթի սովետական ֆոնդի և ուրիշների ուժերի գործադրման համար: Այս ամբողջ բազմակողմանի աշխատանքում առանձնահատուկ դեր պետք է խաղան Վ. Ի. Լենինի անվան սովետական մանկական ֆոնդը և կանանց խորհուրդները:

11. Ժողովրդական կրթության ռեֆորմի խորացման կապակցությամբ պատասխանատու խնդիրներ են դրվում մասսայական ինֆորմացիայի միջոցների վրա: Հեռուստատեսությունն ու ռադիոն, մամուլը կոչված են բանիմացորեն և հավաստիորեն լուսաբանելու դպրոցի կյանքը, կրթության և դաստիարակության բարդ պրոցեսը: Կարևոր է մեծացնել մասսայական ինֆորմացիայի միջոցների դերը կրթության վերակառուցման մեջ առկա դրական տեղաշարժերի և դժվարությունների բացահայտման գործում, մանկավարժի պրոֆեսիայի, նրա ոչ դյուրին, պատվաբեր աշխատանքի վարկը բարձրացնելու, ժողովրդական կրթության ոլորտի կազմակերպման ու կառավարման մեջ պահպանողականությունը, դոգմատիզմը արմատախիլ անելու գործում:

* * *

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը ընդգծում է, որ ժողովրդական կրթությունը, մատաղ սերունդների ուսուցման և դաստիարակման գործը պետք է մշտապես լինեն կուսակցության, հասարակության ուշադրության կենտրոնում, և աներկբա վստահություն է հայտնում, որ կուսակցական կոմիտեները, պետական մարմինները, հասարակական կազմակերպությունները, սովետական ուսուցչությունը, պրոֆեսորներն ու դասատուները, դասախոսները, աշխատավորական կոլեկտիվները ամեն ինչ կանեն կուսակցության XXVII համագումարի ծրագրային հիմնադրույթների հետևողական իրականացումն ապահովելու, ժողովրդական կրթության համակարգը որակապես նոր մակարդակի բարձրացնելու համար:

---

# ԴԻՄՈՒՄ

## ԱԴՐԲԵՋԱՆԻ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻՆ, ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻՆ

Թանկագին ընկերներ:

Դիմում եմ ձեզ Լեռնային Ղարաբաղում և նրա շուրջ ստեղծված իրադարձությունների կապակցությամբ:

Բարձրացվել է այդ ինքնավար մարզը Ադրբեջանական ՍՍՀ-ից Հայկական ՍՍՀ-ի կազմի մեջ անցնելու հարցը: Դրան հաղորդվել է սրություն ու դրամատիկություն, որոնք հանգեցրել են լարվածության և անգամ օրենքի շրջանակներից դուրս եկող գործողությունների:

Անկեղծ ասեմ. ՍՄԿԿ Կենտկոմն անհանգստացած է իրադարձությունների նման զարգացումից, այն հղի է ամենալուրջ հետևանքներով:

Մենք կողմնակից չենք այն բանի, որ խուսափենք տարբեր գաղափարների ու առաջարկությունների բացահայտ քննարկումից, բայց դա հարկավոր է անել հանգիստ, դեմոկրատական պրոցեսի և օրինականության շրջանակներում, թույլ չտալով, որ նվազագույն իսկ չափով վնասվի մեր ժողովուրդների ինտերնացիոնալիստական համախմբվածությունը: Չի կարելի ժողովրդի ճակատագրի անչափ լուրջ հարցերը ենթարկել տարերքի և հույզերի կամքին:

Շատ կարևոր է սեփական հոգսերը գնահատել ոչ միայն տեղական պայմանների առումով, այլև հաշվի առնելով երկրում ծավալված հեղափոխական նորացման պրոցեսները:

Այո, մեր կյանքում չլուծված պրոբլեմներ կան, բայց երկպառակությունների և միմյանց նկատմամբ ժողովուրդների անվստահության բորբոքումը միայն կխանգարի դրանց լուծմանը: Դա կհակասեր մեր սոցիալիստական սկզբունքներին և մեր բարոյականությանը, սովետական մարդկանց բարեկամության ու եղբայրության ավանդույթներին:

Մենք ապրում ենք բազմազգ երկրում, ավելին, բոլոր հանրապետությունները, բոլոր մարզերը, անգամ քաղաքներն ու ավանները մեզանում բազմազգ են: Եվ լենինյան ազգային քաղաքականության իմաստն այն է, որ յուրաքանչյուր մարդ, յուրաքանչյուր ազգ կարողանա ազատորեն զարգանալ, որ յուրաքանչյուր ժողովուրդ կարողանա բավարարել իր պահանջմունքները հասարակական-քաղաքական կյանքի բոլոր ոլորտներում, մայրենի լեզվում ու մշակույթում, սովորույթներում ու հավատալիքներում:

Սոցիալիստական ինտերնացիոնալիզմը մեր հսկայական ուժի աղբյուրն է: Ժողովուրդների իսկական եղբայրություն ու միաբանություն՝ ահա սա է մեր ուղին:

Լավ է ասել հայ մեծ բանաստեղծ Ե. Չարենցը, դիմելով Սովետական Ադրբեջանին.

Հանուն հնում կրած անհուն տառապանքի,
Հանուն այսօր կոփվող կյանքի լիահնչյուն,
Հանուն անմահ մեր դաշինքի և հաշտ կյանքի,
Եղբայրական ժողովրդին ողջու՜յն, ողջու՜յն...

Եվ դրան որքան լավ են արձագանքում ադրբեջանական ժողովրդի մեծ զավակ Ս. Վուրղունի խոսքերը. «Մենք ապրում ենք ոչ թե հարևանությամբ, այլ մեկմեկու մեջ: Ժողովուրդները վաղեմի ժամանակներից օջախի կրակ և հանապազօրյա հաց են փոխ առել իրարից»:

Ոչ մի մայր չի համաձայնի, որ իր զավակներին ազգային գժտություններ սպառնան բարեկամության, հավասարության, փոխօգնության ամրակուռ կապերի՝ սոցիալիզմի հիրավի մեծ նվաճման փոխարեն:

Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզում քիչ թերություններ ու դըժվարություններ չեն կուտակվել: Մարզի նոր ղեկավարությունը պետք է շտապ միջոցներ ձեռնարկի վիճակը շտկելու համար: ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն այս առումով հստակ հանձնարարականներ է տվել և անմիջականորեն կհետևի դրանց կատարմանը:

Այժմ ամենագլխավորն է՝ կենտրոնանալ ստեղծված իրավիճակի հաղթահարման, Ադրբեջանում և Հայաստանում կուտակված կոնկրետ տնտեսական, սոցիալական, էկոլոգիական և այլ պրոբլեմների լուծման վրա՝ մեր ամբողջ երկրում իրականացվող վերակառուցման ու նորացման քաղաքականության ոգով:

Հարկավոր է թանկ գնահատել և ըստ ամենայնի ամրապնդել ադրբեջանական ու հայ ժողովուրդների բարեկամության ավանդույթները, որոնք ձեռք են բերվել սովետական իշխանության տարիներին: Միայն այսպիսի մոտեցումն է համապատասխանում ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների իսկական շահերին:

Դուք գիտեք, որ մտադրություն կա մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեի հատուկ պլենում նվիրել ազգային հարաբերությունների զարգացմանը: Քննարկվելու են այդ կարևորագույն հասարակական ոլորտի բազմաթիվ հարցեր և լենինյան ազգային քաղաքականության սկզբունքային նվաճումների բազայի վրա նշվելու են սոցիալական, տնտեսական, մշակութային և այլ պրոբլեմների կոնկրետ լուծման ուղիները:

Մենք բոլորս միասին սովետական քաղաքացիներ ենք, մենք ունենք ընդհանուր պատմություն, ընդհանուր հաղթանակներ, հետևում ենք թողել մեծ աշխատանք, դառնություններ ու կորուստներ: Մենք զբաղված ենք վերակառուցման մեծ գործով, որի հաջողությունից է կախված սոցիալիզմի, մեր հայրենիքի, մեզանից յուրաքանչյուրի ճակատագիրը:

Ես դիմում եմ ձեզ, ընկերներ, ձեր գիտակցականությանն ու պատասխանատվությանը, ձեր ողջամտությանը: Այս փորձության ժամին էլ պաշտպանենք մեր սովետական ինտերնացիոնալիզմը, այն բանի անսասան հավատը, որ միայն մեր բոլոր ժողովուրդների համերաշխ ընտանիքում մենք կարող ենք ապահովել մեր հասարակության առաջադիմությունը, նրա բոլոր քաղաքացիների բարօրությունը:

Ես ձեզ կոչ եմ անում հանդես բերել քաղաքացիական հասունություն ու համբերություն, վերադառնալ նորմալ կյանքի ու աշխատանքի, պահպանել հասարակական կարգը:

Ժամն է ողջախոհության ու սթափ վճիռների:

**Մ. ԳՈՐԲԱՉՈՎ**

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1988 թվականի փետրվարի 26-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության կենտրոնական կոմիտեի պլենում:

Պլենումը բացեց ՀԿԿ կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը:

Պլենումում հրապարակվեց ՍՄԿԿ կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովի դիմումը Ադրբեջանի ու Հայաստանի աշխատավորներին, ժողովուրդներին:

Դիմումի տեքստը հրապարակեց ՍՄԿԿ կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, ՍՄԿԿ կենտկոմի քարտուղար Վ. Ի. Դոլգիխը:

Պլենումում հանդես եկան Հայաստանի կոմկուսի կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը, Հայաստանի կոմկուսի կենտկոմի բյուրոյի անդամ, «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման ապարատավարների բրիգադավար Ս. Մ. Պետրոսյանը, Աբովյանի շրջանի Կոտայքի կոլտնտեսության նախագահ Ջ. Զաքարյանը, ՀԿԿ Երևանի քաղկոմի առաջին քարտուղար Լ. Գ. Սահակյանը, ՀԿԿ Ախուրյանի շրջկոմի առաջին քարտուղար Մ. Լ. Մկրտչյանը, Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի դիրեկտոր Ֆ. Հ. Պետրոսյանը, ՀԿԿ Ամասիայի շրջկոմի առաջին քարտուղար Ի. Ա. Բադիրովը, ՀԼԿԵՄ կենտկոմի առաջին քարտուղար Հ. Հ. Հակոբյանը, Հայաստանի կոմկուսի կենտկոմի երկրորդ քարտուղար Յու. Պ. Կոչետկովը, Հայկական ՍՍՀ պետհեռուստառադիոյի նախագահ Ս. Կ. Պողոսյանը, ՀԿԿ Օրջոնիկիձեի շրջկոմի առաջին քարտուղար Ջ. Ի. Հասրաթյանը, ՀԿԿ Մաշտոցի շրջկոմի առաջին քարտուղար Ա. Մ. Գեղամյանը, «Հայաստանի աշխատավորուհի» ամսագրի գլխավոր խմբագիր Ա. Գ. Չիլինգարյանը, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին առընթեր հայ եկեղեցու գործերի խորհրդի նախագահ Ս. Հ. Վարդանյանը, տեղական արդյունաբերության և կոմունալ-կենցաղային ձեռնարկությունների բանվորների արհմիության հանրապետական կոմիտեի նախագահ Մ. Խ. Գրիգորյանը, թատերական գործիչների միության վարչության նախագահ Հ. Ն. Ղափլանյանը, Հայկական ՍՍՀ լուսավորության մինիստր Ս. Տ. Հախումյանը, արտասահմանյան երկրների հետ բարեկամության և մշակութային կապի հայկական ընկերության նախագահության նախագահ Ն. Լ. Հակոբյանը, Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ, ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյանը, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահի տեղակալ Վ. Բ. Ղալումյանը, հին ձեռագրերի ինստիտուտի՝ Մատենադարանի դիրեկտոր Ս. Ս. Արևշատյանը, Երևանի պետական համալսարանի ռեկտոր Ս. Ա. Համբարձումյանը, «Ռյա թազա» թերթի խմբագիր Մ. Ա. Մստոյանը, ՀԿԿ Անիի շրջկոմի առաջին քարտուղար Ս. Ե. Նազարյանը, Երևանի ալյումինի գործարանի կուսկոմիտեի քարտուղար Վ. Է. Մնացականյանը, Հայաստանի կինեմատոգրաֆիստների միության վարչության նախագահ Ս. Խ. Իսրայելյանը, ՍՍՀՄ ներքին գործերի մինիստրի առաջին տեղակալ Վ. Պ. Տրուշինը:

Հայաստանի կոմկուսի կենտկոմի պլենումը լիովին և ամբողջովին հավանություն տվեց Ադրբեջանի ու Հայաստանի աշխատավորներին, ժողովուրդներին ուղղված՝ ՍՄԿԿ կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովի դիմումին և ընդունեց որոշում:

Կենտկոմի պլենումի աշխատանքին մասնակցում էր ՍՄԿԿ կենտկոմի քարտուղար Ա. Ի. Լուկյանովը:

---

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ 1988 Թ. ՓԵՏՐՎԱՐԻ 26-Ի ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՄԱՆ ՇԱՐԱԴՐԱՆՔԸ

Հայաստանի կոմկուսի կենտկոմի պլենումի որոշման մեջ նշված է, որ պլենումը խորին երախտագիտության զգացումով է ընկալում ՍՄԿԿ կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովի դիմումը Ադրբեջանի ու Հայաստանի աշխատավորներին, ժողովուրդներին: Պլենումը այդ դիմումը համարում է ՍՍՀ մեծ Միության յուրաքանչյուր ժողովրդի ճակատագրի, սոցիալիզմի ճակատագրի նկատմամբ մեր կուսակցության հսկայական հոգատարության դրսևորում:

Պլենումը ամբողջովին ու լիովին պաշտպանեց ընկեր Մ. Ս. Գորբաչովի դիմումի պարունակած գնահատականներն ու հետևությունները, նրա ընդգրկած խնդիրը ըստ ամենայնի ամրապնդելու սովետական ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամությունը, որը եղել է, կա և կմնա մեր հարազատ պետության ամրության հիմքը:

Պլենումը հանրապետության բոլոր աշխատավորներին, յուրաքանչյուր տղամարդու և կնոջ, յուրաքանչյուր պատանու և աղջկա, յուրաքանչյուր բանվորի ու կոլտնտեսականի, յուրաքանչյուր մասնագետի, գիտնականի, ստեղծագործական աշխատողի, յուրաքանչյուր ուսանողի ու սովորողի կոչ արեց ամբողջ սրտով արձագանքել Ադրբեջանի ու Հայաստանի աշխատավորներին, ժողովուրդներին ընկեր Մ. Ս. Գորբաչովի հղած դիմումին, հանդես բերել ողջամտություն, հասունություն ու պատասխանատվություն: Հարկավոր է ազգային-տերիտորիալ բարդ հարցի քննարկումն ու լուծումը հույզերի և կրքերի հունից փոխադրել հանգստության ու սոցիալիստական դեմոկրատիայի հուն:

Պլենումը դիմեց Հայաստանի աշխատավորներին, ջերմորեն կոչ անելով ամրապնդել ՍՍՀՄ ժողովուրդների, հայ ու ադրբեջանական ժողովուրդների

բարեկամությունը: Նա Հայաստանի բանվորներին, կոլտնտեսականներին, ծառայողներին ու սովորողներին, բոլոր քաղաքացիներին կոչ է անում վերադառնալ նորմալ աշխատանքի և ուսման, ըստ արժանվույն կատարել յուրաքանչյուրի վրա դրված պարտականությունները:

Որոշման մեջ նշված է, որ պլենումը հույս ունի, որ Լեռնային Ղարաբաղի պրոբլեմը կուսումնասիրվի և քննության կառնվի այլ հարցերի կոմպլեքսում, որոնք կդառնան ազգային քաղաքականության պրոբլեմներին նվիրվելիք ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի քննարկման առարկա և ՍՄԿԿ Կենտկոմին խնդրում է այս կապակցությամբ ստեղծել համապատասխան հանձնաժողով:

Պլենումը ժողովրդական դեպուտատների բոլոր սովետների գործկոմների և վարչական մարմինների ղեկավարներին պարտավորեցրեց անհրաժեշտության դեպքում օգտագործել հանրապետության տարածքում օրինականության ու հասարակական կարգի խստագույն պահպանումն ապահովելու իրենց լիազորությունները:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը վստահություն հայտնեց, որ կուսակցական ակտիվը, կոմունիստները ամեն ինչ կանեն հանրապետությունում իրադրությունը առողջացնելու, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովի դիմումից բխող խնդիրները անվերապահորեն կատարելու համար:

---

# ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅՈՒՆ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄՈՒՄ

*Մարտի 9-ին ՍՄԿԿ Կենտկոմում կայացած խորհրդակցությունում լսվեցին Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ք. Մ. Բագիրովի և Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանի հաղորդումները Լեռնային Ղարաբաղի իրադարձությունների առնչությամբ այդ հանրապետություններում առաջացող իրադրության մասին:*

*Ինչպես նշվեց խորհրդակցությունում, վերոհիշյալ հանրապետություններում իրադրությունը նորմալ հուն է մտնում, թեև դեռ ունի իր բարդությունները: Աշխատում են ձեռնարկությունները և ուսումնական հաստատությունները: Լրացվում է արդյունաբերական արտադրանքի արտադրության մեջ բաց թողնվածը: Պահպանվում է հասարակական կարգը: Շարունակվում է 1988 թվականի փետրվարի 28-ին Սումգայիթ քաղաքում տեղի ունեցած հանցագործությունների հետաքննությունը:*

*Հանրապետությունների բնակչության ջերմ պաշտպանությանն արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովի դիմումը Ադրբեջանի և Հայաստանի աշխատավորներին, ժողովուրդներին: Բանվորները, կոլտնտեսականները, ուսանողները միանգամայն ժամանակին են համարում մեր կուսակցության ղեկավարի այն հայտարարությունը, որ ազգամիջյան հարաբերությունների բարդ հարցերը կարելի է լուծել դեմոկրատական պրոցեսի և օրինականության շրջանակներում միայն, թույլ չտալով, որ նվազագույն իսկ չափով վնաս հասցվի սովետական ժողովուրդների ինտերնացիոնալիստական համախմբվածությանը: Չի կարելի ժողովրդի ճակատագրի լրջագույն հարցերը լուծել՝ տեղի տալով այս կամ այն տարերքին և հույզին:*

*Ելույթ ունենալով խորհրդակցությունում, Մ. Ս. Գորբաչովն ընդգծեց, որ այժմ գլխավորը ազգային քաղաքականության լենինյան սկզբունքների հետևողական իրականացումն է, ադրբեջանական և հայ ժողովուրդների, սովետական Անդրկովկասի, ամբողջ երկրի ժողովուրդների բարեկամության ամրապնդումը: Իրավիճակի ամեն մի սրում կարող է մեզ հետ շպրտել ժողովուրդների բարեկամության այն մեծ նվաճումներից, որ մեր երկիրը ձեռք է բերել իր գոյության յոթ տասնամյակների ընթացքում:*

*Քաղբյուրոյի որոշմամբ Կենտկոմի քարտուղարությանը հանձնարարված է կազմակերպել Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզում կուտակված պրոբլեմների, մարզի շուրջ ազգամիջյան հարաբերությունների սրման պատճառների խոր ու համակողմանի ուսումնասիրումը, համապատասխան առաջարկությունների մշակումը և հենց որ դրանք պատրաստ լինեն, ներկայացնել ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ կառավարության քննարկմանը:*

*Միաժամանակ Ադրբեջանի և Հայաստանի կոմկուսների Կենտրոնական կոմիտեներին հանձնարարական տրվեց մշակել աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության բարելավման երկարաժամկետ միջոցառումների կոմպլեքս, համաձայնեցված լուծել այդ հանրապետությունների սոցիալ-տնտեսական, կենցաղային, գիտական, մշակութային, լեզվական և փոխհարաբերությունների մյուս կողմերին առնչվող օպերատիվ հարցերը՝ ինտերնացիոնալիզմի լենինյան սկզբունքների հիման վրա:*

*Եզրափակելով խորհրդակցությունը, Մ. Ս. Գորբաչովը մեկ անգամ ևս ընդգծեց, որ վերակառուցման հարցերից ոչ մեկը այսօր չի կարող լուծվել՝ առանց հաշվի առնելու դրա ներգործությունը ազգային հարաբերությունների վրա, որ վերակառուցման առաջընթացը պահանջում է Սովետական Միության բոլոր աշխատավորների, բոլոր ազգությունների ներկայացուցիչների համերաշխ, համառ և համախմբված աշխատանք:*

*Խորհրդակցությունում հարցերի քննարկմանը մասնակցեցին ընկ. ընկ. Ա. Ա. Գրոմիկոն, Ե. Կ. Լիգաչովը, Ա. Ն. Յակովլևը, Ն. Ի. Ռիժկովը, Պ. Ն. Դեմիչևը, Վ. Ի. Դոլգիխը, Գ. Պ. Ռազումովսկին, Ա. Ի. Լուկյանովը, ինչպես նաև Ադրբեջանական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ Հ. Ն. Սեիդովը, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ Հ. Մ. Ոսկանյանը և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ Ֆ. Տ. Սարգսյանը:*

---

# ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅՈՒՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄՈՒՄ

*Հայաստանի կոմկուսի Կենտկոմում տեղի ունեցավ խորհրդակցություն, որին մասնակցեցին կուսակցության քաղկոմների և շրջկոմների առաջին քարտուղարներ, մինիստրներ, պետական կոմիտեների նախագահներ, արդյունաբերական ձեռնարկությունների, բուհերի, գիտական հիմնարկների, ստեղծագործական միությունների ղեկավարներ և կուսկազմակերպությունների քարտուղարներ, արհմիութենական և կոմերիտական մարմինների աշխատողներ, մասսայական ինֆորմացիայի միջոցների ներկայացուցիչներ:*

*Քննարկվեցին ՍՄԿԿ Կենտկոմի խորհրդակցության արդյունքները, որը լսել էր Լեռնային Ղարաբաղի իրադարձությունների առնչությամբ Ադրբեջանական ՍՍՀ-ում և Հայկական ՍՍՀ-ում առաջացող իրադրության մասին հաղորդումներ և հանրապետական կուսակցական կազմակերպության անհետաձգելի խնդիրները:*

*Խորհրդակցությունում հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը:*

*Նշվեց, որ ՍՄԿԿ Կենտկոմի խորհրդակցությունում հարցի քննարկումը ադրբեջանական և հայ ժողովուրդների ճակատագրի, Սովետական Անդրկովկասի, ամբողջ երկրի ժողովուրդների բարեկամության ամրապնդման նկատմամբ կուսակցության հսկայական ուշադրության վառ դրսևորումն է: Դա տրամաբանական շարունակությունն ու կոնկրետացումն է այն կարևոր դրույթների և հանձնարարականների, որ բովանդակում է Մ. Ս. Գորբաչովի դիմումը Ադրբեջանի և Հայաստանի աշխատավորներին, ժողովուրդներին, որն ամենուրեք ջերմ պաշտպանության արժանացավ:*

*Մեծ գոհունակությամբ ընդունվեց ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարությանը քաղբյուրոյի տված հանձնարարությունը՝ կազմակերպել Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզում կուտակված պրոբլեմների, մարզի շուրջ ազգամիջյան հարաբերությունների սրման պատճառների խոր ու համակողմանի ուսումնասիրումը, համապատասխան առաջարկությունների մշակումը և դրանց պատրաստ լինելուն պես ներկայացնել ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ կառավարության քննարկմանը:*

*Ընդգծվեց աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության բարելավման երկարաժամկետ միջոցառումների մշակման, Ադրբեջանի և Հայաստանի սոցիալ-տնտեսական, կենցաղային, գիտական, մշակութային, լեզվական և փոխհարաբերությունների մյուս կողմերին առնչվող օպերատիվ հարցերը՝ ինտերնացիոնալիզմի լենինյան սկզբունքների հիման վրա համաձայնեցված կերպով լուծելու անհրաժեշտությունը:*

*Կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններին հանձնարարված է աշխատավորական կոլեկտիվներում ամբողջ աշխատանքը կազմակերպել Մ. Ս. Գորբաչովի դիմումի, ՍՄԿԿ Կենտկոմի խորհրդակցության նյութերի հիման վրա, բոլոր միջոցները ձեռնարկել հանրապետության իրադրության հետագա առողջացման նպատակով: Վստահություն հայտնվեց, որ Սովետական Հայաստանի աշխատավորները քաղաքական բարձր գիտակցություն կդրսևորեն, խոր ըմբռնումով կվերաբերվեն Մ. Ս. Գորբաչովի դիմումի այն կարևոր դրույթին, որ կուսակցությունը հանդես է գալիս տարբեր գաղափարների ու առաջարկությունների բացահայտ քննարկումից չխուսափելու օգտին, բայց դա հարկավոր է անել հանգիստ, դեմոկրատական պրոցեսի և օրինականության շրջանակներում, թույլ չտալով, որ նվազագույն իսկ չափով վնասվի սովետական ժողովուրդների ինտերնացիոնալիստական համախմբվածությունը:*

---



# ՀԱՂԹԱՀԱՐՈՒՄ ԵՆՔ ԻՆԵՐՏՈՒԹՅՈՒՆԸ

**Օ. ՀԱԿՈԲՅԱՆ**

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ համակողմանիորեն նախապատրաստվում են՝ արժանավայել գործերով դիմավորելու համամիութենական կուսակցական կոնֆերանսը, նրանք ծանրութեթև են անում իրենց արածն ու անելիքները, ուղիներ որոնում, միջոցառումներ մշակում վերակառուցման ղեկավարման աշխատանքը կատարելագործելու, դրա արդյունավետությունը բարձրացնելու համար: Կուսակցական առաջիկա կոնֆերանսի առնչությամբ բարձրանում է կուսակցական մարմինների և սկզբնական կազմակերպությունների պատասխանատվությունը՝ արածը սկզբունքային դիրքերից գնահատելու, վերակառուցման ճանապարհի խոչընդոտները վերացնելու, աշխատանքի ոճի մեջ արմատական վերափոխումներ անելու համար: Այսօր այդ խնդիրները դրված են կուսակցության Արարատի շրջկոմի և շատ սկզբնական կազմակերպությունների գործունեության հիմքում:

ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումը սահմանեց սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու ստրատեգիական ուղղությունները, որոնք իրենց տեսական հիմնավորումն ստացան ՍՄԿԿ XXVII համագումարում և Կենտկոմի հետհամագումարյան պլենումներում:

Հասարակության նորացումը, էկոնոմիկայի արմատական վերակառուցումը հիրավի բախտորոշ նշանակություն ունեն երկրի համար: Խոշոր ձեռնարկումները, ինչ խոսք, պահանջում են հստակ մշակված գործողությունների ծրագիր, որտեղ ամենաէական ստորոգելիներից մեկը մարդկային գործոնի ըստ ամենայնի ակտիվացումն է: Առանց մարդկանց հոգեբանության, մտածողության, տրամադրության մեջ որոշակի փոփոխությունների, առանց նրանց գործելակերպի մեջ դեռևս առկա իներտության հաղթահարման անհնար է հաջողության հասնել որակապես նոր խնդիրների լուծման գործում: Իսկ դրա համար պետք է արմատապես բարելավել կուսակցական-կազմակերպական, գաղափարաքաղաքական, դաստիարակչական ողջ աշխատանքը, նոր չափանիշներով գնահատել արվածն ու անելիքները:

Այս առումով որոշակի քայլեր են արվում նաև մեր շրջանում: Հաղթահարելով աշխատանքի կաբինետային ոճը՝ շրջկոմը, նրա բյուրոյի անդամները, բաժինների վարիչներն ու հրահանգիչները այժմ ավելի հաճախ են լինում կուսկազմակերպություններում, կոլեկտիվներում, հետաքրքրվում նրանց գործերով ու հոգսերով, անհրաժեշտ օգնություն ցույց տալիս:

Վերակառուցման առաջին արդյունքները, ինչ խոսք, բարերար ազդեցություն են գործում աշխատավորների տրամադրության վրա, հավատով լցնում կուսակցության առաջադրած կուրսի նկատմամբ, քաղաքական և բարոյական նոր լիցք հաղորդում նրանց: Ծավալելով սոցիալիստական գործարար մրցություն՝ գյուղի աշխատավորները հնգամյակի առաջին երկու տարում կատարեցին հացահատիկի, բանջարեղենի, կարտոֆիլի, բոստանային կուլտուրաների, ինչպես նաև մսի, կաթի, բրդի, ձվի արտադրության և վաճառքի պլանները: Արդյունաբերական 26 ձեռնարկու-

---

ՀԱԿՈԲՅԱՆ ՕԹԱՐԻ ՋԱՆԻԲԵԿԻ— *ՀԿԿ Արարատի շրջկոմի առաջին քարտուղար:*

թյուններում անցած տարի պլանից ավելի թողարկվել է երկու միլիոն ռուբլու արտադրանք: Լուրջ քայլեր են արվում սոցիալական ոլորտի խնդիրները լուծելու, այդ կարևորագույն տեղամասում արմատական բեկում մտցնելու համար: Բավական է ասել, որ 1986—1987 թթ. շահագործման են հանձնվել 1496 աշակերտական տեղով դպրոցական շենքեր՝ Արարատ քաղաքում, Արարատ և Խալիսա գյուղերում, 300 տեղանոց մշակույթի տուն՝ Գոռավանում, 680 ընդհանուր տեղով՝ երեք մսուր-մանկապարտեզ Սևակավանում, Սովետաշեն և Արարատ գյուղերում, Արարատ քաղաքում, ինը գյուղերում՝ կենցաղի տներ: Բնակելի շինարարության համար նախատեսված կապիտալ ներդրումների ծավալը, 1986 թ. համեմատությամբ, անցած տարի աճեց 3,2 անգամ, շահագործման հանձնվեց ավելի քան 37.116 **քմ** բնակելի մակերես, 1985 թ. 7.080 **քմ**-ի դիմաց: Սոցիալական կոնկրետ ծրագրերի մշակումը և դրանց հետևողական իրականացումը, շինարարության տեմպերի արագացումը ռեալ նախադրյալներ են ստեղծել՝ մինչև տասներեքերորդ հնգամյակի վերջը հիմնականում լուծելու շրջանի համար կենսական նշանակություն ունեցող հարցերից մեկը՝ բնակարանային պրոբլեմը:

Էկոնոմիկայի ոլորտում այս ձեռքբերումները, սակայն, ամենևին հիմք չեն տալիս ուշադրությունը թուլացնելու այն մեծ ու փոքր թերությունների նկատմամբ, որոնք շարունակում են տեղ գտնել շրջանի ժողովրդական տնտեսության գրեթե բոլոր բնագավառներում: Ռեալ գնահատականն այն է, որ տնտեսական մեխանիզմի վերափոխման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման գործում դեռևս լուծման կարոտ բազմաթիվ պրոբլեմներ կան:

Արդի պայմաններում, երբ երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման կուսակցության ստրատեգիական կուրսի իրականացումը պահանջում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում արմատապես վերակառուցել տնտեսավարման մեխանիզմը, բոլոր մակարդակներում էկոնոմիկայի կառավարման վարչական մեթոդներից վճռական անցում կատարել դեպի տնտեսականը, անհամեմատ բարձրանում է տնտեսագիտական այնպիսի լծակների դերը, ինչպիսիք են պլանավորման ռեսուրսանորմատիվային մեթոդը, ինքնաֆինանսավորումը, կապալը՝ իր բազմաթիվ դրսևորումներով և այլն: Սակայն, ինչպես ցույց է տալիս գործերի վիճակը, վերակառուցման մեխանիզմում դրսևորվող իներտությունը, մտածողության ստերեոտիպը, ինքնուրույնության, սոցիալիստական ձեռներեցության պակասը լրջորեն խոչընդոտում են կուսակցության մշակած բարեփոխումների ծրագրի իրականացմանը: Քիչ չեն դեպքերը, երբ փորձում են վերակառուցմանը ձեռնամուխ լինել սովորական մոտեցումներով, այլ կերպ ասած, մարդը ձգտում է ընթանալ նոր ճանապարհով, բայց հին ու մերժելի միջոցներով:

Այս առնչությամբ կցանկանայի անդրադառնալ թեկուզ հենց այսպիսի մի պրոբլեմի: Ներկայումս բազմաթիվ դժվարություններ կան կապիտալ շինարարության, մասնավորապես, գյուղական շինարարության գործում: Գաղտնիք չէ, որ տարիներ շարունակ ինչպես հանրապետությունում, այնպես էլ մեզ մոտ չեն կատարվում կամ մեծ ճիգերի գնով են կատարվում կապիտալ շինարարության պլանները: Բայց արդյոք մենք ստեղծված իրավիճակից դուրս գալու համար օգտագործու՞մ ենք բոլոր ռեզերվները: Շրջանի տնտեսություններից շատերը ներկայումս ունեն զգալի ազատ ֆինանսական միջոցներ և պահանջվող աշխատուժ՝ սեփական ուժերով պարզ տիպի գյուղատնտեսական կամ կուլտուր-կենցաղային նշանակության օբյեկտների շինարարություն կատարելու համար, կան նաև նման կառույցների նախագծանախահաշվային փաստաթղթեր: Սակայն ինչու՞ մենք չենք կառուցում, ինչու՞ չենք թեթևացնում գլխավոր կապալառուների առանց այն էլ ծանր բեռը՝ հնարավորություն տալով կոլտնտեսություններին տնտեսական եղանակով կառուցելու այն ամենը, ինչի կարիքն այսօր, իրոք, զգացվում է: Կարծում եմ, հիմնական խոչընդոտը մեր իներտությունն է, համարձակ և հիմնավորված վճիռներ կայացնելուց խուսափելը: Սկսած պլանավորող և շինանյութեր մատակարարող հանրապետական կազմակերպություններից մինչև տեղական մարմինները գրեթե ոչ ոք լրջորեն չի մտահոգվում նշված պրոբլեմի լուծմամբ:

Մեզ մեծ հոգս է պատճառում Արարատի ցեմենտի-շիֆերի կոմբինատը: Տարիներ շարունակ այստեղ գործերի վիճակը բարվոք չի եղել, պլանները մեծ ճիգերի գնով են կատարվել: Փոխվել են դիրեկտորները, սակայն վիճակը չի շտկվել: Ինչ խոսք, եղել են նաև օբյեկտիվ պատճառներ: Անցած տարվա մարտին կուսշրջկոմի պլենումը քննարկեց կոմբինատի կուսկոմիտեի հաշվետվությունը՝ գիտա-



տեխնիկական առաջընթացի արագացման նպատակով տարվող աշխատանքի մասին: Հարցի նախապատրաստման ընթացքում կատարված մանրազնին ուսումնասիրություններն ու վերլուծությունները և ապա նաև քննարկումը ցույց տվեցին, որ տարիներ շարունակ կոմբինատում մտածել են միայն մի կերպ պլանները կատարելու մասին՝ մոռանալով այնպիսի կարևոր հարցեր, ինչպիսիք են արտադրության տեխնիկական վերազինումը, սոցիալական ծրագրերի, էկոլոգիական խնդիրների իրականացումը:

Կուսկոմիտեի, կոմունիստների, կոմբինատի ղեկավարության ոչ բավարար ակտիվությունը, նորի նկատմամբ անընկալությունը, անձեռնհասությունը կոլեկտիվին կանգնեցրել են ծանր կացության առջև: 1984—87 թթ. կոմբինատում փոխվել է չորս դիրեկտոր: Նոմենկլատուրային 175 աշխատողներից բարձրագույն կրթություն ունեն ընդամենը 84-ը: Չնայած դրան, 1981—86 թթ. տարբեր պատճառներով աշխատանքից ազատվել են բարձրագույն կրթությամբ 43 մասնագետներ: Ուշադրությունից դուրս է մնացել ցեմենտի արտադրության տեխնոլոգիական նոր գծի համար բանվորական և ինժեներատեխնիկական կադրերի պատրաստման հարցը: Լուրջ թերություններ կան սոցիալական զարգացման ոլորտում: Արտադրամասերի մեծ մասը զուրկ է աշխատանքի և կենցաղի տարրական պայմաններից: Բազմաթիվ թերություններ կան ցեմենտագործների սպասարկման գործում: Ոչինչ չի արվել ձեռնարկությանը կից օժանդակ տնտեսություն հիմնելու համար: Պլենումում իրավամբ քննադատվեցին պետագրոշինը, շինանյութերի արդյունաբերության մինիստրությունը և համապատասխան գիտահետազոտական ինստիտուտները՝ կոմբինատի տեխնիկական վերազինման, ինչպես նաև էկոլոգիական խնդիրների իրականացման նկատմամբ ցուցաբերած անհետևողականության համար:

Վեր հանելով կոմբինատում տեղ գտած թերություններն ու բացթողումները, պարզելով և գնահատելով իրավիճակն ու եղած հնարավորությունները՝ պլենումը կոնկրետ որոշում ընդունեց կարճ ժամկետում վերացնել դրանք, արագացնել տեխնիկական վերազինման աշխատանքները, արմատապես բարելավել կուսկոմիտեի գործունեությունը, ուժեղացնել կուսակցական ազդեցությունն ու հսկողությունը վերակառուցման նկատմամբ: Որոշման կատարումը գտնվում է շրջկոմի մշտական վերահսկողության տակ, և դրական արդյունքն արդեն նկատելի է. որոշակիորեն ամրապնդվել է արտադրական և աշխատանքային կարգապահությունը, լուծվում են սոցիալական հարցերը, ավարտվել են ազբոխողովակների արտադրամասի վերակառուցման աշխատանքները, շարունակվում է շիֆերի արտադրամասի տեխնիկական վերազինումը:

Դրական տեղաշարժերը հույս են ներշնչում, որ կոմբինատը հաջողությամբ կլուծի տասներկուերորդ հնգամյակում իր առջև ծառացած սոցիալ-տնտեսական խնդիրները: Այնուհանդերձ, այսօր մեզ դեռ չի գոհացնում կոմբինատում տիրող վիճակը: Ձեռնարկության ղեկավարությանը, կուսկոմիտեին չի հաջողվել լիովին թոթափել հին մտածողության և գործելակերպի բեռը, գործել համարձակ և նորովի: Ընթացիկ արտադրական հարցերով տարվելը, աշխատավորներին հուզող սոցիալական կարևոր խնդիրների նկատմամբ մնացորդային մոտեցում ցուցաբերելը շարունակում են իշխել նրանց աշխատաոճում: Այս ամենի մասին կոմբինատի կոմունիստները շիտակ և սկզբունքային խոսակցություն բացեցին վերջերս կայացած կուսակցական ժողովում, որտեղ քննարկվում էր կուսկոմիտեի հաշվետվությունը վերակառուցման ղեկավարման աշխատանքի մասին:

Արտադրության վերազինման նպատակով քիչ բան չի արվում շրջանի պահածոների փորձարարական գործարանում, ոսկու կորզիչ ֆաբրիկայում, Ավշարի արտադրական կոմբինատում: Ցավոք, այս ցանկը այսօր այնքան էլ մեծ չէ:

Գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, նոր տեխնոլոգիաների ներդրումը կուսակցության ամենահրատապ պահանջներից են: Այդ ասպարեզում տարվող աշխատանքներն արմատապես բարելավելու նպատակով որոշել ենք կուսշրջկոմին առընթեր ստեղծել գիտատեխնիկական նվաճումների պրոպագանդման ամբիոն: Դրանում կընդգրկվեն կուսշրջկոմի և «Գիտելիք» ընկերության դասախոսները, որոնք հանդես կգան գիտատեխնիկական առաջընթացի արագացման հարցերին նվիրված դասախոսություններով՝ տեսական դրույթները սերտորեն շաղկապելով շրջանի առջև ծառացած կոնկրետ խնդիրների հետ: Ամբիոնի շրջանակներում անցկացվող միջոցառումների ժամանակ իրենց ուսանելի փորձի մասին կպատմեն ա-

ռաջավոր ձեռնարկությունների ղեկավարները, մասնագետները, կուսկազմակերպությունների քարտուղարները:

Ծրջանի արդյունաբերական ձեռնարկությունները, պետական և կոլեկտիվ տնտեսությունները լայնորեն արմատավորում են տնտհաշվարկը և ինքնաֆինանսավորումը: Տարեցտարի ընդլայնվում է կապալային աշխատանքի կիրառության ոլորտը: Բավական է նշել, որ միայն գյուղատնտեսական արտադրությունում ներկայումս բրիգադային կապալի առաջադիմական եղանակով աշխատում են 5.721 դաշտավարներ, 494 անասնապահներ: Տնտեսավարման նոր եղանակների արմատավորումը է՛լ ավելի է բարձրացրել աշխատավորների շահագրգռվածությունը, նպաստել աշխատանքային և կատարողական կարգապահության ամրապնդմանը, վերջնական արդյունքների համար մարդկանց պատասխանատվության բարձրացմանը:

Թե որքանով է արդյունավետ կապալային աշխատանքը. կարելի է ցույց տալ Ջովաշենի պետական տնտեսության օրինակով: Բավական ժամանակ այն հետ էր մնում, մեծ չափերի էին հասնում վնասները՝ տարեկան ավելի քան 70 հազար ռուբլի: Գործերի վիճակը շտկելու նպատակով 1986 թ. դաշտավարության մեջ արմատավորվեց տնտհաշվարկը, անասնապահության բնագավառում՝ անհատական և ընտանեկան կապալը: Եվ արդյունքը գոհացուցիչ էր. տնտեսությունը ոչ միայն կատարեց, այլև զգալիորեն գերակատարեց հացահատիկի արտադրության, կերի կուտակման, ինչպես նաև մսի ու կաթի մթերումների տարեկան պլանները, նկատելիորեն նվազեց միավոր արտադրանքի ինքնարժեքը: Այդ ամենի շնորհիվ տնտեսությունը տարին փակեց օգուտով: Եթե վարձատրության նախկին եղանակի պայմաններում անասնապահների ամսական միջին վաստակը 185 ռուբլուց չէր անցնում, ապա նոր եղանակի դեպքում այն կազմում է 252 ռուբլի:

Ջովաշենի պետական տնտեսության օրինակը ցույց է տալիս, թե որքան կարևոր է ճիշտ գործադրել անձնական շահագրգռության բարձրացման լծակները, խելացիորեն զուգակցել անձնական և հասարակական շահերը, որոնք մարդկային գործոնի ակտիվացման լավագույն ուղիներից են: Եվ, իրոք, իներտության, հին գործելակերպի հաղթահարումը սկսվում է տնտեսավարման նոր ձևերի համարձակ կիրառումից: Տարիներ շարունակ Արմաշի և Սպանդարյանի անվան պետական տնտեսությունները վնասով են աշխատել, ցածր էր արտադրության վարման կուլտուրան: Մի խոսքով, վիճակն անհանգստացնող էր: Երկար կշռադատելով առաջարկվող տարբերակները, հաշվի առնելով թեր ու դեմ կարծիքները, գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման հայկական գիտահետազոտական ինստիտուտի կողմից կատարված ուսումնասիրությունից հետո, կուսշրջկոմը առաջարկություն է մտցրել երկու տնտեսություններում էլ 1988 թվականից հողը և անասունները 10—15 տարով վարձակալական հիմունքներով տրամադրել բանվորական ընտանիքներին: Երկու սովխոզների աշխատավորները այս առաջարկն ընդունեցին: Կարծում ենք, նման համարձակ տնտեսափորձի կիրառումը հնարավորություն կտա ապահովել տնտեսությունների բարձր շահութաբերությունը, մեծացնել գյուղատնտեսական մթերքների արտադրության ծավալները, բարձրացնել մարդկանց շահագրգռությունը:

Մեր բոլոր ձեռնարկումները կմնան թղթի վրա, եթե վճռական, եռանդուն կերպով չգործեն կադրերը, եթե նրանք չթոթափեն իներտությունը, չդրսևորեն ակտիվություն ու նախաձեռնություն, չմոբիլիզացնեն աշխատավորական կոլեկտիվների ուժերը: Կուսշրջկոմը վերջին ժամանակներս, թեև ոչ լայն ճակատով, ձեռնամուխ է եղել արտադրության մեջ երիտասարդ մասնագետների առաջքաշմանը, ղեկավար կադրերի կազմի նորացմանը՝ կիրառելով դեմոկրատիայի և հրապարակայնության ընձեռած նոր հնարավորությունները: Արմատավորվում է ղեկավար կադրերի ընտրությունը աշխատավորական կոլեկտիվների կողմից: Ցածրավոլտ ապարատուրաների գործարանի դիրեկտոր Գ. Խլղաթյանը տեղափոխվել էր այլ աշխատանքի: Ձեռնարկությունում գործերը վատացել էին: Ճիշտ է, պլանները կատարվում էին, սակայն տեխնիկական վերազինումը բարձիթողի էր արված, չէին լուծվում սոցիալական զարգացման, մարդկանց աշխատանքի ու կենցաղի կազմակերպման հարցերը: Հարկավոր էր ուժեղ ձեռք՝ գործերը կարգավորելու համար: Ձեռնարկությունը նման վիճակից հանելու խնդիրը դարձավ շրջկոմի բյուրոյի քննարկման առարկա: Բնականաբար, արծարծվեց նաև նոր դիրեկտորի թեկնածության հարցը, բայց մենք որոշեցինք դրա լուծումը թողնել կոլեկտիվի հայեցողությանը: Եվ կոլեկտիվի անդամները միահամուռ առաջարկեցին իրենց ձեռնարկության ղեկը նորից վստահել նախկին դիրեկտոր Գ. Խլղաթյանին: Նա երիտասարդ է, եռանդուն, ունի մասնա-



գիտական բարձրագույն կրթություն, մարդկանց հետ աշխատելու, նրանց ոգեշնչելու ունակություն:

Ելնելով գործի շահերից՝ երիտասարդ, խոստումնալից կադրերով ամրապնդել ենք նաև «Զովունի» արտադրամիավորման Արարատի մասնաճյուղը, ոսկու կորզիչ ֆաբրիկան: Նրանց ղեկավարներին նույնպես ընտրել են աշխատավորական կոլեկտիվները:

Միջին օղակի ղեկավարների ընտրության բազմաթիվ օրինակներ կան գյուղատնտեսական արտադրությունում, տրանսպորտում, ուսումնական հաստատություններում: Բավական է նշել, որ վերջին մեկուկես տարում այդ սկզբունքով ղեկավար աշխատանքի են առաջ քաշվել 21 երիտասարդ մասնագետներ, որոնք այսօր արդարացնում են թե՛ իրենց աշխատավորական կոլեկտիվների, թե՛ կուսշրջկոմի սպասելիքները: Կիրովի անվան, «Դվինի» պետական, Մ. Վեդու, Խալիսայի, Ենգիջայի կոլեկտիվ տնտեսություններում աշխատավորներն իրենք են կատարել միջին օղակի ղեկավարների և մասնագետների (բրիգադավարների, գյուղատնտեսների, անասնաբույժների, ֆերմաների վարիչների) ընտրությունը: Դեմոկրատական հիմունքներով կատարված նման ընտրությունները գործնականում նպաստում են աշխատավորների քաղաքական ակտիվության, աշխատանքային կոլեկտիվների հաջողությունների համար նրանց պատասխանատվության բարձրացմանը, ապահովում փոխադարձ վստահություն, հարգանք ու միասնականություն:

Կադրերի հետ տարվող աշխատանքում մենք ձգտում ենք չտարվել մանր խնամակալությամբ, չկաղապարել երիտասարդ ղեկավարների համարձակ, գործի շահերից բխող եռանդը, նախաձեռնություն հանդես բերելու, ծագած խնդիրները ինքնուրույն լուծելու կարողությունը: Կադրային աշխատանքը վրիպումներ չի հանդուրժում, յուրաքանչյուր սխալը ծանր է անդրադառնում կոլեկտիվի բարոյահոգեբանական մթնոլորտի, տվյալ ձեռնարկության ընդհանուր վիճակի վրա:

Ասել, թե մեզ մոտ կադրերի ընտրության և տեղաբաշխման գործում մեծ ու փոքր ձախողումներ չեն եղել, սխալ կլինի: Վերջին մեկուկես տարում աշխատանքում տեղ գտած թերությունների և գործած սխալների համար շրջկոմի բյուրոն կուսակցական պատասխանատվության է ենթարկել 26 ղեկավարների և գլխավոր մասնագետների: Գործը ձախողելու համար նրանցից 17-ը հեռացվել են զբաղեցրած պաշտոններից, կուսկազմակերպությունները 16 ղեկավարների հաշվետվություններ չեն հաստատել: Ահա մի բնորոշ օրինակ. «Հայոսկի» արտադրամիավորման նյութատեխնիկական մատակարարման և տրանսպորտի գրասենյակի պետ Հովհաննես Մկրտչյանը անհրաժեշտ հսկողություն չէր սահմանում աշխատողների նկատմամբ, գործը բարձիթողի էր արել, կարգուկանոն չէր սահմանել իր ղեկավարած տեղամասում: Այդ ամենի հետևանքով կատարվել էին նավթամթերքների չարաշահումներ և յուրացումներ: Շրջկոմի բյուրոն Հ. Մկրտչյանին հայտարարեց խիստ նկատողություն՝ գրանցելով հաշվառման քարտում և ազատեց զբաղեցրած պաշտոնից:

Հետ մնացող տեղամասերը հետևողականորեն ամրապնդելով նոր կադրերով՝ շրջկոմը ձգտում է խուսափել ծայրահեղությունից, ղեկավարների հաճախակի, երբեմն չհիմնավորված փոփոխությունից, մի հանգամանք, որն առանձին դեպքերում է՛լ ավելի է վատթարացնում գործերի վիճակը: Օրինակ, վերջին երկու տարում շինարարական կազմակերպություններում փոխվել են 10 ղեկավարներ: Իսկ դա նշանակում է, որ կադրերի ընտրության ու տեղաբաշխման նկատմամբ ցուցաբերվել է ոչ օբյեկտիվ վերաբերմունք, հաշվի չեն առնվում նրանց գործնական ու քաղաքական հատկանիշները: Այսպես, «Արարատարդշին» տրեստի կառավարիչ Կ. Ղարիբյանի թույլ հսկողության և անտարբերության հետևանքով ձգձգվում էր սեփական արտադրական բազայի շինարարությունը, վատ էին օգտագործվում մեքենաարքավորումները, թերակատարվում էր շինմոնտաժային աշխատանքների պլանը: Նրա փոխարեն ՀՍՍՀ շինարարության մինիստրության երաշխավորությամբ տրեստի կառավարիչ նշանակվեց շինարար-ինժեներ Թ. Ղազարյանը: Սակայն պարզվեց, որ նրա ուսերին ևս դրվել է իր ուժերից վեր ծանրություն: Ստիպված նոր փոփոխություն կատարեցինք, տրեստի կառավարիչ հաստատեցինք Գ. Մարտիրոսյանին, որն ունի աշխատանքային համապատասխան փորձ, լավ է պատկերացնում իր գործը: Կարճ ժամանակամիջոցում տրեստում կատարվել են դրական տեղաշարժեր, որոնք հուսադրող են:

Սակայն շինարարությունում տիրող վիճակը շարունակում է անհանգստացնել մեզ: Անցած տարի շինարարական 16 կազմակերպությունից 8-ը չկատարեցին պլա-

նային առաջադրանքը: Այս բնագավառում լուծման կարոտ պրոբլեմները շատ են. որոշակի դժվարություններ կան մատակարարման գործում, շինարարական շատ կազմակերպությունների ղեկավարներ չեն կարողանում թոթափել հին իներցիան, աններելիորեն դանդաղ են արմատավորում աշխատանքի կազմակերպման առաջադիմական ձևերն ու մեթոդները: Տարօրինակ է, բայց փաստ, որ շինանյութերի անբավարար մատակարարումների, աշխատանքի կազմակերպման ցածր մակարդակի պատճառով շատ հաճախ, այսպես ասած՝ գլխացավանքից հեռու լինելու համար, հենց իրենք՝ շինարարության ղեկավարներն են խոչընդոտում բրիգադային կապալի արմատավորմանը:

ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունիսյան պլենումում մեկ անգամ ևս նշվեց, որ «մեր որոշ ղեկավար կադրեր տակավին չեն սովորել աշխատել ընդլայնվող դեմոկրատիայի պայմաններում: Եվ այդ սովորելը չի կարելի հետաձգել ապագային: Սովորել հարկավոր է համառորեն և հիմա»: Կուսակցության այս հիշեցումը պարտադրում է մեզ է՛լ ավելի բարելավել կադրերի և հատկապես ռեզերվի հետ տարվող աշխատանքը: Այս առումով շրջկոմը լուրջ ուշադրություն է նվիրում մասնավոր բաց ռեզերվի ստեղծմանը: Մենք ձգտում ենք դրանում ընդգրկել գործնական, բարոյաքաղաքական բարձր հատկանիշներով օժտված երիտասարդ կադրերի, ովքեր ունակ են հետագայում պատասխանատու և ղեկավար աշխատանք կատարել: Միաժամանակ ռեզերվում ընդգրկվածների պատասխանատվությունը բարձրացնելու նպատակով նրանց թեկնածությունները հաստատվում են կամ կուսակցական, կամ կոլեկտիվի ընդհանուր ժողովում: Նման պրակտիկան, ընդլայնվող դեմոկրատիայի պայմաններում, հնարավորություն է ընձեռում կոնկրետ գործունեության արդյունքներով գնահատել երիտասարդ կադրերի գործնական և քաղաքական հատկանիշները, հաշվի առնել աշխատավորների կարծիքը, հաղթահարել ռեզերվի հետ տարվող աշխատանքում եղած ձևականությունը:

Վերակառուցման մասին խոսք անգամ լինել չի կարող, եթե արմատապես չվերակառուցվի կուսակցական աշխատանքը: Ահա թե ինչու կուսշրջկոմը ձգտում է հաղթահարել սկզբնական կազմակերպությունների գործունեության մեջ տեղ գտած միօրինակությունը, կատարելագործել կազմակերպական, գաղափարադաստիարակչական աշխատանքը, դրա ծանրության կենտրոնը տեղափոխել աշխատավորական կոլեկտիվներ: Այս առումով մի շարք կոնկրետ քայլեր են ձեռնարկվել: Շրջկոմի պլենումում «ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան (1987 թ.) պլենումի պահանջներից բխող շրջանի կուսակցական կազմակերպության խնդիրները» հարցը քննարկելուց առաջ շրջանային թերթում բացվեց խորագիր՝ «Նախապատրաստվում է շրջկոմի պլենում»: Միաժամանակ հարցաթերթիկներ բաժանվեցին սկզբնական կուսկազմակերպություններին, կուսակցական, սովետական, տնտեսական ակտիվին: Աշխատանքի նման ձևը որոշակիորեն օգնեց կուսշրջկոմին՝ հաշվի առնելու շրջանի կոմունիստների, աշխատավորների կարծիքները, նկատառումները, տեսակետները: Սակայն ճշմարտության դեմ չմեղանչելու համար ասենք, որ այն, այդուհանդերձ, սպասվող արդյունքը չտվեց: Թերևս դա բացատրվում է նրանով, որ մեզանում տարիներ շարունակ աշխատավորների կարծիքների, առաջարկությունների հաշվառման նկատմամբ ձևական մոտեցում է ցուցաբերվել, և մարդիկ այժմ էլ կարծես վստահ չեն, թե իրենց ձայնը տեղ կհասնի:

Միաժամանակ ճշմարիտ է և այն, որ մենք դեռևս ամբողջությամբ չենք սովորել հրապարակայնության, դեմոկրատիայի պայմաններում աշխատել: Վերջերս պլենումում քննարկեցինք կուսշրջկոմի բյուրոյի հաշվետվությունը՝ վերակառուցման ղեկավարման աշխատանքի մասին: Պլենումում շահագրգիռ խոսակցություն ծավալելու նպատակով մենք կրկին հարցի նախապատրաստությունը կատարեցինք հրապարակայնության պայմաններում: Կարծում եմ՝ նման պրակտիկայի հետևողական արմատավորումը չի կարող աստիճանաբար ցանկալի արդյունքի չհասցնել:

Այո՛, այսօր մեզ համար շատ կարևոր է մարդկանց սովորեցնել ապրել և աշխատել դեմոկրատիայի ու հրապարակայնության պայմաններում: Եվ ոչ միայն սովորեցնել, այլև սովորել: Դա, ինչ խոսք, դժվարին, ժամանակ պահանջող պրոցես է: Ծատերը, սակայն, չեն շտապում սովորել: Նշեմ միայն մեկ օրինակ: Արդյոք մեր իներտության, հին աշխատաոճի, անբավարար գաղափարաքաղաքական դաստիարակչական աշխատանքի մասին չի՞ խոսում այն փաստը, որ վերջերս կայացած Արմաշի պետական տնտեսության սկզբնական կուսկազմակերպության ժողովում կոմունիստները, չնայած սովխոզում տիրող անմխիթար վիճակին, չկարողացան օբ-



յեկտիվորեն գնահատել թե՛ կուսբյուրոյի, թե՛ նրա քարտուղարի և թե տնտեսության ղեկավարի աշխատանքը վերակառուցման ասպարեզում: Դեռ ավելին, կոմունիստները պաշտպանության տակ առան նրանց, թեև շատ լավ գիտեին, թե որքան դառը խոսքեր էին հնչել տնտեսության հասցեին կուսշրջկոմի պլենումում, շրջանային և հանրապետական թերթերում:

Գաղտնիք չէ, որ գործերի հաջողությունը մեծապես պայմանավորված է ներքին օղակների մարտունակությամբ, հասարակական-քաղաքական ակտիվությամբ, նաև նրանով, թե ով է ղեկավարում անմիջականորեն արտադրությունում աշխատող կոմունիստներին: Հաշվետու-ընտրական կամպանիայից առաջ մենք շրջկոմում անցկացրինք արտադրամասային 112 կուսկազմակերպությունների քարտուղարների և 127 կուսխմբերի կազմակերպիչների ատեստացիա, որը հնարավորություն ընձեռեց կուսակցական աշխատանքը վստահել միայն նրանց, ովքեր հեղինակություն են վայելում, աչքի են ընկնում կազմակերպչական ունակություններով և բարոյաքաղաքական բարձր հատկանիշներով: Այժմ կուսկազմակերպությունների բոլոր քարտուղարներն ունեն միջնակարգ և բարձրագույն կրթություն, կուսակցական աշխատանքի փորձ: Կուսխմբերի ղեկավարները արտադրության առաջավոր, ակտիվ կոմունիստներ են:

Չի կարող չանհանգստացնել այն, որ այսօր կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները շատ հաճախ ստիպված տարվում են առօրեական, տնտեսական մեծ ու փոքր գործերով, մի կողմ թողնելով հիմնականը՝ մարդկանց հետ տարվող կենդանի, գաղափարաքաղաքական ստեղծագործական աշխատանքը: Նման գործելակերպի հիմնական պատճառներից մեկը թերևս այն է, որ մեր մի շարք տնտեսական ղեկավարներ, տեղական սովետներ, միշտ չէ, որ պատրաստ են իրենց վրա վերցնելու պատասխանատվության ծանր բեռը:

Կարծում եմ ճիշտ կլինի համարձակորեն կառուցվածքային փոփոխություններ մտցնել շրջկոմի ճյուղային բաժինների աշխատանքում: Կարելի է ուղղակի ասել, որ ավանդական աշխատաոճը անհրաժեշտ արդյունք չի տալիս: Շրջկոմների ճյուղային բաժինների գործունեությունը քաղաքական հստակ ուղղվածություն չունի, այն ավելի շատ սովետական մարմինների հետ տնտեսական աշխատանքի անհարկի զուգակցում է: Ճիշտ չէ՞ր լինի, արդյոք, ճյուղային ղեկավարումից անցնել տեղական (ռեգիոնալ) ղեկավարման, որի շնորհիվ, մեր համոզմամբ, անհամեմատ կբարձրանա կուսակցական աշխատանքի արդյունավետությունը և քաղաքական ուղղվածությունը:

Այժմ մենք ձգտում ենք հստակություն մտցնել սույն խնդրի քաղաքական բովանդակության և ուղղվածության մեջ, ձերբազատվել տնտեսական ամենօրյա, հաճախ կրկնօրինակվող աշխատանքից, միաժամանակ կտրուկ բարեփոխել տնտեսական գործունեության կուսակցական ղեկավարումը, ուժեղացնել պահանջկոտությունը, տնտեսական և սովետական մարմինների նկատմամբ իրականացվող հսկողությունը: Նույնպիսի պահանջ է դրված նաև սկզբնական կուսկազմակերպությունների առջև: Բերեմ միայն մեկ օրինակ: Ներկայումս շրջանի համար գլխավոր պրոբլեմներից մեկը աշխատուժի ռացիոնալ օգտագործման, ճիշտ տեղաբաշխման հարցն է: Պրոբլեմի լուծման ուղիները հայտնի են (սեզոնային արտադրության կազմակերպում, մասնաճյուղերի հիմնում), սակայն թե՛ շրջսովետի և քաղսովետի գործկոմները, թե՛ առաջատար արդյունաբերական ձեռնարկությունները և ՇԱԱՄ-ը անհրաժեշտ գործնական քայլեր չեն կատարում պրոբլեմի լուծման նպատակով: Շրջանի համար սոցիալ-տնտեսական մեծ նշանակություն ունեցող այս խնդիրը քիչ է անհանգստացնում նաև հանրապետության պետպլանին:

Մեզ մոտ քիչ չեն այն կուսկազմակերպությունները, որտեղ ճիշտ են ընկալել ժամանակի պահանջները, ջանքեր են գործադրում նոր աշխատաոճի հաստատման, աշխատավորների ստեղծագործական եռանդի զարգացման, դեմոկրատիայի խորացման համար: Վեդու, Ավշարի, Ենգիջայի, Վանաշենի կոլտնտեսությունների, Կիրովի անվան սովխոզի, պահածոների փորձարարական գործարանի, Ավշարի արտադրական կոմբինատի, Արարատի ԲԱՏՁ-ի կուսկազմակերպությունների աշխատաոճին բնորոշ են դառնում գործերի վիճակի օբյեկտիվ գնահատականը, պրոբլեմների լուծման ոչ սովորական ուղիների, տնտեսական, կազմակերպական և գաղափարախոսական աշխատանքի նոր մեթոդների համարձակ որոնումը:

Ճիշտ է, առայժմ ամեն ինչ չէ, որ հաջողվում է մեզ: Հոգեբանական իներտությունը, թույլ պահանջկոտությունը, ընդունված որոշումների նկատմամբ անբավարար հսկողությունը, ցավոք, հատուկ է մեր մի շարք կուսկազմակերպություններին: Վերցնենք, օրինակ, Սովետաշենի սովխոզի կուսկազմակերպությունը: Արտաքուստ այստեղ կարծես թե ամեն ինչ արվում է. ժամանակին ժողովներ են գումարվում, հարցեր քննարկվում, որոշումներ ընդունվում: Իսկ արդյո՞ւնքը. չերկարացնելու համար նշենք միայն, որ տնտեսությունը շարունակում է մի կերպ պահպանել գոյությունը: Անասնապահական տնտեսություն է, սակայն տեղացի կթվոր-անասնապահներ չունի, դաշտավարությունում աշխատող ձեռքի պակաս է զգացվում: Իսկ կուսբյուրոն շարունակում է ժողովներ հրավիրել, նոր որոշումներ ընդունել, նախորդ ժողովի որոշման կատարմանն անդրադառնալ: Եվ այդպես էլ դրանք մնում են թղթի վրա: Ցավոք, Սովետաշենի օրինակը եզակի չէ:

Տարիների ընթացքում արմատներ ձգած մի ուրիշ արատավոր երևույթ էլ է մեզ այսօր անհանգստացնում: Շատ կազմակերպություններում տնտեսական ղեկավարները, չգրված մի օրենքով, փորձում են իրենց կամքը պարտադրել կուսկազմակերպություններին, դրանք համարելով իրենց ազդեցության ոլորտը: Նման, թող թույլ տրվի ասել՝ ղեկավարները, դժկամորեն են մասնակցում կուսակցական կազմակերպության կյանքին և նույնիսկ մեծ շնորհ են համարում կուսժողովին ներկայանալը: Այս ամենը հանգեցրել է նրան, որ առանձին կուսկազմակերպություններ զրկվել են մարտունակությունից, իսկ քարտուղարները՝ ինքնուրույնությունից: Բյուրոկրատական այդ վերաբերմունքը ընդհանուր ոչինչ չունի կոմունիստի վարքագծի հետ, և մեր խնդիրն է արմատախիլ անել նման երևույթները ոչ թե խոսքով, այլ գործնականում բարձրացնել կուսկազմակերպությունների մարտունակությունը:

Ինչ խոսք, վերակառուցման ճանապարհին առաջին ձեռքբերումները չնչին են այն ամենի համեմատ, ինչ պետք է առաջիկայում արվի: Առջևում հսկայական անելիքներ, լուծման կարոտ խնդիրներ կան: Ընթանալ վերակառուցման ուղիով՝ նշանակում է վերջնականապես հրաժարվել հին աշխատաոճից, գործել նորովի և հաստատակամորեն, վճռական պայքար ծավալել կուսակցության ստրատեգիական ծրագրերի իրականացման համար: Այս նպատակադրվածությամբ են այսօր Արարատի շրջանի կոմունիստները, բոլոր աշխատավորները գնում դեպի կուսակցության համամիութենական XIX կոնֆերանսը:

---

# ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԻ ԽՈՍՔԸ

ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ուսուցման դպրոցի հերթական պարապմունքն էր: Ունկնդիրները գլխավոր տեխնոլոգի բաժնի աշխատակիցներն էին՝ երեք տասնյակից ավելի ինժեներ-տեխնոլոգներ: Պրոպագանդիստ Անահիտ Ջառահյանը հիշեցնում է օրվա թեման՝ «Տնտհաշվարկը արտադրության կառավարման համակարգում», որը բխում է էկոնոմիկայի վերակառուցմամբ առաջադրված արմատական խնդիրներից:

— Տնտհաշվարկը,— ասում է նա,— տնտեսավարման սոցիալիստական մեթոդ է, արտադրության ընթացքի վրա ներգործելու կարևոր տնտեսական լծակ և մտնում է սոցիալիստական էկոնոմիկայի կառավարման համակարգի մեջ:

Ապա նա հանգամանորեն պարզաբանում է տնտհաշվարկի էությունը, առանձին-առանձին տալիս դրա բաղադրամասերի սահմանումները և հիմնավորում պրակտիկայից, այդ թվում և իրենց «Իմպուլս» գործարանից վերցրած խոսուն օրինակներով: Նշում է, որ տնտեսավարման այդ մեթոդին անցնելու ճանապարհին ձեռնարկությունը դեռ պետք է հաղթահարի շատ դժվարություններ, որպեսզի ընթացիկ տարվա վերջին պատրաստ լինի ներդնելու լրիվ տնտհաշվարկը: Իսկ առայժմ այստեղ տնտհաշվարկը որոշ տեղամասերից այն կողմ դեռ չի անցել: Ճիշտ է, առաջադիմական եղանակով աշխատող հինգ բրիգադները դրական օրինակ տալիս են, բայց երբեմն-երբեմն նրանց մոտ էլ վերջնական արդյունքի հաշվառման ու աշխատավարձի հաշվարկման ժամանակ ի հայտ են գալիս տարակարծություններ, թե ինչպես որոշել բրիգադի յուրաքանչյուր անդամի աշխատանքային մասնակցության գործակիցը:

— Իսկ պատկերացրեք, որ գործարանի ամբողջ կոլեկտիվն աշխատում և վարձատրվում է նոր տնտեսաեղանակով,— շարունակում է պրոպագանդիստը,— հարկ կլինի նախ և առաջ մարդկանց շրջանում ուժեղացնել բացատրական ու գաղափարաքաղաքական աշխատանքը, այն դնել նաև կադրերի, բոլոր բանվորների տնտեսագիտական ուսուցման հիմքում:

Այնուհետև Ա. Ջառահյանը ունկնդիրներին բացատրում է տնտհաշվարկի և լրիվ տնտհաշվարկի ընդհանուր ու տարբերիչ կողմերը: «Եթե տնտեսական հաշվարկը,— ասում է նա,— ենթադրում է ձեռնարկության կատարած արտադրական ծախսերի փոխհատուցում, այլ խոսքով ասած՝ ինքնածախսածածկում, ապա լրիվ տնտհաշվարկը, դրանով հանդերձ, ակնկալում է նաև որոշակի շահույթի ապահովում և արտադրության հետագա զարգացում, ինչպես նաև սոցիալ-կուլտուրական ծախսերի նպատակով ինքնաֆինանսավորման միջոցների գոյացում:

Խոսվեց թեմայից բխող նաև այլ հարցերի մասին: Տնտեսավարման նոր եղանակի առնչությամբ պարզաբանվեցին ինժեներատեխնիկական անձնակազմի աշխատանքի, ինչպես նաև տարիֆադրույքային համակարգի վերանայման, վերջնական արդյունքներից գոյացած դրամական միջոցների բաշխման հարցերը:

Նյութը մատուցվեց բոլորին հասկանալի ու մատչելի լեզվով: Եվ սխալված չենք լինի, եթե ասենք, որ պարապմունքն ավելի շուտ հիշեցնում էր կենդանի զրույց-երկխոսություն: Ընդհանրապես դա պրոպագանդիստ Ա. Ջառահյանի նախընտրած մեթոդն է, որի հիմքում ընկած է ունկնդիրների հետ հաշվի նստելու, նրանց «շնչառությունը» լսելու հանգամանքը: Այս առիթով ակամա հիշեցի այս ուսումնական տարվա նրա առաջին պարապմունքը՝ «Պրակտիկ գործերով խորացնենք վերակառուցումը» թեմայով, որը միասնական էր քաղաքական ու տնտեսագիտական ուսուցման բոլոր տիպի դպրոցների համար: Այն ժամանակ էլ ողջ պարապմունքի ընթացքում լսարանը պահվեց ակտիվ լարվածության պայմաններում, և պրոպագանդիստը, կարելի է ասել, ձգտում էր մտքերը կիսել ունկնդիրների հետ:

Հիմա էլ հարցադրումները կոնկրետ էին, դիմացինին շահագրգռող, հանդիպական

հարցի տրամադրող։ Ունկնդիր Լ. Բարսեղյանին, օրինակ, հուզում էին այլ ձեռնարկությունների հետ իրենց գործարանի պայմանագրային պարտավորությունների ճշտիվ կատարման, խրոնիկական դարձած տուգանքների վերացման, տնտեսավարման նոր պայմաններում ստացված շահույթի տնօրինման հարցերը։ Ռ. Բաբինյանին հետաքրքրում էր, թե էական ինչ տարբերություններ կան տնտեսավարման ներկայիս ձևով և լրիվ տնտհաշվարկով աշխատելու միջև, իսկ Վ. Թորոսյանի հարցն այն մասին էր, թե իրենց գործարանում ինչ է արվում լրիվ տնտհաշվարկի անցնելու համար կամ տնտհաշվարկի անցնելիս, համաձայն նոր նորմատիվների, ինչպես է կարգավորվելու ինժեներատեխնիկական աշխատողների վարձատրությունը։

Եվ պրոպագանդիստը հանգամանորեն պատասխանեց առաջադրված հարցերին։ Նա բացատրեց, որ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման պայմաններում աշխատավարձն ուղիղ կախման մեջ է դրվում արտադրական վերջնական արդյունքից, պայմանագրային պարտավորությունների կատարումից և պատրաստի արտադրանքի իրացումից։ Իսկ ստացված շահույթի 60—65 տոկոսը, ասաց նա, կմնա ձեռնարկության տնօրինության տակ, մասամբ կհատկացվի նոր հիմնական ֆոնդերի ձեռքբերման ու արտադրատեխնիկական վերազինման նպատակին, իսկ մնացածը կտրամադրվի աշխատողների նյութական խրախուսմանը, կուլտուր-կենցաղային և սոցիալական այլ հարցերի լուծմանը, որոնց մեջ կենտրոնական տեղը հատկացվում է սեփական միջոցներով բնակարանային շինարարությանը։ Այդ նպատակով արդեն զգալի գործ է արվել, կան իրականացվելիք ոչ քիչ ծրագրեր։ Միայն վերջին մոտ մեկ տարում գործարանում բացվել են կոմունալ-կենցաղային և բուժսպասարկման վեց տեսակի ծառայություններ։ Նախադրյալներ են ստեղծվում եկող տարի սկսելու կոտեջային տիպի բնակարանային կոոպերատիվ շինարարություն, որին կմասնակցի ամբողջ կոլեկտիվը՝ ինքնուրույն կերպով լուծելով իր բնակարանային պրոբլեմը, որն այսօր դեռևս առկա է։

— Ունկնդիրներիս առաջ ինձ խիստ պարտավորված եմ զգում,— պարապմունքից հետո մեր կարճատև զրույցի ժամանակ ասաց Ա. Ջառահյանը,— չէ՞ որ նրանց մեծամասնությունը բարձրագույն կրթությամբ և տարիների փորձ ունեցող մասնագետներ են։ Այն հարցերը, որոնց մասին ես նրանց հետ խոսում եմ, շատերն ինձնից վատ չեն պատկերացնում, վերակառուցմամբ թելադրված հանգուցային խնդիրները, մեր կոլեկտիվի առջև ծառացած պրոբլեմները հավասարապես հուզում են նաև նրանց։

Եվ նա ասածը հիմնավորում է կոնկրետ փաստերով։ Լիդա Ասոյանն, օրինակ, ձեռնարկության տեխնիկական վերազինման և արտադրական հզորությունների հաշվարկման բյուրոյի պետն է։ Այստեղ աշխատում է «Իմպուլսի» հիմնադրման օրից՝ ավելի քան երկու տասնամյակ։ Ակտիվ, հարցասեր ունկնդիր է, իրեն հանձնարարված բնագավառը լավ է պատկերացնում, սկզբունքային մասնագետ է։ Այդ տեսակետից օրինակելի են նաև ունկընդիրներ, մեխանիկական արտադրամասերն սպասարկող բյուրոյի ինժեներ-տեխնոլոգ, արտադրության նորարար, բաժնի արհկոմի նախագահ Լետա Բարսեղյանը և երիտասարդ խոստումնալից ինժեներ Արմեն Քեռյանը, որն զբաղվում է նոր տեխնիկայի ներդրման հարցերով և խիստ մտահոգվում է, որ առայժմ ինժեներական միտքը գործարանում անհրաժեշտ բարձրության վրա չէ, դեռևս հետ է մնում վերակառուցմամբ առաջադրված պահանջներից։

Իսկ այն հարցին, թե ինքն ինչպես է պատկերացնում վերակառուցումը էկոնոմիկայում և ընդհանրապես կյանքում, պրոպագանդիստը պատասխանում է.

— Անձամբ ես վերակառուցմանը հավատում եմ, բայց ահա դեմոկրատացման լոզունգի քողի տակ առանձին անբաններ, իրականում անկարգապահ ու գործի մեջ գլուխ պահող անձանց «ակտիվացումն» ինձ անհանգստացնում է, մտահոգում։ Այս դեպքում է, որ դեմոկրատիան չպետք է շփոթենք դեմագոգիայի հետ ու ժամանակին կանխենք նմաններին։

Ա. Ջառահյանին հուզում է այն, որ գործարանում ընդհանրապես լուրջ ուշադրություն չի նվիրվում աշխատավորների տընտեսագիտական ուսուցմանը։ Կուսկոմիտեն և տնտեսական ղեկավարությունը դրսևորում են թույլ վերահսկողություն ու պահանջկոտություն, և հիմնականում ուսուցման կազմակերպումը մնում է պրոպագանդիստների խղճին։ «Մինչդեռ տընտեսագիտական գիտելիքներին տիրապետելը,— ասաց նա,— հատկապես այսօրվա պայմաններում շատ կարևոր է, ներկայացվող սկզբունքորեն նոր պահանջները իմացության հին պաշարով չես բավարարի։ Եվ հետո՝ էլ ի՞նչ ուսուցում, եթե այն չի նպաստելու աշխատանքում ինժեներական-տնտեսագիտական ու տեխնոլոգիական մտքի զարգացմանը, որն «Իմպուլսում» առայժմ չի գոհացնում»։

Արդեն վեցերորդ տարին է, ինչ Անահիտ Ջառահյանը, հիմնական աշխատանքին զուգընթաց, կատարում է նաև պրոպագանդիստի պատասխանատու և պատվավոր գործը։ Տարբեր տարիներին նրա ունկնդիրներն են եղել գործարանի №№ 8 և 10 արտադրամասերի, նյութամատակարարման բաժնի ինժեներատեխնիկական աշխատողները, արտադրության միջին օղակի ղեկավարները։ Եվ ահա երկրորդ տարին է, ինչ ձեռնարկության աշխատանքի և աշխատավարձի բաժնի կոմունիստ տնտեսագետին վստահվել է պարապմունքները վարել գլխավոր տեխնոլոգի բաժնի մասնագետների հետ։ Ու հատկանշական է, որ երկուստեք փոխըմբռնումը սկզբից ևեթ կայացել է։

Պրոպագանդիստին հավանորեն օգնել է և այն, որ նա շուրջ հինգ տարի հիմնական աշխատանքին զուգահեռ, դասախոսել է Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի Դիլիջանի բաժանմունքում, իր գիտելիքներն ու մարդկանց հոգուն, մըտքին տիրելու սեփական կարողությունն ստուգել գործնականում։

Իսկ այն ե՞րբ էր, որ եկավ գործարան, մտավ կյանքի հորձանուտ։ Մի փոքր ավելի, քան երկու տասնամյակ առաջ Դիլիջանում ծնվեց «Իմպուլս» գործարանը, որն ստանձնեց քաղաքի արդյունաբերության առաջատարի պատվավոր և միաժամանակ պարտավորեցնող պարտականությունը։ Երկար ժամանակ չպահանջվեց, որպեսզի կազմավորվեր բազմամարդ մի կոլեկտիվ՝ ինժեներատեխնիկական իր անձնակազմով։ Նրանցից մեկն էլ Ա. Ջառահյանն էր։

Բնիկ դիլիջանցի է Անահիտը. հայրենի քաղաքի № 1 միջնակարգ դպրոցն ավարտելուց հետո աշխատանքային կենսագրությունն սկսել է «Իմպուլսում»։ Այստեղ ստացել է բանվորական առաջին մկրտությունը, ապա ընդունվել Երևանի պետական համալսարանի տնտեսագիտական ֆակուլտետ։ Ավարտել է արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարման ու պլանավորման բաժինը և վերադարձել հարազատ գործարան, որտեղ և աշխատում է շուրջ մեկ տասնամյակ։ Այս հակիրճ տեղեկություններից հետո ասում է. «Չեմ էլ պատկերացնում իմ հետագա աշխատանքը մեկ այլ տեղ»։

Խոսում է ներշնչանքով, իր ձեռնարկության համար արժանապատվության ու պատասխանատվության խորին զգացումով։ Բայց այն մասին, որ հանրակրթական դպրոցն ավարտել է ոսկե մեդալով և իր լուսանկարն այսօր էլ պատվավոր տեղ ունի Մ. Սանթրոսյանի անվան № 1 միջնակարգի ճանաչված շրջանավարտներին ներկայացնող ցուցափեղկին, լռում է։

Խնդրում եմ մի քանի խոսք ասել իր գործունեության մասին.

— Աշխատանքի և աշխատավարձի բաժնում նորմավորող տնտեսագետ եմ,— ասում է նա,— զբաղվում եմ տեխնիկապես հիմնավորված նորմաների մշակման ու գործնական կիրառման, ինչպես նաև տեխնոլոգիական պրոցեսների ուսումնասիրման, արտադրությունում աշխատանքի կազմակերպման նոր ձևերի, նորարարական առաջարկությունների ներդրման հարցերով։ Հանդիպում են ոչ քիչ դժվարություններ՝ կապված արտադրության արդիականացման հետ։ Երբեմն պարզվում է, որ այս կամ այն նոր մեքենայի ներդրմամբ արտադրական ծախսերն ավելանում են, և, փաստորեն, միջոցառումը սպասված արդյունքը չի տալիս։ Նշանակում է՝ ինչ որ բան սխալ է հաշվարկվել, տնտեսագիտորեն չի հիմնավորվել և հարկ է լինում վերանայել, ճշտել, ուղղել, որպեսզի ոչ հաստոցի մոտ կանգնած բանվորը տուժի, ոչ էլ ձեռնարկությունը։

Հետո ամփոփում է միտքը.

— Վերջին հաշվով ցանկացած արտադրությունում գործի կազմակերպման մակարդակի մասին դատում են նրանով, թե որքանով է ճիշտ նորմավորված աշխատանքը և ինչ հատույց է տալիս այն։

Զրույցի ժամանակ նրա աշխատանքային սեղանի վրա աչքի ընկավ պետական ձեռնարկության (միավորման) մասին օրենքի մամուլում հրապարակված տեքստը։ Կային գրառումներ՝ սևագիր ու մաքրագրված։ Դրանք մի քանի օր հետո պրոպագանդիստը պետք է տաներ լսարան և հերթական պարապմունքը նվիրեր էկոնոմիկայի վերակառուցման մեջ կենտրոնական տեղ գրավող այդ փաստաթղթի էության, դրանից բխող կոնկրետ խնդիրների պարզաբանմանը։ Անտարակույս, նա դրանք կկապի իրենց ձեռնարկության այսօրվա և վաղվա անելիքների հետ, կնշի, որ, սկսած արտադրության կազմակերպումից մինչև ստացված շահույթի տնօրինումը, նոր օրենքը լայն հնարավորություններ ու իրավունքներ է ընձեռում աշխատավորական կոլեկտիվներին, մարդկանց մղում ստեղծագործական որոնման ու նախաձեռնության։

Ունկնդիրների հետ կիսելով իր խոհերը կոլեկտիվի կողմից արտադրության ինք-

նակառավարման, լայն հրապարակայնության ու արտադրական ձեռնարկության ներկոլեկտիվային կյանքում դեմոկրատական սկզբունքների արմատավորման մասին՝ պրոպագանդիստը ափսոսանքով նշում է, որ, ճիշտ է, իրենց գործարանում ընտրվել է աշխատանքային կոլեկտիվի խորհուրդ, բայց այն դեռևս չունի իր որոշակի դեմքը, որ իրենց մոտ նորը դեռ դժվարությամբ է ուղի հարթում, իսկ կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կոմիտեները հանդես չեն բերում անհրաժեշտ վճռականություն, սկզբունքայնություն:

Ի դեպ, սկզբունքայնության, իր տեսակետը պաշտպանելու համարձակության հարցում Անահիտ Ջառահյանին կարելի է նախանձել: Այսօրվա բուռն վերափոխումների, նոր մտածելակերպի ու աշխատաոճի հաստատման ժամանակներում յուրաքանչյուրիս այնքա՜ն անհրաժեշտ այդ հատկանիշները նրա մոտ որոշակիորեն ի հայտ են եկել դեռևս դպրոցական տարիներին, երբ հետաքրքրությունների իր շրջանակն ունեցող աղջնակը դպրոցի պիոներական դրուժինայի խորհրդի նախագահն էր, ապա՝ «Կոմերիտական լուսարձակ» շտաբի պետը և լավ աշխատանքի համար պարգևատրվել է «Արտեկ» համամիութենական ճամբարի ուղեգրով:

Բնավորության այդ հատկանիշները, ավելի խորանալով և աշխատանքում նոր իմաստ ստանալով, նրան ուղեկցում են նաև հիմա և աննկատ չեն մնում: Մասնագիտական, աշխատանքի հետ կապված, թե ընկերական զրույցների ժամանակ նրա խոսքն ունի իր կշիռը և միշտ հիմնվում է կոնկրետ փաստարկների վրա, բխում սեփական գործելաոճի ինքնաքննադատական որակումից: Ահա թե ինչու, երբ մոտ երկու տարի առաջ Ա. Ջառահյանը ցանկություն հայտնեց ընդունվելու ՍՄԿԿ շարքերը, բաժնի կոմունիստներից յուրաքանչյուրը պատրաստ էր նրան երաշխավորել, բնութագրել ոչ միայն որպես օրինակելի աշխատողի, այլև ակտիվ կենսադիրքորոշում ունեցող քաղաքացու: Իսկ վերջին հաշվետու-ընտրական ժողովում երիտասարդ կոմունիստը միաձայն ընտրվեց իրենց՝ աշխատանքի և աշխատավարձի բաժնի սկզբնական կուսկազմակերպության քարտուղար: Եվ թե՛ բաժնում, թե՛ կուսկոմիտեում գտնում են, որ ընտրության հարցում չեն սխալվել: Երբ մարդը բարեխիղճ է աշխատանքում և ունի իր ինքնուրույն կարծիքը, ինչու նրան չհավատալ ու չվստահել:

Այդպես էլ կա: Արտադրության առաջատար մասնագետ ու պրոպագանդիստ Անահիտ Ջառահյանին ճանաչողները նրան գիտեն որպես լրջմիտ, հրապարակայնության անվերապահ կողմնակից: Եթե մարդը քաջություն չունի կուսակցական կամ կոլեկտիվի ժողովներում, քաղպարապմունքի կամ ընկերական բանավեճի ժամանակ ասելու, ընդունելու ճշմարտությունը, է՛լ ինչպե՞ս կարող է օգնել՝ ջրի երես հանելու, ապա և վերացնելու մեր առաջընթացին խանգարող թերությունները, «ո՛չ» ասելու վերակառուցման շահախնդիր հակառակորդներին, պայքարելու հասարակական վտանգավոր բացասական երևույթների դեմ: Չէ՞ որ, ասում է, եղած ու թվացյալ հաջողությունները թմբկահարելով, փոխադարձ քաղցրախոսությամբ հեռուն չենք գնա, հետ կմնանք ժամանակի ընթացքից:

Պրոպագանդիստը հոգու անկեղծ ցավով է խոսում անցյալ տարի իրենց գործարանում կատարված լուրջ սխալների, հավելագրման փաստերի մասին, որոնց հետևանքները վերացնելու, դրությունը շտկելու համար այսօր մեծ ջանքեր են պահանջվում: Եվ նա այդ փաստերը չի թաքցնում իր ունկնդիրներից, նրանց ուշադրությունը բևեռում է Մ. Ս. Գորբաչովի՝ ՍՍՀՄ արհմիությունների XVIII համագումարում արտահայտած այն մտքի վրա, թե ներկայումս կատարվող արմատական վերափոխումները հատկապես նրանց սրտով չեն, ովքեր սովոր են աշխատել մի կերպ, ամեն ինչ անել բախտին ապավինելով, ովքեր անտարբեր են, իներտ, անձեռներեց... ովքեր մինչև օրս ձեռնարկությունում, շրջանում, քաղաքում, լաբորատորիայում տերտերօրինություն են արել ինչպես սեփական հայրենակալվածքում, քիչ հաշվի առնելով կոլեկտիվի, աշխատավորների կարծիքը:

— Այդ միտքն ինձ ավելի քան հոգեհարազատ է,— ասում է Անահիտը,— ահա թե ինչու ձգտում եմ ունկնդիրներիս հետ երկխոսության ժամանակ նրանց ուշադրությունը հրավիրել մարդկային բարոյական վարքագծի այդ կողմի վրա, նրանց մղել աշխատանքային ու հասարակական ակտիվության: Տարիների փորձից ես հանգել եմ այն եզրակացության, որ պրոպագանդիստը պետք է մշտապես հիշի լենինյան այն միտքը, ըստ որի մեր կուսակցության պրոպագանդայի ներգործության գլխավոր ուժը նրա ճշմարտացիության մեջ է: Այս պահանջն առավել ևս այսօր մղվել է առաջին պլան: Չէ՞ որ ճշմարտությունը միշտ չէ, որ բացահայտ է երևում, տեսանելի դառնում: Չպետք է մոռանալ նաև այն, որ այսօրվա ունկնդիրը հարուստ ինֆորմացիա ունի: Նա սիրում է և կարողանում է բանավիճել, իսկ բանավեճում ընդգրկելով նաև համեմատաբար պասիվ ունկնդիրներին, դրանով իսկ նպաստում ենք նրանց ինքնուրույն մտածողության զարգացմանը, ամրապնդում քաղաքականապես և տնտեսագիտորեն հասուն մտածելու ունակությունը և տեսականը գործնականի հետ շաղկապելու կարողությունը:

... Կրկին վերադառնանք լսարան, ուր պրոպագանդիստ-ունկնդիր զրույցն ամփոփվում է: Այլ հարցերի հետ մեկտեղ, այն նաև կոլեկտիվում, արտադրության բոլոր օղակներում յուրաքանչյուրի պատասխանատվության ու անձնական շահագրգռության բարձրացման անխուսափելի անհրաժեշտության մասին է՝ որպես տնտեսական հաջողության ապահովման կարևոր լծակի: Շոշափվեցին ներկա շրջադարձային փուլում արտադրության մասնագիտական կողմնորոշման, կոլեկտիվ ինքնակառավարման, ինքնուրույնության զարգացման, ներքին լրացուցիչ ռեզերվների բացահայտման ու ներդրման, բարոյական ու նյութական խրախուսման միջոցների խելացի օգտագործման և մարդկային գործոնի ըստ ամենայնի ակտիվացման հետ առնչվող պրոբլեմներ, որոնք քիչ չեն ձեռնարկություններում: Վկայակոչվեց լենինյան այն դրույթը, որ պետք է հենվել մասսաների ոչ միայն խանդավառության, այլև նյութական շահագրգռության բարձրացման վրա: Պրոպագանդիստն իր ունկընդիրների ուշադրությունը հրավիրեց այն կարևոր հանգամանքի վրա, որ յուրաքանչյուր բանվոր տվյալ ամսում աշխատանքի ընթացքում իր տված խնայողության դիմաց պետք է ստանա կոնկրետ նյութական խրախուսում, որ նույնը վերաբերում է նաև ինժեներական աշխատանքին, որին պետք է հատուկ լինի նորարարությունը, մտածողության այժմեականությունն ու հեռանկարայնությունը: Այնինչ ինժեներատեխնիկական շատ աշխատողների մոտ դա բացակայում է, դանդաղ է հաղթահարվում մտածողության ու գործելակերպի իներտությունը: Նոր տնտեսակարգը առաջադրում է նոր, բարդ խնդիրներ: Դրանք լուծելու համար պետք է բազմակողմանիորեն պատրաստ լինի նաև ձեռնարկության տեխնոլոգիական միտքը կոորդինացնող ստորաբաժանման՝ գլխավոր տեխնոլոգի բաժնի անձնակազմը: Դա լավ է գիտակցում այս բաժնի տնտեսագիտական ուսուցման դպրոցի պրոպագանդիստ Անահիտ Ջառահյանը: Նա հիմա պատրաստվում է հերթական պարապմունքին...

**Զ. ԴԱՆԻԵԼՅԱՆ**
**«Դիլիջան» թերթի խմբագրի տեղակալ**

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԻՆՏԵՆՍԻՎԱՑՄԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԵԽԱՆԻԶՄԸ

ՅՈՒ. ՍՈՒՎԱՐՅԱՆ

ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄՆ արագացնելու կուսակցության ստրատեգիական կուրսի կարևորագույն ուղղությունը գիտատեխնիկական առաջադիմության հիման վրա հասարակական արտադրության ըստ ամենայնի ինտենսիվացումն է: ՍՄԿԿ XXVII համագումարը խնդիր է դրել արտադրությունը փոխադրել զարգացման ինտենսիվ ուղի, դրա շնորհիվ բարձրացնել տնտեսական աճի տեմպերը, նյութական արտադրության բոլոր ճյուղերի արտադրանքի ավելացումն ամբողջովին ապահովել աշխատանքի արտադրողականության աճի հաշվին: Այդ ծրագրի իրագործումը պահանջում է մշակել էկոնոմիկայի ինտենսիվացման գիտագործնական հիմունքները, այդ թվում՝ դրա կառավարման համակարգը: Ճիշտ է, գիտական գրականության մեջ և գործնական կյանքում շատ է գրվում ու խոսվում ինտենսիվացման մասին, սակայն հաճախ այն իր բովանդակությամբ հստակորեն չի սահմանազատվում արտադրության արդյունավետության կատեգորիայից, դեռևս մշակման փուլում է գտնվում այդ հասկացության գնահատման մեթոդիկան:

Առանձնապես հրատապ են էկոնոմիկայի ինտենսիվացման մեխանիզմի տեսական-մեթոդական և գործնական խնդիրները, մանավանդ որ ընթացիկ տարվանից հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների գերակշռող մասն աշխատում է լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման պայմաններում: Ինչպես նշեց ընկ. Մ. Ս. Գորբաչովը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 70-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում, առաջիկա 2—3 տարվա ընթացքում կիրականացվի տնտեսական մեխանիզմի վերակառուցում, վճռական քայլ կկատարվի ժողովրդական տնտեսության ինտենսիվացման ճանապարհին:

Որպես հասարակական արտադրության զարգացման եղանակ ինտենսիվացումն արտադրանքի ծավալի աճն ապահովում է աշխատանքի տեխնիկական զինվածության բարձրացման, արտադրության կազմակերպման կատարելագործման հիման վրա՝ աշխատանքային ու նյութական ռեսուրսների, հիմնական ֆոնդերի արդյունավետ օգտագործման շնորհիվ: Արտադրության ընդլայնման հիմքը առկա ռեսուրսների լավագույն օգտագործումն է: Ընդլայնված վերարտադրությունը էքստենսիվ է, գրել է Կ. Մարքսը, եթե «արտադրության դաշտն է ընդարձակվում», ինտենսիվ, եթե կիրառվում են առավել արդյունավետ արտադրամիջոցներ, ընդ որում տվյալ դեպքում ընդլայնումը չի կատարվում կուտակման շնորհիվ՝ «հավելարժեքը կապիտալ դարձնելուց» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 2, Երևան, 1936, էջ 140): Սակայն ինչպիսի՞ն է ինտենսիվացման և արդյունավետության փոխհարաբերությունը: Վերջինիս էությունը ստացված արդյունքի և կատարված ծախսերի համադրումն է: Արտադրության արդյունավետության բարձրացման իմաստը նվազագույն ծախսերով առավելագույն արդյունքի ձեռքբերումն է: Արտադրական ապարատի հնարավորությունների (աշխատանքային հերթափոխի, ամսվա, տարվա ընթացքում, ինչպես նաև մինչ բարոյական մաշվածության վրա հասնելը), ամբողջ հզորությամբ օգտագործումը հանգեցնում է արտադրական պրոցեսի ինտենսիվացման, որը ենթադրում է աշխատանքի հասարակականորեն նորմալ ինտենսիվություն: Աշխատանքի պրոցեսի այդպիսի լարվածությունը համապատասխանում է սոցիալ-ֆիզիոլոգիական անհրաժեշտ պահանջներին, ժամանակակից տեխնիկայի ու տեխնոլոգիայի պայմաններում ապահովում է արտադրության պահանջվող ռիթմը, աշխատաժամանակի օպտիմալ կառուցվածքը (նախապատրաստական-եզրափակիչ ու օպերատիվ ժամանակի ճիշտ հարաբերակցությունը) և բացառում է դրա ներհերթափոխային կորուստները: Եթե գիտատեխնիկական առաջադիմության անընդհատության պատճառով արտադրության ինտենսիվացումն անսահմանափակ է, ապա աշխատանքի առումով դա կարող է տեղի ունենալ միայն ֆիզիոլոգիապես թույլատրելի սահմաններում, ուստի արտադրությունը փոխադրվում է ինտենսիվ ուղու վրա ավելի արագ, հասնում ավելի բարձր մակարդակի, քան աշխատանքը: Շարադրվածից հետևում է, որ էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման նախապայմանը ինտենսիվացումն է, որովհետև այն վերաբերում է բուն արտադրության պրոցեսին, արդյունքներն ստեղծող աշխատանքին: Արտադրության գործոնների ինտենսիվ օգտագործման համազորը արդյունավետությունն է: Բնականաբար, ինտենսիվացման հետևանքով տնտեսական գործունեության արդյունքները, կատարված ծախսերի համեմատությամբ, աճում են ավելի արագ և այդպիսով պայմանավորում արտադրության ընդլայնումը:

ՍՈՒՎԱՐՅԱՆ ՅՈՒՐԻ ՄԻՔԱՅԵԼԻ—*տնտեսագիտության դոկտոր, պրոֆեսոր, ԵրԺՏԻ-ի գիտական գծով պրոռեկտոր:*



Սոցիալիստական արտադրության ինտենսիվացման աստիճանը բնութագրվում է գիտատեխնիկական առաջադիմության նվաճումների օգտագործման և տնտեսական մեխանիզմի անընդհատ կատարելագործման հիման վրա արդյունավետության ձեռք բերած մակարդակով: Դրա հետ մեկտեղ, ինչպես բխում է այս հարցադրումից, ճիշտ չէ օգտագործել «ինտենսիվացման արդյունավետություն» արտահայտությունը, որը, ցավոք, լայն տարածում ունի գիտական գրականության մեջ և մամուլի էջերում:

Մեծ է էկոնոմիկայի համակողմանի ինտենսիվացման տնտեսական ու սոցիալական նշանակությունը, այն արտադրության ընդլայնման և բնակչության կենսամակարդակի բարձրացման կարևոր միջոցն է: Արտադրության ինտենսիվ զարգացման պայմաններում ազգային եկամտի համեմատաբար փոքր մասն է կուտակվում, մեծանում է սպառման ֆոնդը: Էքստենսիվ զարգացման դեպքում, ընդհակառակը, մեծանում է պահանջը կուտակման նկատմամբ, նվազում են սպառման ֆոնդի ավելացման հնարավորությունները:

Պլանավորման պրակտիկայում և վիճակագրության մեջ էկոնոմիկայի ինտենսիվացման մակարդակը հիմնականում գնահատվում է արտադրանքի հավելաճում աշխատանքի արտադրողականության բարձրացման տեսակարար կշռով: Գիտական գրականության մեջ նշվում է, որ արտադրության աճի ինտենսիվ գործոնների նշանակությունը կարող է որոշվել արտադրանքի հավելաճում աշխատանքի արտադրողականության բարձրացման տեսակարար կշռով (տե՛ս Экономический строй социализма, т. 2. Социалистическое расширенное воспроизводство, М., Экономика, 1984, стр. 64):

Սակայն այդ դեպքում հաշվի է առնվում մի ռեսուրսի՝ կենդանի աշխատանքի օգտագործումը: Բայց քանի որ արտադրության պրոցեսն ընդգրկում է նաև նյութական ռեսուրսները, հիմնական ֆոնդերը, ապա արտադրության ինտենսիվացման մակարդակը ավելի լրիվ և ճշգրիտ կարող է բնութագրվել ընդհանրական ցուցանիշի՝ թողարկվող արտադրանքի և բոլոր արտադրական ռեսուրսների հավելաճի համադրմամբ:

ՍՍՀՄ-ում, ինչպես նաև Հայկական ՍՍՀ-ում արտադրության ծավալի հավելաճի գերակշռող մասը ստացվում է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին: Այսպես, տասնմեկերորդ հնգամյակում երկրի ազգային եկամտի ավելացման շուրջ 9/10 մասը, իսկ ՀՍՍՀ-ում ավելի քիչ բաժինը՝ 63 տոկոսը, ստացվել են այդ գործոնի հաշվին:

Արդյունաբերության մեջ նույնպես արտադրանքի հավելաճի գերակշռող մասն ապահովվում է աշխատանքի արտադրողականության աճի հաշվին: ՍՍՀՄ-ում նախորդ երկու հնգամյակներում դրա շնորհիվ ստացվել է արդյունաբերական արտադրանքի հավելաճի համապատասխանաբար 75 և 86 տոկոսը, ՀՍՍՀ-ում՝ միայն 54 և 57 տոկոսը: Այդ գործոնի հաշվին ձեռք են բերվել հանրապետության գյուղատնտեսական արտադրանքի, երկաթուղային տրանսպորտի փոխադրումների ողջ հավելաճը, շինարարական-մոնտաժային աշխատանքների ծավալի մեծացման շուրջ 80 տոկոսը:

Հանրապետության նյութական արտադրության և հատկապես արդյունաբերության մեջ արտադրանքի հավելաճում աշխատանքի արտադրողականության բարձրացման համեմատաբար փոքր բաժինը բացատրվում է աշխատանքային աճող ռեսուրսների լրիվ զբաղվածության ապահովմամբ և արդյունաբերական արտադրանքի բարձր աշխատատարությամբ: Բացի այդ, ցածր են աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը: Արդյունաբերության և գյուղատնտեսության ճյուղերում այդ ցուցանիշով վերջին 15 տարում միութենական հանրապետությունների թվում ՀՍՍՀ-ն զբաղեցրել է ութերորդ տեղը: Աշխատանքի արտադրողականության աճի ցածր տեմպերի պատճառները խորապես բացահայտվեցին ՀԿԿ Կենտկոմի 1987 թ. հունիսյան պլենումում, որտեղ նշվեց, որ տարբեր ճյուղերի շատ ձեռնարկություններում տեխնիկայի և տեխնոլոգիայի, արտադրության կազմակերպման ու կուլտուրայի մակարդակը չի համապատասխանում արդի պահանջներին, հետևողականորեն չեն լուծվում արտադրական ապարատի արդիականացման խնդիրները, տարեցտարի չեն կատարվում նոր տեխնիկայի արմատավորման պլանները: Բացի այդ, անբավարար է նոր տեխնիկայի ներդրման տնտեսական արդյունավետությունը, համեմատաբար ցածր է ենթակառուցվածքային ճյուղերի՝ նյութատեխնիկական մատակարարման, տրանսպորտի, պահեստային տնտեսության զարգացման մակարդակը:

Հաշվի առնելով բոլոր արտադրական ռեսուրսների օգտագործումը՝ արտադրության ինտենսիվացման աստիճանը հանրապետության արդյունաբերության մեջ բարձր չէ և ունի նվազման միտում. այն իններորդ հնգամյակում կազմել է 32,5 տոկոս, 1976—1980 թվականներին՝ 20,5, իսկ տասնմեկերորդ հնգամյակում 17,4 տոկոս: Ավելի ցածր է նյութական արտադրության ինտենսիվացման մակարդակը, որը նախորդ հնգամյակում կազմել է 13,5 տոկոս: Ուստի հանրապետությունում ընդլայնված վերարտադրությունը դեռևս ունի էքստենսիվ բնույթ: Ինտենսիվացման ընդհանրական ցուցանիշի այդպիսի մակարդակը հիմնական փոնդերի օգտագործման արդյունավետության՝ փոնդահատույցի նվազման և արտադրանքի նյութատարության կրճատման դանդաղ տեմպերի հետևանք է: Այսպես, նախորդ երկու հնգամյակներում արդյունաբերության մեջ փոնդահատույցը տարեկան նվազել է շուրջ 0,2, իսկ արտադրանքի նյութատարությունը՝ հազիվ մեկ տոկոսով: Աշխատանքի արտադրողականության աճը նույնպես դրսևորել է նվազման միտում. այն իններորդ հնգամյակի 4,9 տոկոսից հաջորդ հնգամյակներում իջել է 3,9 և 3,2 տոկոսի: Նյութական արտադրության ոլորտում փոնդահատույցը տարեկան կրճատվել է շուրջ մեկ, արտադրանքի նյութատարությունը՝ 0,4 տոկոսով, հասարակական աշխատանքի արտադրողականության աճի տեմպը նույնպես դրսևորել է նվազման միտում, այն իններորդ հնգամյակի 5,7 տոկոսից նվազել է մինչև 4,2 և 3,7 տոկոս: Ակնհայտ է, որ էքստենսիվ վերարտադրությունը հաղթահարելու համար անհրաժեշտ է բարձրացնել փոնդահատույցը, կրճատել արտադրանքի նյութատարությունը, արագացնել աշխատանքի արտադրողականության աճը: Անշուշտ, նյութական արտադրության յուրաքանչյուր ոլորտում արտադրության ինտենսիվացումն ունի ճյուղային առանձնահատկություններ: Սակայն գլխավոր ուղին գիտատեխնիկական առաջադիմության նորագույն նվաճումների արմատավորումն է, սկզբունքորեն նոր տեխնոլոգիական պրոցեսների կիրառումը, արտադրական ապարատի մշտական նորացումը: Իր նշանակությամբ երկրորդ ուղին տնտեսական մեխանիզմի անընդհատ կատարելագործումն է, որը հնարավորություն է ընձեռում լավագույն ձևով կազմակերպել արտադրությունը, կիրառել արդյունավետ տնտեսական խթաններ, նպաստել արտադրողական ուժերի բուռն զարգացմանը, ապահովել նվազագույն ծախսերով առավելագույն արդյունքի ստացումը: Դեռ ավելին, տնտեսական մեխանիզմը կարևոր դեր ունի գիտության ու տեխնիկայի նվաճումները արտադրության մեջ ներդնելու և արդյունավետ կիրառելու գործում: Մինչդեռ էկոնոմիկայի կառավարման վերակառուցումը, գործող տնտեսական մեխանիզմը, որը ձևավորվել է մեր երկրի պատմական զարգացման ամբողջ ընթացքում, արդեն խոչընդոտում է արտադրողական ուժերի զարգացմանը: Այն, ըստ էության, ինչպես նշվեց կուսակցության XXVII համագումարում և հետհամագումարյան պլենումներում, վեր էր ածվել արգելակման մեխանիզմի, ուներ շեշտված ծախսային բնույթ, չէր համապատասխանում էկոնոմիկայի համակողմանի ինտենսիվացմանը: Դա արտահայտվում էր նրանում, որ ձեռնարկությունների գործունեության գնահատման հիմնական ցուցանիշները (արտադրության ծավալ, պայմանագրային պարտավորություններ, շահույթ և այլն) ունեին քանակական բնույթ, աշխատանքի վարձատրության մակարդակը գլխավորապես կախված էր արտադրության ծավալային ցուցանիշներից,



այն գրեթե առնչություն չուներ ինտենսիվացման աստիճանի, արդյունավետության ցուցանիշների հետ: Արտադրության ընդլայնման համար ֆինանսական միջոցները առավելապես ստացվում էին պետական բյուջեից անվերադարձելիության սկզբունքով և անկախ էին ձեռնարկության տնտեսական գործունեության ֆինանսական արդյունքներից, թույլ էին ինքնազարգացման ներքին խթանները, նեղ տնտեսական ներգործության լծակների գործողության շրջանակները և այդպիսով նաև օպտիմալ չէր անհատի, կոլեկտիվի ու հասարակության շահերի զուգակցումը: Ստեղծված վիճակը շտկելու նպատակով կուսակցությունը դիմեց վճռական վերափոխումների: ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումներին համապատասխան, Կենտկոմի 1987 թ. հունիսյան պլենումն առաջադրեց էկոնոմիկայի կառավարման արմատական վերակառուցման գիտականորեն հիմնավորված ծրագիր, իսկ ՍՍՀՄ Գերագույն սովետի հերթական նստաշրջանը հաստատեց պետական ձեռնարկության (միավորման) մասին օրենքը, որում արտացոլված է նոր տնտեսական մեխանիզմի բովանդակությունը:

Տնտեսական մեխանիզմի վերակառուցումը, ի տարբերություն 60—70-ական թվականների կառավարման համակարգի բարեփոխությունների, ունի համալիր բնույթ, վերաբերում է ոչ միայն պլանավորմանը, այլև տնտեսական խթանմանը (այդ թվում՝ գնագոյացմանը, ֆինանսավարկային համակարգին), կառավարման կազմակերպմանը և ընդգրկում է ժողովրդական տնտեսության բոլոր օղակները: Նախկինում բարեփոխումներն ավելի շատ վերաբերվել են կառավարման ճյուղային ու տերիտորիալ սկզբունքների հաջորդափոխությանը, ղեկավարման վերին օղակներին և ավելի քիչ՝ ձեռնարկություններին, դրանք էականորեն չեն շոշափել այնպիսի կարևոր սկզբունքներ, ինչպիսիք են պլանավորման խիստ կենտրոնացվածությունը, ռեսուրսների փոնդավորումը, ձեռնարկությունների ֆինանսական միջոցների զգալի մասի հավաքագրումը պետական բյուջեում, իսկ այնուհետև՝ կապիտալ ներդրումների կենտրոնացված բաշխումը: Կառավարման տնտեսական մեթոդների համեմատությամբ՝ վարչականի գերակշռությունը սկզբունքորեն չի փոխել դրանց համամասնությունը կառավարման համակարգում: Տնտեսական մեխանիզմի արդի վերակառուցումն ընդգրկում է նշված սկզբունքային խնդիրները, առաջադրում նոր լուծումներ: Նոր մեխանիզմի տարբերիչ առանձնահատկություններից մեկը դրա ուղղվածությունն է դեպի էկոնոմիկայի համակողմանի ինտենսիվացումը: Նոր պայմաններում փոխվում են պլանավորման կարգն ու բովանդակությունը: Էականն այն է, որ ձեռնարկություններն իրենք պետք է կազմեն ու հաստատեն հնգամյա և տարեկան պլանները: Բայց այդ պլանները, հատկապես արտադրական ծրագիրը, պետք է մշակել թողարկվող արտադրանքի նկատմամբ հասարակական պահանջմունքների հաշվառման, անհրաժեշտ արտադրական ռեսուրսների և վերջնական տնտեսական արդյունքների հաշվեկշռման, պետական բյուջեի, ֆինանսավարկային համակարգի մյուս օղակների հետ փոխադարձ հարաբերությունների ապահովման, կենտրոնացված պլանային ղեկավարման ու ձեռնարկությունների ինքնուրույնության ճիշտ զուգակցման, վերջապես՝ պլանաչափության և ապրանքադրամական հարաբերությունների նպատակահարմար ու արդյունավետ զուգակցման հիման վրա: Այդ խնդիրների լուծման նպատակով ձեռնարկությունները համապատասխան ճյուղային մինիստրություններից ստանում են հնգամյա պլանի մշակման ելակետային տվյալները՝ ստուգիչ թվերը, պետական պատվերները, երկարաժամկետ տնտեսական նորմատիվները, լիմիտները: «Դրանք,— ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում,— կոչված են միավորումների և ձեռնարկությունների գործունեությունը դնելու այնպիսի պայմանների մեջ, որ նրանց համար շահավետ լինի՝ դեպի ստուգիչ թվերը կողմնորոշվելով, որոնել հասարակական պահանջմունքների առավել արդյունավետ բավարարման ուղիներ»:

Նոր մեխանիզմի կարևոր տարրերից մեկը անցումն է կառավարման վարչական մեթոդներից տնտեսականին, որը մասամբ իրագործվում է երկարաժամկետ նորմատիվների շնորհիվ: Ձեռնարկությունների (միավորումների) համար սահմանվող տնտեսական նորմատիվները կատարում են նոր ստեղծված արդյունքի բաշխման ու վերաբաշխման, բնական և արտադրական ռեսուրսների լավագույն օգտագործումը խթանելու, պետական բյուջեն եկամուտներով ապահովելու, ընդլայնված վերարտադրության արժեքային համամասնությունները կարգավորելու ֆունկցիաներ: Նորմատիվային պլանավորման պայմաններում կբացառվեն ներկայումս լայն տարածում ստացած՝ ըստ ձեռք բերված մակարդակի պլանավորման արատավոր մեթոդի կիրառման հնարավորությունները, հարկ կլինի ոչ թե ստանալ, այլ վաստակել թե՛ աշ-

խատավարձի ֆոնդը, թե՛ տնտեսական խթանման մյուս ֆոնդերը, թե՛ կապիտալ ներդրումները:

Պլանավորման կարգի փոփոխությունը, ձեռնարկություններին իրական տնտեսական ինքնուրույնություն տալը, ռեսուրսների ֆոնդավորման փոխարեն արտադրության միջոցների մեծածախ առևտրի կազմակերպումը, անցումը լրիվ տնտհաշվարկին, ինքնաֆինանսավորմանը, կառավարման դեմոկրատական սկզբունքներին՝ վճռականորեն մեծացնում են նրանց պատասխանատվությունը վերջնական տնտեսական արդյունքների համար: Եթե նախկին կարգի պայմաններում, օրինակ, աշխատավարձի ֆոնդը տրված էր, երաշխավորված էր, ապա աշխատավարձի նորմատիվային կամ մնացորդային եղանակով ձևավորման դեպքում այդ ֆոնդը անմիջականորեն պայմանավորվում է վերջնական տնտեսական արդյունքներով: Նույնը վերաբերում է արտադրության ընդլայնման կամ վերակառուցման համար անհրաժեշտ կապիտալ ներդրումներին. ինքնաֆինանսավորման պայմաններում կապիտալ ծախսերի մեծությունը կախված է ձեռնարկության շահույթից: Այս պայմաններում բարձրանում է ձեռնարկությունների շահագրգռվածությունը՝ ժամանակին նորացնելու թողարկվող արտադրանքը, ապահովելու դրա բարձր որակը, ներդնելու սկզբունքորեն նոր տեխնոլոգիական պրոցեսներ, գտնելու արտադրանքի իրացման ոլորտներ, համապատասխան սպառողներ, ստեղծագործաբար որոնելու արտադրության արդյունավետության բարձրացման ուղիներ, դրա հիման վրա՝ ապահովելու շահույթի, տնտհաշվարկային եկամտի անընդհատ աճ: Ահա թե ինչու արտադրության ինտենսիվացումը օբյեկտիվ տնտեսական անհրաժեշտություն է: Ժամանակակից պայմաններում պակաս արդյունավետ վարչական հարկադրանքին ու կոչերին փոխարինելու են գալիս տնտեսական լծակները:

Նոր տնտեսական մեխանիզմի առանձին տարրերի (ինքնաֆինանսավորում, աշխատավարձի նորմատիվային պլանավորում և այլն) գործնական կիրառությունն ապացուցել է դրանց բարձր արդյունավետությունը: Արդեն հայտնի են մի շարք արտադրական միավորումների տնտեսական բարձր ցուցանիշները, որոնք ձեռք են բերվել ինքնաֆինանսավորման և լրիվ տնտհաշվարկով աշխատանքի պայմաններում: Մասնավորապես այդ ձեռնարկություններում զգալիորեն արագացել են արտադրության ծավալի, աշխատանքի արտադրողականության, շահույթի աճի տեմպերը, բարձրացել է ֆոնդահատույցը, սեփական ֆինանսական աղբյուրների և վարկի տեսակարար կշիռը ծախսերի ընդհանուր ծավալում ձեռք է բերել վճռական դիրքեր: 1987 թ. սկզբից ինքնաֆինանսավորման պայմաններում աշխատում են հանրապետության տարածքում գտնվող չորս միութենական մինիստրությունների (ՍՍՀՄ նավթաքիմիական արդյունաբերության, քիմիական մեքենաշինության, սարքաշինության, ավտոմոբիլային արդյունաբերության) ենթակայության և ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության 60 ձեռնարկություններ: Դրանք կազմում են հանրապետության արդյունաբերական բոլոր ձեռնարկությունների 13,9 տոկոսը, թողարկում են ապրանքային արտադրանքի 28 տոկոսը, իրացվող արտադրանքի 34, ժողովրդական սպառման ապրանքների 46 տոկոսը: Տվյալ ձեռնարկություններում ստացվում է հանրապետության արդյունաբերության շահույթի 23 տոկոսը: Այդ ցուցանիշն ունի աճի միտում, բայց մյուս ցուցանիշների դինամիկան դեռևս գոհացուցիչ չէ: Մասնավորապես չի ապահովվել արտադրության ծավալի, աշխատանքի արտադրողականության աճի արագացումը, նկատվում է արտադրանքի ինքնարժեքի բարձրացում, խախտվել է աշխատանքի արտադրողականության և աշխատավարձի աճի հարաբերակցությունը: Մեծ են ապրանքանյութական արժեքների պաշարները, որոնք նորմատիվին գերազանցում են 2,7 անգամ: Համեմատության համար նշենք, որ ՍՍՀՄ արդյունաբերության մեջ այդ ցուցանիշը կազմում է 1,7:

Իհարկե, կիսամյակային, նույնիսկ մեկ տարվա արդյունքները բավական չեն տնտեսավարման նոր մեթոդների կենսունակությունը գնահատելու համար, մանավանդ որ դեռևս չի ապահովվել կառավարման նոր մեխանիզմի մի շարք կարևորագույն տարրերի (անցումը արտադրության միջոցների մեծածախ առևտրին, լրիվ տնտհաշվարկին, գնագոյացման վերակառուցումը և այլն) համալիր արմատավորումը: Սակայն կառավարման նոր համակարգի բարձր արդյունավետության համար կարևոր է մի շարք սկզբունքային հարցերի ճիշտ լուծումը: Նախ, դա վերաբերում է տնտեսական նորմատիվներին, որոնք նախկինում հաճախ ածանցվում էին արդեն որոշված ռեսուրսների ծավալից (տնտեսական խթանման ֆոնդեր, աշխատավարձի ֆոնդ և այլն) կամ վերաբերում էին միայն դրանց հավելաճային մասին՝ հիմքում դնելով բազիսային ֆոնդը: Այս կարգի նորմատիվներն ի վիճակի չեն սկզբունքորեն փոխել տնտեսավարման բովանդակությունը, արմատավորել կառավարման տնտեսական մեթոդները: Արդյունավետ չեն նաև անհատական նորմաները: Դրանք, ըստ էության, օրինականացնում են տեխնիկական ու տնտեսական միևնույն պայմաններում գտնվող ձեռնարկությունների շահութաբերության խիստ տարբեր մակարդակներով գործունեությունը, երբ հատկապես ցածր եկամտաբեր աշխատանքը արտադրական ռեսուրսների անբավարար օգտագործման հետևանք է: Այս իմաստով նպատակահարմար չէ ֆոնդավճարի նորմատիվները շերտավորել ըստ շահութաբերության մակարդակների, ինչպես դա ընդունված է քիմիական մեքենաշինության ձեռնարկություններում: Այդ ճյուղում արդյունավետ աշխատող ձեռնարկությունները վճարում են ֆոնդավճար, իսկ վնասով կամ պակաս շահութաբերությամբ (7,7 տոկոսից ցածր) աշխատողներն ազատվում են դրանից (տե՛ս «Вопроси экономики», № 7, 1987, стр. 11): Նման կարգը բարձր ինտենսիվությամբ աշխատող ձեռնարկություններին դնում է աննպաստ պայմանների մեջ, իսկ արդյունավետության ցածր ցուցանիշներ ունեցողների համար ստեղծում «ջերմոցային» պայմաններ: Նորմատիվների սահմանման այսպիսի կարգը, անշուշտ, չի համապատասխանում կառավարման տնտեսական մեթոդների ոգուն: Փորձը ցույց է տալիս, որ դրանք արդյունավետ կարող են լինել, եթե միասնական են ու երկարաժամկետ: Միևնույն ճյուղի և գոտու ձեռնարկությունները գտնվում են կամ պարտավոր են լինել տեխնիկատնտեսական գրեթե միևնույն պայմաններում: Հատկապես նկատի է առնվում արտադրության տեխնիկական զինվածության, աշխատողների մասնագիտական-որակավորման մակարդակը: Իսկ տնտեսական գործունեության արդյունքների տարբերությունները մեծ մասամբ արտադրության կազմակերպման մակարդակի շեղումների հետևանք են: Ուստի միասնական նորմատիվների սահմանումը ոչ միայն բխում է տնտեսավարման ելակետային հավասար պայմաններից, այլև կոչված է խթանելու բոլոր ձեռնարկություններում արտադրության տեխնիկական զինվածության, աշխատանքի կազմակերպման մակարդակի բարձրացումը: Նման նորմատիվներն ունեն մեկ այլ առավելություն ևս. միասնական են հասարակության իրական պահանջները բոլոր ձեռնարկությունների նկատմամբ:

Տնտեսական նորմատիվների արդյունավետությունը կախված է նաև դրանց ընդգրկման ոլորտից և քանակական մեծությունից: Նպատակահարմար է, որ դրանք վերաբերվեն ոչ թե հավելաճին, այլ ողջ արդյունքներին, այլապես չի հաղթահարվի ձեռք բերված մակարդակի հիման վրա պլանավորման պրակտիկան: Նորմատիվների մեծությունը. ամենից առաջ կախված է վերարտադրության արժեքային համամասնությունների, պետության կենտրոնացված և ձեռնարկությունների ինքնազարգացման համար անհրաժեշտ եկամուտների ճիշտ հարաբերակցության ապահովման պահանջից: Այսպիսով, տնտեսավարման նոր պայմաններում շատ կարևոր նշանակություն է ստանում տնտեսական նորմատիվների բազմակողմանի գիտական հիմնավորվածությունը:

Մյուս կարևոր հարցն առնչվում է շահույթի ցուցանիշի հետ, որի նշանակությունը լրիվ տնտհաշվարկի պայմաններում բարձրանում է: Ինչպես վկայում է 60—70-ական թվականների տնտեսավարման փորձը, շահույթի մեծ ծավալ ստանալու համար ձեռնարկությունները ձգտում էին թողարկել շահութաբեր արտադրատեսակներ՝ դրա աճն ապահովելով առաջին հերթին արտադրության ընդլայնման, ոչ թե ինքնարժեքի իջեցման հաշվին, նկատվում էր գների աճի միտում: Այդ երևույթը բնորոշ էր նաև 1981—1985 թվականներին:

Տասներորդ հնգամյակում արտադրանքի իրացումից ստացված շահույթի հավելաճի 23—25,6, իսկ տասնմեկերորդ հնգամյակում՝ 30 տոկոսը ստացվել է ինքնարժեքի իջեցման հաշվին: Տասնմեկերորդ հնգամյակում ժողովրդական տնտեսության ճյուղերում շահույթն աճել է 44,4 տոկոսով, իսկ արտադրության արդյունավետությունը դրսևորել է նվազման միտում: Պլանավորման նոր կարգի պայմաններում, երբ ձեռնարկությունների դերը մեծանում է արտադրանքի անվանակարգի ընտրության գործում, տեսականորեն չի բացառվում պակաս շահութաբեր, բայց պահանջարկ վայելող արտադրատեսակների դուրս մնալը հնգամյա պլաններից: Հավանաբար, նյութատեխնիկական մատակարարման, առևտրական կազմակերպությունները, տեղական սովետական մարմինների հետ համատեղ, կստանձնեն պարտականություն պատվե-

րային սկզբունքով ապահովելու պահանջարկ վայելող արտադրատեսակների արտադրությունը: Սոցիալիզմի պայմաններում շուկան իր սահմանափակ շրջանակներով չի լուծում այդ պրոբլեմը, այն չի կարող փոխարինել պլանին: Շուկայի շրջանակների որոշ ընդլայնումը հիմնականում արտադրության միջոցների մեծածախ առևտրի հաշվին կատարվում է պլանին անպայմանորեն գերադասություն տալու պայմաններում, ուստի արտադրանքի տարբեր տեսակների նկատմամբ պահանջը նպատակահարմար է արտացոլել պլանում: Այդ հարցում, անշուշտ, մեծ է ձեռնարկությունների, իրացնող ու առևտրական կազմակերպությունների դերը: Առանձին ուշադրություն են պահանջում նաև ինքնարժեքի իջեցումն ապահովելու, գների անհիմն փոփոխությունները (առաջին հերթին՝ բարձրացումը) կանխելու խնդիրները:

Հատուկ քննարկման պրոբլեմ է արտադրության ծավալի և արդյունավետության բնութագրման նպատակով արժեքային ցուցանիշների ընտրությունը: Ներկայումս այդ նպատակով զուգահեռաբար կիրառվում է ապրանքային, իրացված և նորմատիվային զուտ արտադրանքը: Դրանցից միջանցիկ է ապրանքային (համախառն) արտադրանքի ցուցանիշը, որով հաշվարկվում է արդյունավետության մակարդակը: Ինչպես այդ, այնպես էլ նորմատիվային զուտ արտադրանքը չեն նպաստում նյութական ծախսերի կրճատմանը, դրանք ուղղված չեն էկոնոմիկայի ինտենսիվացմանը: Իրացված արտադրանքը, ինչպես հայտնի է, ոչ թե արտադրական, այլ ավելի շատ առևտրաֆինանսական ցուցանիշ է: Ուստի, որպես միջանցիկ և միասնական արժեքային ցուցանիշ, առավել նպատակահարմար է կիրառել զուտ արտադրանքը, որի հիմնական ֆունկցիան արտադրության ծավալի և արդյունավետության մակարդակի բնութագրումն է:

Ընդհանուր առմամբ, նոր տնտեսական մեխանիզմը, համապատասխանելով արտադրողական ուժերի արդի մակարդակին, լայն հնարավորություններ է ընձեռում գիտատեխնիկական առաջադիմության արագացման, մարդկային գործոնի ակտիվացման, դրանց հիման վրա արտադրության ինտենսիվացման, հասարակական արտադրության բարձր տեմպերով զարգացման, սոցիալական խնդիրների լուծման համար:

---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՏԱԿՄԱՆ ԵՎ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱՃԻ ՓՈԽԱԴԱՐՁ ԿԱՊԸ

**Վ. ՆԵՐԿԱՐԱՐՅԱՆ**

Երկրի ժողովրդական տնտեսության վերակառուցման անհրաժեշտությունը նոր խնդիրներ է առաջադրում տնտեսագիտությանը: Պահանջվում է շրջադարձ կատարել դեպի պրակտիկա, ամենից առաջ՝ դեպի սոցիալիզմի կատարելագործման տեսական հարցերը, բարձրացնել հետազոտությունների որակը՝ երկրի արտադրողական ուժերի բնույթին ու մակարդակին արտադրական հարաբերությունների համապատասխանեցման, ժողովրդական տնտեսության պլանավորման, կառավարման և այլ բնագավառներում: Պրոբլեմների այդ համակարգում, անշուշտ, տեսական ու գործնական կարևոր նշանակություն ունի սոցիալիստական կուտակման և հասարակական աշխատանքի արտադրողականության աճի փոխադարձ կապի ու դրա ամրապնդման ուղիների բացահայտումը:

Արտադրված հասարակական ամբողջական արդյունքից հասարակությունը փոխհատուցում է օգտագործված աշխատանքի միջոցների մաշվածքը և արտադրության պրոցեսում ծախսված աշխատանքի առարկաները: Մնացած մասը՝ զուտ արդյունքը (արժեքային արտահայտությամբ՝ ազգային եկամուտը), ընդգրկում է անհրաժեշտ և հավելյալ արդյունքը: Անհրաժեշտ արդյունքը լրիվությամբ ծախսվում է աշխատուժի վերարտադրության վրա, ներառելով բոլոր այն նյութական բարիքները, որոնք տվյալ պայմաններում բավարարում են արտադրության աշխատողների և նրանց ընտանիքների կենսական պահանջմունքները, համակողմանի զարգացումը, ապահովում ծախսված աշխատուժի վերարտադրությունը: Արտադրության ընդլայնումը կարող է իրագործվել միայն հավելյալ արդյունքի հաշվին: Հասարակությունն իր չափերով անընդհատ աճող հավելյալ արդյունքի մի մասն օգտագործում է արտադրության ծավալի մեծացման համար, կատարում կուտակում: Հետևաբար, հավելյալ արդյունքի մի մասի արտադրողաբար կամ արտադրության ընդլայնման համար օգտագործումը արտադրական կուտակում է, որն ընդլայնված վերարտադրության անհրաժեշտ պայմանն է:

Կուտակումը չի կարող իրագործվել անհրաժեշտ արդյունքի հաշվին: Սակայն, ըստ որոշ տնտեսագետների, սոցիալիզմի ժամանակ կուտակման համար օգտագործվում է նաև անհրաժեշտ արդյունքի որոշ մասը, մասնավորապես՝ պետական փոխառությունները, բնակչությունից գանձվող հարկերը, բնակչության խնայողական դրամարկղներում պահվող դրամական ավանդները, անձնական ապահովագրության միջոցները և այլն:

Նյութական արտադրության աշխատողներին տրվող դրամական միջոցները դեռևս անհրաժեշտ արդյունք չեն: Չպետք է մոռանալ անվանական և իրական աշխատավարձերի տարբերությունը: Պետությունը ինչպես նյութական, այնպես էլ ոչ նյութական արտադրության ոլորտի աշխատողներից զանազան հարկեր է գանձում,

---

*ՆԵՐԿԱՐԱՐՅԱՆ ՎԼԱԴԻՄԻՐ ՍՄԲԱՏԻ— Տնտեսագիտության դոկտոր, Երևանի Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի քաղաքատնտեսության ամբիոնի պրոֆեսոր:*

ժամանակավորապես օգտագործում նրանց դրամական խնայողությունները և այլն: Սակայն այդ միջոցները չպետք է շփոթել անհրաժեշտ արդյունքի հետ, որը, նյութական բարիք արտադրողների աշխատուժի վերարտադրությունը և նրանց համակողմանի զարգացումը ապահովող կենսամիջոցների քանակն է: Դրանք կարող են օգտագործվել և՛ կուտակման, և՛ սպառման համար, բայց ժամանակավորապես փոխառված այդ միջոցները փոխհատուցվում են հավելյալ արդյունքի հաշվին: Անհրաժեշտ է նկատի ունենալ նաև այն, որ վերջինիս մի մասն օգտագործվում է կուտակման, իսկ մյուսը՝ հասարակական այլ կարիքների՝ կրթության, կուլտուրայի, առողջապահության, գիտության զարգացման, կառավարման ապարատի պահպանման, շրջանառության ոլորտի զուտ ծախսերի, երկրի պաշտպանության ամրապնդման և սպառման այլ կարիքների բավարարման համար: Ինչ վերաբերում է բնակչությունից գանձվող հարկերին, պետական փոխառություններին, դրամաիրային վիճակախաղերին և այլն, ապա դրանք տվյալ պայմաններից բխող երևույթներ են և ժամանակի ընթացքում կվերանան: Հետևաբար, մենք համամիտ ենք այն տնտեսագետների հետ, որոնց կարծիքով սոցիալիստական կուտակման միակ աղբյուրը հավելյալ արդյունքն է, որը կոչված է բավարարելու և՛ կուտակման, և՛ սպառման որոշ պահանջմունքները:

Սոցիալիզմի ժամանակ հավելյալ արդյունքը չի հակադրվում անհրաժեշտ արդյունքին: Հավելյալ արդյունքի և կուտակման ֆոնդի կազմավորումն այստեղ կապված չէ հակամարտ հարաբերությունների հետ: Սոցիալիստական կուտակումը պլանաչափորեն իրագործվում է հօգուտ ամբողջ հասարակության շահերի, նրա բարեկեցության անընդհատ բարձրացման:

Կուտակելի են այն արդյունքները, որոնք կարող են կիրառվել արտադրության պրոցեսում, ինչպես նաև այն արդյունքները, որոնք ծառայում են որպես կենսամիջոցներ: Տարեկան հավելյալ աշխատանքի մի մասը անհրաժեշտ է գործադրել արտադրությունն ընդլայնելու, լրացուցիչ միջոցներ արտադրելու և նոր աշխատուժեր ներգրավելու նպատակով, եթե հնարավոր չէ առկա աշխատուժի էքստենսիվ և ինտենսիվ օգտագործումը (աշխատանքային օրվա տևողության երկարացումն ու աշխատանքի ինտենսիվության բարձրացումը) լրացուցիչ կենսամիջոցներ արտադրելու համար: Կ. Մարքսը գրում է. «Կուտակելու համար պետք է հավելյալ արդյունքի մի մասը կապիտալ դարձնել: Բայց, առանց հրաշք գործելու, կարելի է կապիտալ դարձնել միայն այն առարկաները, որոնք կարող են կիրառվել աշխատանքի պրոցեսում, այսինքն՝ արտադրության միջոցները և այնուհետև, այնպիսի առարկաներ, որոնք կարող են բանվորի կյանքը պահպանել, այսինքն՝ կենսամիջոցները: Հետևաբար, տարեկան հավելյալ աշխատանքի մի մասը պետք է գործադրվի արտադրության լրացուցիչ միջոցներ և կենսամիջոցներ պատրաստելու վրա» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. I, էջ 608):

Սակայն մեր վիճակագրության և պլանավորման պրակտիկայում կուտակման ֆոնդի մեջ չեն ընդգրկում դրա այն մասը, որը տրամադրվում է լրացուցիչ սպառման առարկաների արտադրությանը, քանի որ սպառման առարկաների նշված հավելաճը հատկացվում է փոխհատուցման ֆոնդին: Մինչդեռ այդ հավելաճը վերաբերում է արտադրական կուտակմանը:

Անդրադառնալով զուտ արդյունքին՝ անհրաժեշտ է պարզել, թե ինչից է կախված դրա մեծությունը և ինչպես է որոշվում հավելյալ արդյունքի տեղը նոր ստեղծված ազգային եկամտի մեջ:

Հայտնի է, որ ազգային եկամտի մեծությունը պայմանավորված է երկու գործոնով. առաջին, նյութական արտադրության մեջ կիրառվող աշխատանքի քանակից. աշխատողների թվից, աշխատաժամանակի տևողությունից և աշխատանքի ինտենսիվությունից, երկրորդ, նյութական արտադրության մեջ զբաղվածների արտադրողականության մակարդակից, այսինքն՝ միավոր միջին ժամանակի ընթացքում արտադրվող արդյունքների քանակից: Ընդ որում վճռականը վերջին գործոնն է:

Հավելյալ արդյունքի տեղն ազգային եկամտի մեջ պայմանավորված է արտադրական հնարավորություններով և ժողովրդի բարեկեցության բարձրացման նպատակով հասարակական արտադրության հետագա ընդլայնման օբյեկտիվ պահանջմունքներով:

Աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա արտադրության աճի արագացման վերաբերյալ կուսակցության կուրսի իրականացումը մեր հասա-



րակությանը հնարավորություն է տալիս ունենալ մեծ ծավալի հավելյալ արդյունք, կուտակման մշտապես աճող աղբյուր:

Ընդլայնված վերարտադրության պայմաններում ամբողջ նոր ստեղծված արդյունքը օգտագործվում է սպառման և կուտակման համար: Սպառման ֆոնդը ծառայում է ամբողջ հասարակության նյութական և կուլտուրական պահանջմունքների բավարարմանը: Այն գոյանում է ամբողջ անհրաժեշտ արդյունքի և հավելյալ արդյունքի մի մասի հաշվին, որն անհրաժեշտ է ոչ արտադրական կարիքների համար:

Կուտակման ֆոնդը հավելյալ արդյունքի այն մասն է, որն օգտագործվում է արտադրության ընդլայնման համար: Այդ ֆոնդի մեծությունը որոշվում է առկա միջոցների և ուժերի, մասամբ նաև հավանականության տեսության հիման վրա: Հավելյալ արդյունքի տվյալ զանգվածի դեպքում այդ մասերից մեկն այնքան մեծ կլինի, որքան ավելի փոքր է մյուսը: Այլ հավասար պայմաններում այդ բաժանման հարաբերակցությամբ է որոշվում կուտակման մեծությունը: Ընդ որում վերջինս անհրաժեշտաբար կախված է հավելյալ արդյունքի բացարձակ չափերից, որի հարաբերական մեծությունն արտահայտում է կուտակման նորման: Այն կուտակման ֆոնդի հարաբերությունն է ազգային եկամտին, ինչպես նաև հավելյալ արդյունքի արժեքին՝ արտահայտած տոկոսներով: Առաջինը ցույց է տալիս կուտակման ֆոնդի բաժինը ազգային եկամտի, իսկ երկրորդը՝ կուտակման ֆոնդի բաժինն ամբողջ հավելյալ արդյունքի մեջ, այսինքն՝ այն, թե հավելյալ արդյունքի ո՞ր մասն է օգտագործվում կուտակման և ո՞ր մասը սպառման համար՝ տոկոսային արտահայտությամբ:

Սոցիալիզմի ժամանակ կուտակման և սպառման ֆոնդերը ունեն սոցիալական նույն բնույթը և չեն գտնվում հակամարտ հակասության մեջ: Սակայն անհրաժեշտ է հաշվի առնել դրանց օպտիմալ հարաբերակցության անհրաժեշտությունը, այսինքն՝ ապահովել ինչպես ընդլայնված վերարտադրությունը, այնպես էլ սպառման մշտական աճը: Հասարակության կենսամակարդակի բարձրացումը հնարավոր չէ առանց արտադրողական ուժերի զարգացման, առանց կուտակման: Սակայն արտադրության զարգացումը, դրա տեմպերի արագացումը ևս հնարավոր չէ առանց աշխատողների շահագրգռվածության բարձրացման:

Կուտակման և սպառման ֆոնդերի հարաբերակցությունն այլ կերպ է ստեղծվում հասարակական զարգացման տարբեր պայմաններում և փուլերում՝ սոցիալիստական զանազան երկրներում: Այդ մասին են վկայում կուտակման բաժնի և նորմայի փոփոխություններն ազգային եկամտի մեջ՝ երկրում և մեր հանրապետությունում: ՍՍՀՄ-ում կուտակման նորման 1951—61 թթ. կազմել է 25—26, 1970 թ.՝ 29,5, 1980 թ.՝ 23,9, 1985 թ.՝ 26,5 տոկոս: Հայկական ՍՍՀ-ում կուտակման նորման 1961 թ. կազմել է 30,5, 1970 թ.՝ 33,1, 1980 թ.՝ 23,8, 1985 թ.՝ 28,8 տոկոս: Տասներկուերորդ հնգամյակում միութենական ազգային եկամտի մեջ կուտակման ֆոնդի բաժինը կհասցվի 27,6 տոկոսի, հանրապետությունում՝ 28 տոկոսի:

Այս թվերը վկայում են, որ կուտակման և սպառման ֆոնդերի հարաբերակցությունը, որոշ բացառություններով, գործնականում ՍՍՀՄ-ում կազմավորվում է 26—27:74—73 և ՀՍՍՀ-ում 28—33:72—67-ի սահմաններում: Այդ հարաբերակցության որոշակի կայունությունը հասարակությանը հնարավորություն է տալիս ապահովել վերարտադրության հաստատուն տեմպեր, որը համապատասխանում է սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի էությանը:

Տնտեսագիտական գրականության մեջ, ինչպես նաև սոցիալիստական պլանավորման ու վիճակագրական հաշվառման պրակտիկայում, կուտակման ֆոնդին են վերագրում նաև ռեզերվների աճը: Մինչև 1950-ական թվականները ռեզերվները դիտվել են ինքնուրույն, կուտակման և սպառման ֆոնդերից զատ, բայց հետո միացվել են կուտակման ֆոնդին: Լայն իմաստով կուտակման ֆոնդի մեջ են ընդգրկում նաև ոչ արտադրական նշանակության ֆոնդերի ընդլայնմանը հատկացվող ռեսուրսները և այն բաժանում արտադրական ու ոչ արտադրական կուտակման ֆոնդերի: Այսպիսով, կուտակման միջոցները, իբր, օգտագործվում են արտադրական և ոչ արտադրական հիմնական ֆոնդերի, նյութական շրջանառու միջոցների ու ռեզերվների համար:

Մինչդեռ Կ. Մարքսը «Գոթայի ծրագրի քննադատությունը» աշխատության մեջ արտադրության ընդլայնման ֆոնդը և ռեզերվային կամ ապահովության ֆոնդը (դժբախտ պատահարներից, տարերային աղետներից և այլն) ապահովագրելու համար, դիտում է որպես առանձին, ինքնուրույն ֆոնդեր (տե՛ս Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, 2 հատորով, հ. 2, էջ 16): Այդ առանձնացումը ճիշտ է նաև այն տե-

սակետից, որ ռեզերվային կամ ապահովագրական ֆոնդն օգտագործվում է ոչ միայն կուտակման, այլ նաև սպառման համար: Այն բաղկացած է արտադրության միջոցների և սպառման առարկաների որոշակի զանգվածից և կոչված է ապահովելու սոցիալիստական վերարտադրության ամբողջ պրոցեսի կայունությունը:

Ոչ նյութական արտադրության ոլորտի համար կատարվող ծախսերը համարվում են սպառման առարկաներ և մտցվում են սպառման ֆոնդի մեջ: Նշանակում է՝ այդ ոլորտի նյութատեխնիկական բազան ունի սպառողական նշանակություն, որովհետև այդտեղ կատարվում են բազմատեսակ ծառայություններ և ստեղծվում հոգևոր բարիքներ: Հետևաբար, այդ բազայի ընդլայնումն անձնական երկարատև սպառվող առարկաների քանակական ու որակական աճ է, ազգային հարստության կուտակում, որն ապահովում են քաղաքացիական շինարարությունը և նյութական արտադրության այլ ճյուղերը արտադրական կուտակման միջոցով: Մեր կարծիքով, կուտակման բաժանումն արտադրականի և ոչ արտադրականի ճիշտ չէ: Ստացվում է, որ ոչ նյութական արտադրության ոլորտի նյութատեխնիկական բազայի ընդլայնման նպատակով քաղաքացիական շինարարության և նյութական այլ միջոցների արտադրության ընդլայնումը նյութական արտադրության ընդլայնում չէ և, հետևաբար, այդ ընդլայնման համար նախատեսվող կուտակման միջոցներն արտադրական կուտակման ֆոնդ չեն: Մինչդեռ այդ պրոցեսները նյութական արտադրություն են և այդտեղ կատարվող կուտակումն արտադրական կուտակում է: Իրականում մեծանում է ոչ նյութական արտադրության ընդլայնման համար անհրաժեշտ միջոցների արտադրությունը: Տվյալ դեպքում քաղաքացիական շինարարության և մյուս ճյուղերի առանձնահատկությունն այն է, որ ոչ նյութական արտադրության նյութատեխնիկական բազան մեծացնելու նպատակով հատկացվող միջոցներով դրա ընդլայնումը կատարվում է շինանյութերի և աշխատանքի այլ առարկաների արտադրության ընդլայնման և դրանց խնայողությունների հաշվին:

Կուտակման ֆոնդն ազգային եկամտի մի մասն է, հետևաբար, դրա չափերն ամենից առաջ կախված են այն պայմաններից, որոնք որոշում են ազգային եկամտի ծավալը, այսինքն՝ կիրառվող աշխատանքի զանգվածից ու որակից և աշխատանքի արտադրողականությունից:

Աշխատօրվա տևողությունը կապված է աշխատուժի վերարտադրության ծախսերի հետ: Սոցիալիզմն ապահովում է ազատ, համակողմանի զարգացած արտադրողների աշխատուժի վերարտադրությունը: Հասարակությունը, որոշելով աշխատօրվա սահմանները, հաշվի է առնում ոչ միայն մարդու ֆիզիկական պահանջմունքները բավարարելու համար անհրաժեշտ ժամանակը, այլ նաև այն ժամանակը, որը պահանջվում է հասարակական գործունեության, կուլտուրական հաղորդակցման, մտավոր և ֆիզիկական զարգացման համար:

Սոցիալիզմի կատարելագործման ու զարգացման ընթացքում պայմաններ են ստեղծվում աշխատօրվա և աշխատանքային շաբաթվա տևողության կրճատման համար: Այն կարգավորվում է մարդու բազմակողմանի զարգացման բնական պահանջմունքներով: Աշխատաժամանակի տևողության կրճատման նյութական հիմքը արտադրողականության բարձրացումն է: Տվյալ աշխատօրվա սահմաններում աշխատանքի ծախսումների մեծությունը կազմում է դրա ինտենսիվությունը: Սոցիալիստական տնտեսավարության պայմաններում կարևոր նշանակություն ունի աշխատանքի ինտենսիվության բարձրացումը, քանի որ այն հանգեցնում է աշխատաժամանակի ռացիոնալ օգտագործմանը և աշխատուժի պահանջի կրճատմանը: Սակայն սոցիալիզմը ենթադրում է աշխատանքի ինտենսիվության բարձրացումը մինչև հասարակական նորմալ մակարդակին, աշխատուժի վերականգնման սահմաններում նրա ծախսումների փոխհատուցմանը:

Արտադրության տեխնիկայի զարգացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման համեմատաբար ցածր մակարդակի պայմաններում անհրաժեշտ է լինում բացարձակորեն մեծացնել նյութական արտադրության աշխատողների թիվը: Այդ պրոցեսը տեղի է ունենում այնքան ժամանակ, քանի դեռ արտադրությունը գերազանցապես զարգանում է էքստենսիվ ուղիով: Սակայն, երբ արտադրությունը սկսում է զարգանալ հիմնականում ինտենսիվ ուղիով, այդ դեպքում արդեն հնարավոր է դառնում արտադրությունն ընդլայնել առանց աշխատողների թվի մեծացման, հետագայում նաև այդ թվի բացարձակ կրճատման: Մինչև 1980-ական թվականների կեսերը երկրի նյութական արտադրության մեջ աշխատողների թիվն աճում էր բացարձակորեն: Տասներկուերորդ հնգամյակում տնտեսական խնդիրները լուծվում են



առանց աշխատողների թվի աճի, իսկ մինչև 2000 թ. ընկած ժամանակաշրջանում այդ պրոցեսը կընթանա նյութական արտադրության աշխատողների թվի բացարձակ կրճատման պայմաններում: Արտադրության ամբողջ հավելաճը կստացվի աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին:

Տնտեսական զարգացման ժամանակակից փուլում, երբ կուսակցությունը վերցրել է էկոնոմիկան ինտենսիվ ուղիով զարգացնելու կուրս, ավելի ու ավելի է ուժեղանում սոցիալիստական կուտակման և աշխատանքի արտադրողականության բարձրացման փոխադարձ կապի ամրապնդման անհրաժեշտությունը, քանի որ աշխատանքի արտադրողականության բարձրացումը սոցիալիստական կուտակման աղբյուրն ու հետևանքն է:

Որքան նպատակահարմար իրագործվի աշխատանքի պրոցեսը, այնքան բարձր կլինի արտադրողականությունը, այսինքն՝ արդյունավետ կօգտագործվեն աշխատուժն ու արտադրության միջոցները: Արտադրողականության բարձրացմամբ ազգային եկամտի արժեքային մեծությունը չի փոխվում, քանի որ միևնույն աշխատանքը հավասար ժամանակամիջոցում միշտ արժեքի միևնույն մեծությունն է ստեղծում: Բայց եթե ապրանքների գները դրան համապատասխան չեն իջնում, մնում են անփոփոխ կամ նույնիսկ աճում են, ապա այդ դեպքում կենդանի աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ ինքնըստինքյան մեծանում է ազգային եկամտի արժեքային ծավալը: Այդ դեպքում աճում է նաև ազգային եկամտի ֆիզիկական ծավալը: Այդ երկուսի միջև ուղիղ համեմատական կախվածություն գոյություն ունի: Օրինակ, կենդանի աշխատանքի արտադրողականության կրկնակի բարձրացման դեպքում նույն չափով աճում է ազգային եկամտի ֆիզիկական ծավալը, որը անփոփոխ կամ համեմատելի գներով հաշվարկված ազգային եկամուտն է:

Ամբողջական աշխատանքի արտադրողականության բարձրացումը ենթադրում է կենդանի և առարկայացած աշխատանքի միևնույն ծախսումներով արտադրվող արդյունքների քանակի ավելացում և, հետևաբար, միավոր արտադրանքի արտադրության վրա ծախսվող աշխատաժամանակի կրճատում կամ որ միևնույնն է՝ արտադրության պրոցեսի արդյունավետության բարձրացում, արտադրության ինտենսիվացում:

ՍՍՀՄ պլանավորման և վիճակագրական հաշվառման պրակտիկայում հաշվարկվում է միայն կենդանի աշխատանքի արտադրողականությունը: Սոցիալիզմի առավելություններն ապահովում են կենդանի աշխատանքի արտադրողականության առավել բարձր տեմպեր: Հասարակական աշխատանքի արտադրողականության աճի տարեկան միջին տեմպերը 1951—1980 թթ. ՍՍՀՄ-ում երեք անգամ բարձր էին, քան ԱՄՆ-ում: Մեր երկրում վերջին հնգամյակի տարիներին ազգային եկամտի հավելաճի 80—90 տոկոսը ապահովվել է աշխատանքի արտադրողականության հաշվին:

ՍՄԿԿ XXVII համագումարում նշվեց, որ սոցիալիզմի արմատական պրոբլեմների լուծման մայրուղին վերջին հաշվով համրային աշխատանքի արտադրողականության բարձրացումն է: Նախատեսվում է տասներկուերորդ հնգամյակում հանրային աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 20—23 տոկոսով: Փաստորեն առաջին անգամ ազգային եկամտի, արտադրական ճյուղերի արտադրանքի ամբողջ հավելաճը նախատեսված է ստանալ արտադրողականության բարձրացման հաշվին: Դա ընթացիկ հնգամյակի սկզբունքային առանձնահատկություններից է: Խնդիր է դրվում մինչև 2000 թ. ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 2,3—2,5 անգամ: Դրա շնորհիվ արտադրության և ազգային եկամտի գրեթե կրկնակի աճը առաջին անգամ կապահովվի աշխատանքային ռեսուրսների պահանջարկի միաժամանակյա կրճատմամբ հանդերձ:

Աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա ազգային եկամտի աճը հնարավորություն է տալիս նույն կամ փոփոխվող նորմայի պայմաններում շարունակ մեծացնել սոցիալիստական կուտակման բացարձակ չափերը: Այդ մասին են վկայում կապիտալ ներդրումների ծավալի անընդհատ աճը: Եթե երկրում 1970 թ. կատարվել են 80,6 **մլրդ** ռուբլու կապիտալ ներդրումներ, ապա 1985 թ.՝ 179,5 **մլրդ** ռուբլու: Մեր հանրապետությունում՝ համապատասխանաբար՝ 932 և 1606 **մլն** ռուբլու: Ընթացիկ հնգամյակում ՍՍՀՄ-ում կատարվելու են 984 **մլրդ** ռուբլու կապիտալ ներդրումներ, որից միայն արտադրական վերակառուցման և տեխնիկական վերազինման համար՝ 323 **մլրդ** ռուբլու, ավելի շատ, քան նախորդ տասը

տարում: 2000 թվականին կկրկնապատկվի արտադրական պոտենցիալը՝ դրա որակական վերափոխմամբ հանդերձ: Կուտակման ֆոնդի հարաբերական մեծությունը կարող է նույնիսկ աճել ի հաշիվ սպառման ֆոնդի, մինչդեռ արդյունքների էժանացմամբ հասարակությունը ստանում է ավելի շատ բարիք, քան առաջ: Արտադրական ֆոնդերի արժեքն արտահայտվում է ավելի մեծ քանակությամբ արտադրության միջոցների մեջ: Հետևաբար, կազմավորվող հավելյալ արդյունքի նույն կամ նվազող արժեքի դեպքում տեղի է ունենում արագացած կուտակում: Վերարտադրության չափերն ընդլայնվում են նյութապես:

Աշխատանքի արտադրողականության բարձրացումն ազդում է նաև արտադրության պրոցեսի մեջ գտնվող արտադրության նյութական տարրերի վրա: Արտադրական ֆոնդերի մի մասը՝ մեքենաները, գործիքները, սարքավորումը և այլն, սպառվում, հետևաբար վերարտադրվում կամ փոխարինվում են նույն տեսակի նոր նմուշներով՝ քիչ թե շատ երկար ժամանակամիջոցում: Բայց յուրաքանչյուր տարի այդ աշխատամիջոցների մի մասը մաշվում, հասնում է իր արտադրողական ֆունկցիայի վերջնանպատակին և դուրս գալիս արտադրությունից: Եվ եթե աշխատանքի արտադրողականությունը բարձրանում է այն ճյուղերում, որտեղ արտադրվում են այդ աշխատամիջոցները, իսկ այն անընդհատ բարձրանում է գիտատեխնիկական առաջընթացի հետ, ապա այդ դեպքում հին մեքենաները, գործիքները, սարքավորումները փոխարինվում են ավելի արդյունավետ, ավելի էժան, նոր աշխատամիջոցներով: Հին արտադրական հիմնական ֆոնդերը վերարտադրվում են ավելի արտադրողական ձևով: Դրա հետ մեկտեղ հին ֆոնդերի առանձին մասերը միշտ փոփոխվում են, շարունակ արդիականացվում:

Արտադրական ֆոնդերի մյուս մասը՝ շրջանառու ֆոնդերի տարրերը, արտադրության տեխնիկայի ու տեխնոլոգիայի զարգացման և նոր մեթոդների կիրառման շնորհիվ էժանանում են՝ միաժամանակ ազդելով կուտակման ֆոնդի ու առկա շրջանառու ֆոնդերի վրա: Հետևաբար, աշխատանքի արտադրողականության բարձրացումը աշխատանքի տվյալ քանակով շարժման մեջ է դնում ավելի մեծ արժեքի ու զանգվածի արտադրության միջոցներ, ավելի շատ արտադրության միջոցներ են փոխարկվում արդյունքի, որի մեջ հին արժեքի ավելի մեծ քանակ է պարունակվում:

Ինչպես նշվեց, հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացումը ոչ միայն սոցիալիստական կուտակման աղբյուրն է, այլև դրա հետևանքը: Եթե ընդլայնված վերարտադրությունը հիմնականում էքստենսիվ է, Կ. Մարքսի խոսքերով ասած, «արտադրության դաշտը» ընդլայնվում է առանց դրա տեխնիկական հիմքերը փոփոխելու, ապա այդ դեպքում, այլ հավասար պայմաններում (աշխատողների հմտության, աշխատանքի ինտենսիվության ու կազմակերպման անփոփոխ պայմաններում և այլն), արտադրողականությունը մնում է նույնը: Իսկ ինտենսիվ, ընդլայնված վերարտադրության դեպքում այն բարձրանում է: Հետևաբար, ճիշտ չէ հասարակական աշխատանքի արտադրողականության և արտադրական կուտակման աճի միջև ուղղակի կապ դնելը: Այդպիսի կապ առաջանում է, եթե արտադրությունը զարգանում է հիմնականում ինտենսիվ ուղիով:

Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման արդի պայմաններում ուժեղանում է արտադրության ինտենսիվացման անհրաժեշտությունը: Գիտատեխնիկական առաջընթացը և սոցիալիզմի առավելությունների ծավալումը խթանում են աշխատանքի արտադրողականության բարձրացումը: Սակայն դրա հետ մեկտեղ մի շարք կոնկրետ, պատմական գործոններ (բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատություններում արտադրությունից կտրված սովորող աշխատանքային տարիքի անձանց թվի մեծացում, աշխատանքային ռեսուրսների հաշվեկշռի փոփոխություն հօգուտ գիտության, կուլտուրայի և ոչ նյութական արտադրության ոլորտի, հումքի պակաս, հարուստ և դժվարամատչելի աղբյուրների յուրացման կապակցությամբ բնական ռեսուրսների արդյունահանման աշխատանքային ծախսումների մեծացում և այլն) արգելակում են արտադրության աճը: Այդ պատճառով անհրաժեշտություն է առաջանում անցնել ընդլայնված վերարտադրության առավելապես ինտենսիվ ուղուն: Երկրում, ինչպես նաև մեր հանրապետությունում աստիճանաբար մեծացել է հասարակական աշխատանքի արտադրողականության աճի դերն ազգային եկամտի հավելաճի գործում, որը վկայում է հասարակական ընդլայնված վերարտադրության առավելապես ինտենսիվ ուղու մասին: Այսպես, եթե 1950-ական թվականներին ազգային եկամտի հավելաճի ավելի քան 40 տոկոսը ստացվել է աշխատողների թվի ավելացման, իսկ մոտ 60 տոկոսը՝ հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին, 1970-ական թթ.՝ համապատասխանաբար՝ 25 և 75 տոկոսը, ՀՍՍՀ-ում՝ 42 և 58 տոկոսը, ապա 1981—1985 թթ. 10 և 90 տոկոսը, մեր հանրապետությունում՝ 32 և 68 տոկոսը: Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, 70-ական թվականների էկոնոմիկան իներցիայով շարունակում էր իր էքստենսիվ զարգացումը, կողմնորոշվում էր դեպի արտադրության մեջ աշխատանքային և նյութական լրացուցիչ ռեսուրսների ներգրավումը: Որպես հետևանք, լրջորեն նվազեցին աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը՝ և արդյունավետության շատ ցուցանիշներ: Ընթացիկ հնգամյակում և մինչև 2000 թ. ընկած ժամանակաշրջանում ազգային եկամտի ամբողջ հավելաճը ստացվելու է հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին:

Առկա է ինտենսիվ ընդլայնված վերարտադրության երկու ձև՝ ֆոնդատար և ֆոնդախնայողական: Առաջին ձևի դեպքում աշխատանքի արտադրողականությունը բարձրանում է արտադրանքի միավորի վրա կատարվող ծախսերում արտադրական ֆոնդերի բաժնի մեծացման, իսկ երկրորդի դեպքում արտադրական ֆոնդերի տնտեսման շնորհիվ: Երկրորդ ձևը հնարավորություն է տալիս արտադրության ծավալը մեծացնել կապիտալ ներդրումների, արտադրական հիմնական ու շրջանառու ֆոնդերի նույն քանակով և գյուղատնտեսական մշակվող հողատարածությունների նույն չափով: Այս դեպքում աշխատանքի արտադրողականության բարձրացումն առաջ է անցնում դրա ֆոնդազինվածության աճի տեմպերից, որի շնորհիվ բարելավվում է արտադրական ֆոնդերի օգտագործումը, բարձրանում արտադրության արդյունավետությունը:

Աշխատանքի արտադրողականությունը սերտորեն կապված է գիտատեխնիկական առաջադիմության կապիտալ ներդրումների և նյութական ռեսուրսների արդյունավետ օգտագործման հետ: Գիտատեխնիկական առաջադիմությունը հասարակական արտադրության ֆոնդատարության վրա ունենում է բարդ ազդեցություն՝ վերջին հաշվով ապահովելով առավել արդյունավետ ֆոնդախնայողական ձևի ինտենսիվ ընդլայնված վերարտադրություն: Արտադրության մեքենայացումը և ավտոմատացումը, շատ հանքային հանածոների արդյունահանությունը (խոր շերտից հանվող, վաճառահանման շուկաներից հեռու և այլն) կապված են խոշոր կապիտալ ներդրումների հետ: Բայց միաժամանակ գործում են հակադիր միտումներ՝ արտադրության մեջ օգտագործվում են էներգիայի խնայողական տեսակներ, բնանյութերը փոխարինվում են արհեստականով, էժանանում են աշխատանքի միջոցները, կատարելագործվում է աշխատանքի կազմակերպումը:

ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունիսյան պլենումում Մ. Ս. Գորբաչովը նշեց, որ «Գիտատեխնիկական հեղափոխության բուռն ընթացքը, ժողովրդական տնտեսության կտրուկ բարդացումը, ծանրության կենտրոնը էքստենսիվ մեթոդներից ինտենսիվ մեթոդների, քանակից որակի վրա փոխադրելու անհրաժեշտությունը, սոցիալական պայմանների ազդեցության ուժեղացումը, մարդկային գործոնի դերի կտրուկ աճը տնտեսական կառավարման արմատական վերափոխումներ էին պահանջում»:

Ներկայումս մշակվել է երկրի տնտեսական զարգացման նոր ստրատեգիա. փոփոխություններ են մտցվել կառուցվածքային և ինվեստիցիոն քաղաքականության մեջ, կազմվել են նպատակային խոշոր ծրագրեր, որոշվել գիտատեխնիկական առաջադիմության հիմնական ուղղությունները: Երկրի էկոնոմիկայում իրագործվում են խոր, հեղափոխական վերափոխումներ: Վերակառուցման հանգուցային խնդիրը էկոնոմիկայի կառավարման արմատական ռեֆորմն է: Այժմ, երբ երկիրը թևակոխել է իր զարգացման պատասխանատու ժամանակաշրջան, գլխավորն այն է, որ ըստ ամենայնի արագացվեն վերակառուցման սեմպերը: Դրան հասնելու համար անհրաժեշտ է բոլոր մակարդակներում ղեկավարման վարչական մեթոդներից անցնել տնտեսագիտական կառավարման լայն դեմոկրատացման, լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման, ըստ ամենայնի ակտիվացնել մարդկային գործոնը:

# ԳԻՏՆԱԿԱՆՆԵՐԻ ՊԱՐՏՔԸ

**Է. ԱՖՐԻԿՅԱՆ**

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ տնտեսական, սոցիալական և հոգևոր կյանքի բոլոր ոլորտների վերակառուցման ու արմատական բարեփոխման ՍՄԿԿ անսասան կուրսը հիմնված է գիտության և տեխնիկայի առաջանցիկ զարգացման, գործնականում դրանց նվաճումների արմատավորումն արագացնելու վրա: «Սա յուրաքանչյուր գիտնականի, ինժեների, կոնստրուկտորի, ձեռնարկության ղեկավարի սրբազան պարտականությունն է»,— կուսակցության XXVII համագումարում նշեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

Ներկայումս կուսակցության և սովետական կառավարության որոշումներով միջոցառումներ են իրականացվում գիտական հիմնարկների գործունեությունը արմատապես վերակառուցելու, նրանց աշխատանքում տեղ գտած թերություններն ու լճացման երևույթները վերացնելու համար: Այսպես, ինքնածախսածածկման և ինքնաֆինանսավորման տնտեսական չափանիշները որպես գիտական կազմակերպությունների գործունեության արդյունավետության գլխավոր ցուցանիշներ սահմանելը լայն ճանապարհ է բացում գիտական պոտենցիալի իրացման համար: Իսկ պետական ձեռնարկության (միավորման) մասին ՍՍՀՄ օրենքը թույլ է տալիս ապահովել ինքնուրույնությունը, զարգացնել նախաձեռնությունն ու դեմոկրատիան, աշխատանքը գնահատելիս արմատախիլ անել համահարթումը և առավելագույնս խրախուսել արդյունավետորեն գործող գիտաշխատողներին:

Երկրում արդեն սկսվել և շարունակում է մեծ աշխատանք կատարվել գիտական հետազոտությունների պլանավորման ու կազմակերպման, դրանց արդյունքներն արտադրության մեջ ներդնելու գործում եղած ստերեոտիպերը քննադատաբար վերանայելու համար: Սա բարդ, դժվար գործ է և պահանջում է ակադեմիական, ճյուղային հաստատություններում ու բուհերում տարվող գիտական աշխատանքները կիրառելու հարցում ցուցաբերել համակողմանի և խոր մոտեցում: Գիտահետազոտական, նախագծային և տեխնոլոգիական բազմաթիվ հաստատությունների ճյուղավորված ցանց ունեցող մեր հանրապետության պայմաններում նման աշխատանքի կատարումը մեծ կարևորություն է ներկայացնում:

Ամենից առաջ հիշատակելով ակադեմիական կազմակերպությունները, կարծում ենք, որ նրանց աշխատանքը փոքր-ինչ պետք է տարբերվի միութենական, կենտրոնական հաստատությունների գործունեությունից: Հանրապետական ակադեմիական ինստիտուտները չպետք է պատճենեն միութենական հաստատությունների գիտակիրառական թեմատիկան, այլ պարտավոր են ավելի ակտիվորեն զբաղվել մշակումներով: Օրինակ, միկրոկենսաբանության մեր ինստիտուտը պարտավոր է, ընդհանուր միկրոկենսաբանական պրոբլեմների մշակման հետ միաժամանակ, զբաղվել գյուղատնտեսական միկրոկենսաբանության տարբեր բնագավառներում, կաթի, խմորման, քիմիական և արդյունաբերության մյուս ճյուղերում գիտաարտադրական ծավալուն կոմպլեքսային աշխատանքներ իրականացնելով: Սրա անհրաժեշտությունն առաջացել է այն իրողությամբ, որ հանրապետությունում նշված ճյուղերով զբաղվող խոշոր գիտական կազմակերպություններ չունենք:

---

ԱՖՐԻԿՅԱՆ ԷՐԻԿ ԳԵՂԱՄԻ— *ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի միկրոկենսաբանության ինստիտուտի դիրեկտոր, հանրապետության ԳԱ ակադեմիկոս*



Չի կարելի, համենայն դեպս միկրոկենսաբանության մեջ, գիտական հաստա-
տությունները բաժանել հիմնարար և կիրառական կարգերի՝ նրանց գերատեսչական
ենթարկվածության պարագան հաշվի չառնելով: Գիտության և տեխնիկայի հրա-
տապ շատ ուղղություններ, ինչպես, օրինակ, հակաբիոտիկների, հորմոնների, ամի-
նաթթուների, պոլիմերների, կոմպոզիցիոն նյութերի ստացումը, հիմնականում զար-
գացել են արդյունաբերության ոլորտում, ընդ որում ինչպես տեսական, այնպես էլ կի-
րառական մշակումների առումով:

Հիմնարար և կիրառական աշխատանքների արհեստական խզումը հանգեցրել
է այն բանին, որ շատ գիտական, հատկապես ակադեմիական հաստատություններ
գրկված են փորձնական-արտադրական բազաներից, տեխնոլոգիական ու նախա-
գծային-կոնստրուկտորական ստորաբաժանումներից և փաստորեն անկարող են
գործնականում իրականացնելու ստացած արդյունքները: Նման իրավիճակը պետք
է ամենամոտ ժամանակներս շտկվի, ընդ որում որոշ դեպքերում՝ այդպիսի հաստա-
տությունները արդյունաբերական ձեռնարկությունների ու միավորումների հետ ին-
տեգրացնելու ուղիով:

Հիմնարար հետազոտություններով չափից ավելի տարվելը հանգեցնում է պրակ-
տիկ աշխատանքից կտրվելուն: Մենք իրավունք ունենք հպարտանալու կենսաքի-
միայի և ֆիզիոլոգիայի ասպարեզներում հանրապետությունում ձեռք բերված նվա-
ճումներով: Սակայն այդ բնագավառներում գոյություն ունեցող գիտական մեծ պո-
տենցիալը գլխավորապես կենտրոնացած է բժշկագիտության նեղ պրոբլեմների վրա:
Միաժամանակ, Հայաստանում բավականաչափ զարգացած արտադրության ամբողջ
ճյուղեր մնացել են առանց համապատասխան գիտական ապահովման: Կիրառական
արդյունաբերական և տեխնիկական կենսաքիմիայի զարգացումը հանրապետությու-
նում դարձել է առաջնահերթ խնդիր, առանց որի անհնար է նոր տեխնոլոգիաների
մշակումն ու արմատավորումը կաթի և մսի, հացագործության, խմորման ու արդյու-
նաբերության այլ ճյուղերում:

Գիտական կազմակերպությունների գործունեության արդյունավետությունը գնա-
հատելիս տնտեսական չափանիշներով առաջնորդվելը նորովի է դնում գիտական
աշխատանքը վարձատրելու ու խթանելու մի շարք սկզբունքային հարցեր: Այս ուղ-
ղությամբ առաջիկայում արմատական փոփոխություններ պիտի կատարվեն ինչպես
հետազոտությունների կազմակերպման ու պլանավորման, այնպես էլ կադրային
քաղաքականության և գիտաշխատողների ատեստավորման համակարգի մեջ: Գի-
տական հետազոտությունների դիսերտացիոն ուղղվածությունը ծնում է գիտական
աստիճանների ու կոչումների վտանգավոր պաշտամունք՝ չխոսելով այդ աշխատանք-
ները հաճախ կողմնապահորեն գնահատելու մասին: Կարծում եմ, որ մեր բուհերն
այսօր զգալիորեն ամրապնդվել են, ունեն համապատասխան կադրեր և նյութա-
տեխնիկական անհրաժեշտ բազա, որպեսզի ստանձնեն գիտական կոչում ունեցող
մասնագետների պատրաստումը: Հնարավոր է այդ նպատակով օգտագործել ակա-
դեմիական և ճյուղային գիտական կազմակերպությունները, ստաժավորման համա-
կարգն ու ասպիրանտուրան: Բոլոր դեպքերում գործի շահերը պահանջում են բա-
ցառել գիտական հաստատությունների հաստիքային աշխատակիցների կողմից
դիսերտացիոն աշխատանքների պաշտպանությունը: Ի դեպ, նման համակարգ գո-
յություն ունի Ճապոնիայում, ԱՄՆ-ում, ԳՖՀ-ում և այլ երկրներում: Գիտական հե-
ղինակությունները ու դպրոցները առաջատար դեր են խաղում, բայց չի կարելի
ամեն մի գիտական աստիճան և կոչում ֆետիշացնել: Գիտության մեջ մենաշնորհն
ու թելադրանքը երբեք չեն արդարացվել և հանգեցրել են կործանարար հետևանք-
ների:

Գիտական աշխատողներին ըստ ներդրած աշխատանքի, դրանից ստացված
արդյունքների և տնտեսական արդյունավետության գնահատելը միանգամայն ճիշտ
է և օբյեկտիվ: Այնպես որ, վերանում է նաև հաճախակի ստուգումների անհրաժեշ-
տությունը. էկոնոմիկան ինքն է խոսում իր մասին, բացի այդ նման պայմաններում
բացառվում են զարտուղի, անպտուղ հետազոտություններով «դիրքի հասնելու»,
հաստիքներն ուռճացնելու, պետբյուջետային հատկացումներից սարքավորումներ
ու նյութեր պոկելու հնարավորությունները: Մյուս կողմից, պետք է պայքարել ար-
դյունավետ աշխատող մարդկանց նյութական խրախուսման երկյուղի դեմ, նրանց
պատշաճ վարձատրման նպատակով խոշոր գումարների հատկացման համար:

Հասարակության կյանքի բոլոր ոլորտների դեմոկրատացման ու առողջացման
սկսված պրոցեսը պետք է զարգանա նաև գիտության մեջ: Հարկավոր է ապահովել

վարչական ղեկավարության համակարգված փոփոխումն ու ընտրովիությունը, վճռականապես վերջ տալ վնասաբեր և անհեռանկարային գիտական հետազոտությունները պետական բյուջեի հաշվին «արհեստականորեն կերակրելու» արատավոր պրակտիկային:

ՍՄԿԿ Կենտկոմը և սովետական կառավարությունը որոշումներ են ընդունել, որոնցով կարևոր միջոցառումներ են սահմանվել գիտության ոլորտում կադրային քաղաքականությունը բարելավելու, տարիքային ցենզ մտցնելու, գիտական հաստատությունները սիստեմատիկաբար նոր, երիտասարդ կարող ուժերով համալրելու նպատակով: Սակայն այս ամենի իրականացումը մեծ դժվարություններով է ընթանում: Հարկավոր է ունենալ օրենսդրություն, որն ապահովի որոշակի տարիքում գիտաշխատողների պարտադիր կենսաթոշակի անցնելը և համապատասխան կարգ հաստատի աշխատանքային պայմանագրերով արտադրության նյութական ոլորտում կոնկրետ մշակումներ կատարելու համար նրանց ընդգրկելու գործում:

Գաղտնիք չէ, որ գիտության մեջ մեզ մոտ կան պատահական շատ մարդիկ, մակաբույծներ, որոնք ինքնուրույն ստեղծագործական աշխատանքի ընդունակ չեն: Նրանցից ազատվելը բավական դժվարին և ցավագին պրոցես է: Հավանաբար, գիտական հաստատությունների արտադրական բազայի զարգացումը թույլ կտա նրանց տեղափոխել և օգտագործել այդ ոլորտում: Միաժամանակ պետք է միջոցներ ձեռնարկել նման աշխատակիցներին ազատելիս ղեկավարներին անհիմն մեղադրանքներից զերծ պահելու համար:

Վերակառուցման ժամանակաշրջանում է՛լ ավելի են կարևորվում գիտական աշխատանքների կոորդինացումն ու կազմակերպումը արդյունավետ կերպով պլանավորելու հարցերը: Անտարակույս, այստեղ անհրաժեշտ է ապահովել կոմպլեքսային մոտեցում՝ հատկապես գիտատեխնիկական խոշոր պրոբլեմների լուծման գործում: Այս ամենը հաջողությամբ իրականացնելու համար սոցիալիստական հասարակարգը լայն հնարավորություններ է ընձեռում: Վարչահրամանատարական թելադրանքը, առանձին կազմակերպությունների մենաշնորհը վերացնելը ձերբազատում է գիտնականների հզոր բանակի ստեղծագործական նախաձեռնությունը: Դրա հետ մեկտեղ, ղեկավար մարմինների աշխատանքի վերակառուցումն ու գիտատեխնիկական առաջադիմության ինտենսիվացման գործում նրանց պատասխանատվության բարձրացումը պահանջում են այդ մարմիններն ամրապնդել բարձրակարգ մասնագետներով, որոնք քաջատեղյակ լինեն գիտության տարբեր բնագավառների վիճակին ու զարգացման հեռանկարներին, գիտատեխնիկական ծրագրերին և հրատապ պրոբլեմներին: Ներկայումս պետպլանում, զանազան գերատեսչություններում, գիտատեխնիկական կոմպլեքսներում և միավորումներում պրոբլեմային խորհուրդներ ու հանձնաժողովներ ստեղծելու անհրաժեշտություն է առաջանում, որոնք միջոցներ և ռեսուրսներ տրամադրելու խնդրում օժտված լինեն մեծ լիազորություններով, այլ ոչ թե, ինչպես այսօր, ունենան սոսկ հանձնարարականների ֆունկցիա:

Արտադրության հետ գիտության ինտեգրացումը պետք է իրականացվի գիտության հիմնական պատվիրատու հանդիսացող արդյունաբերությունը և ժողովրդական տնտեսության մյուս բոլոր ճյուղերը շնորհաշատ գիտնականներով ու մասնագետներով ամրապնդելու ճանապարհով: Նման մարդիկ պիտի զբաղեցնեն ղեկավար պաշտոններ և ճիշտ տնօրինեն գիտական մշակումների ու ներդրման աշխատանքների համար հատկացված միջոցները: Այս դեպքում կբացառվի հախուռն ու անհիմն օժտապաշտական մոտեցումը՝ հատկապես ստրատեգիական բնույթի գիտատեխնիկական մշակումները գնահատելիս: Գիտության մեջ կան աշխատանքներ, որոնք սոսկ տվյալ պահի չափանիշներով դժվար է գնահատել, և պահանջում են մշտական աջակցություն: Օրինակ կարող են ծառայել մանրէների, ծագումնաբանական նյութի, սերմնանյութի բանկերն ու կուլտուրաների հավաքածուները: Շահութաբերության սկզբունքը չպետք է տարածվի անթափոն և անվնաս տեխնոլոգիաների ստեղծմանն ուղղված մշակումների վրա: Այսպես, վնասատուների դեմ մղվող պայքարի կենսաբանական միջոցները առայժմ թանկ են նստում, բայց և այնպես նախապատվությունը պիտի տրվի դրանց, քան թունաքիմիկատներին՝ չնայած վերջիններիս էժանությանը:

Գիտություն-արտադրություն կապում կա մի էական հարց ևս: Դա արտադրության մեջ նոր տեխնոլոգիաների և գիտության նվաճումների ներդրման՝ գործող ֆինանսատնտեսական մեխանիզմի անկատար լինելն է:

Բանն այն է, որ դրանց արմատավորումը պետք է ապահովի արտադրանքի



ինքնարժեքի իջեցումը և համապատասխանաբար նվազեցնի կապիտալ ներդրումները, տնտեսական խթանման, աշխատավարձի ու նյութական ապահովության ֆոնդերը և այլն: Այս ամենը հանգեցնում է տնտեսական անշահավետության, և արտադրության շատ մասնագետներ շահագրգռված չեն նոր տեխնոլոգիաների ներդրման հարցում: Նպատակահարմար է ունենալ այնպիսի մեխանիզմ, որը նոր տեխնոլոգիաների արմատավորումից ապահովի առավելագույն օգուտ և խիստ բարձրացնի դրանում արտադրության մարդկանց շահագրգռվածությունը:

Անշուշտ, գիտատեխնիկական առաջադիմությունը երկրի առանձին ռեգիոններում, բնական ռեսուրսների և պայմանների համեմատ, պետք է ունենա իր յուրահատկությունը: Մեր հանրապետության ժողովրդական տնտեսության հետագա զարգացման համար գիտության և տեխնիկայի նվաճումների օգտագործումը թերևս ունի առավել կարևոր նշանակություն: Հենց այս հիմքի վրա պետք է ձեռք բերվի արդյունաբերության առավելագույն արդյունավետությունը՝ ռեսուրսների ու նյութերի նվազագույն ծախսումներով: Այս կապակցությամբ հանրապետության էկոնոմիկայի զարգացման կոմպլեքսային և հիմնավորված կանխագուշակումը կարող է իրականացվել միայն գիտատեխնիկական առաջադիմությունը հաշվի առնելով:

Հայտնի է, որ սննդի, կերի, վառելիքաէներգետիկ և էկոլոգիական պրոբլեմները Հայաստանի համար առավել կենսական նշանակություն ունեն: Իսկ ժամանակակից կենսատեխնոլոգիայի և միկրոկենսաբանության նվաճումները հիմք են ստեղծում դրանց բարձրարդյունավետ լուծման համար: Նշված բնագավառներում գիտաարտադրական ծավալուն աշխատանքներ կատարելու նպատակով հանրապետությունում մի շարք որոշումներ են ընդունվել: Անցյալ տարի ընդունվեց «Գետնատանձ» անվանմամբ ծրագիրը, որը նվիրված է գետնատանձի պալարների հիման վրա շաքարանյութերի և կերային սպիտակուցի ստացմանը: ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի որոշմամբ հաստատվել է «Սպիտակուց» ծրագիրը, որի իրականացման համար ստեղծվել է հանրապետական միջճյուղային գիտատեխնիկական համալիր: Այդ ծրագրերի գծով գլխադաս կազմակերպություն է հաստատվել մեր ինստիտուտը:

Նշված ասպարեզներում հանրապետությունում որոշակի աշխատանք կատարվել է, սակայն ընդունված որոշումների գործնական իրականացման տեմպերը չեն գոհացնում: Հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման առաջնահերթ խնդիրները լուծելու համար մեծ աշխատանք է սպասվում թե՛ գիտական կոլեկտիվների ջանքերը կենտրոնացնելու, թե՛ մի շարք գերատեսչությունների միջոցներն ու ռեսուրսները մոբիլիզացնելու մարզում:

Տեխնիկատնտեսական ցուցանիշների վերլուծությունը ցույց է տալիս, որ մեզանում միաբջիջ (մանրէական) սպիտակուցի բազմատոննաժ արտադրության ստեղծումը կարևոր ազդակ կլինի կերի և սննդի պրոբլեմի լուծման գործում: Այս առումով խիստ կարևոր է արտադրության մեջ կերային սպիտակուցով բուսական հումքի միկրոկենսաբանական վերամշակման և հարստացման հեռանկարային տեխնոլոգիաների լայն արմատավորումը:

Ցավոք, մեզ մոտ թերագնահատվում է արդյունաբերական ջրահոսքերի և գազերի, թափոնների վարակազերծման ու օգտագործման կենսատեխնոլոգիական մեթոդների կիրառումը՝ չնայած բնապահպանական միջոցառումներում դրանց ծայրաստիճան կարևորությանը և բարձր արդյունավետությանը: Այս բոլոր ուղղություններում միկրոկենսաբանության ինստիտուտն ունի կոնկրետ մշակումներ և պատրաստ է ակտիվորեն աշխատել շահագրգռված գերատեսչությունների և կազմակերպությունների հետ:

Չի կարելի չխոսել և այն մասին, որ ընդունված որոշումներն ու պլանավորված միջոցառումները տարիներ շարունակ չեն ամրապնդվում կոնկրետ գործերով և ամենից առաջ՝ գիտատեխնոլոգիական մշակումները կյանքում իրականացնելու ու ներդնելու համար անհրաժեշտ միջոցներ և ռեսուրսներ հատկացնելով: Ակնհայտ է, որ առանց դրա չի կարելի գիտության և տեխնիկայի նվաճումները լայնորեն արմատավորելու գործում հաջողության հույս ունենալ: Այս առնչությամբ հարկ է նշել, որ երկու տասնյակի հասնող հանրապետական կոմպլեքսային ծրագրերի փոխարեն նպատակահարմար է առանձնացնել երկու-երեքը՝ որպես առավել կարևոր, և դրանց իրականացման վրա կենտրոնացնել բոլոր անհրաժեշտ միջոցներն ու ռեսուրսները:

Մեր գիտատեխնիկական հզոր պոտենցիալը պետք է է՛լ ավելի արդյունավետորեն ծառայի ու մասնակցի հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման արագացմանը:

---

# ՆՈՐ ԴԵՂԱՄԻՋՈՑՆԵՐԻ ՆԵՐԴՐՄԱՆԸ՝ ՊԵՏԱԿԱՆ ՄՈՏԵՑՈՒՄ

**Բ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ**

ՄԱՐԴՈՒ ԱՌՈՂՋՈՒԹՅՈՒՆԸ հասարակության ամենամեծ արժեքն է: Նրա պահպանումն ու ամրապնդումը մեր կուսակցության և կառավարության անդուլ հոգատարության գլխավոր առարկան են: Այսօր, երբ ՍՄԿԿ-ն որդեգրել է երկրի կյանքի բոլոր ասպարեզները վերակառուցելու և սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կուրս, ավելի մեծ կարևորություն են ստացել այդ վիթխարի ու աննախադեպ խնդիրներն իրականացնող մարդու կյանքի տևողության, ստեղծագործական ակտիվության մեծացումը, նրան ցույց տրվող բժշկական օգնության որակի բարձրացումը: Համապետական այս գործում մեծ ասելիք ունեն գիտության ամենատարբեր բնագավառները, մասնավորապես բժշկագիտությունն ու դեղաբանությունը:

Վերոհիշյալ մասշտաբային և հանգուցային մյուս հարցերն իրենց ամբողջ ծավալով ամփոփվել են ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի հաստատած «Տասներկուերորդ հնգամյակում և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանում բնակչության առողջության պահպանումը զարգացնելու և ՍՍՀՄ-ի առողջապահությունը վերակառուցելու հիմնական ուղղություններում»: Այստեղ որոշակի հանձնարարականներ են տրված նաև դեղաբանությամբ, դեղամիջոցների ներդրմամբ զբաղվող գիտական հաստատություններին, նրանցում աշխատող մասնագետներին:

Հայտնի է, որ ներկայումս, գիտատեխնիկական հեղափոխության բուռն ծավալման ժամանակաշրջանում, աշխարհում մեծ տարածում գտած սրտանոթային համակարգի հիվանդությունների, նյարդահոգեկան բնույթի խանգարումների, չարորակ նորագոյացությունների և վտանգավոր ինֆեկցիաների բուժման ու կանխարգելման նպատակով առավել արդյունավետ դեղամիջոցների ստեղծումը և գործնական բժշկության մեջ ներդրումը առողջապահության առաջնահերթ խնդիրներից են: Մարդասիրական այս գործը շատ բարդ է ու դժվարին և պահանջում է տարբեր բնագավառներում աշխատող մասնագետների համատեղ, երկարամյա ջանքեր:

Մեր երկրում դեղամիջոցների որոնման համար կիրառվում է նպատակամետ սինթեզների եղանակը, որի հիմքը կազմում են կենսաբանորեն ակտիվ միացության քիմիական կառուցվածքի ու նրա կենսաբանական հատկությունների միջև եղած կապի օրինաչափությունների բացահայտումը և ռացիոնալ օգտագործումը: Թվում է, թե այս ճանապարհը պետք է զգալիորեն կրճատեր դեղամիջոցների ներդրման ուղին, ինչպես նաև այդ նպատակների համար ծախսվող պետական հսկայական միջոցները: Բայց ստացվել է հակառակը, և դա ունի իր օբյեկտիվ ու սուբյեկտիվ պատճառները: Դրանց բացահայտումն ու վերացումը պետք է դառնան դեղագիտության բնագավառի աշխատանքների վերակառուցման հիմնական ծրագիրը:

Մինչև վերջին տարիներս փորձարարական պայմաններում նոր քիմիական միացության ցույց տված արդյունավետությունը համարվում էր բավարար, որպեսզի այն կլինիկական փորձարկումների նպատակով ներկայացվեր միութենական դեղագիտական կոմիտե: Այժմ իրավիճակն արմատապես փոխվել է: Պարզվել է, որ կենսաբանական ակտիվությամբ օժտված միացությունների որոշ մասը, բացի անմիջական ազդեցությունից, օժտված են նաև բավականին ուշ բացահայտվող, օրգանիզմի հա-

ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ ԲԱԳՐԱՏ ՏԻՐԱՆԻ— *Բժշկական գիտությունների դոկտոր, ՀՍՍՀ ԳԱ Ա. Լ. Մնջոյանի անվան նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտի դիրեկտոր:*



սար անցանկալի հատկանիշներով: Դրանց հայտնաբերումը երբեմն պահանջում է տարիների հետազոտական աշխատանք: Այդպիսի «դեղամիջոցների» օգտագործումը մարդկանց մեջ կարող է զանազան ալերգիկ հիվանդությունների, չարորակ նորագոյացությունների, պտղի մահացության կամ խեղումների առաջացման պատճառ դառնալ և այլն: Ահա այս օբյեկտիվ հանգամանքն է, որ հետազոտողներին ստիպում է նոր դեղամիջոց առաջարկելիս չշտապել և հաստատ համոզվել, որ այն զերծ է հետագա անցանկալի հատկանիշներից:

Անհանդուրժելի է այն փաստը, որ մեր երկրում, նույնիսկ մասնագիտացված դեղագիտական գիտօջախներում նոր քիմիական միացության սինթեզից մինչև դեղատուն ընկած ժամանակահատվածը կազմում է 13—15 տարի, այն դեպքում, երբ արտասահմանյան դեղագիտական առաջավոր ֆիրմաներում (Բայեր, Գեդեոն-Ռիխտեր, Ապջոն, Յուտա և այլն) այդ ժամկետը միջին հաշվով կազմում է 10 տարի: Մեր կարծիքով, այս պրոբլեմը կարիք ունի լուրջ ուսումնասիրման, և նրա հետ կապված աշխատանքներն էլ սպասում են վերակառուցման: Արտասահմանյան ճանաչված ֆիրմաներում մեծ մասամբ կիրառվում է դեղամիջոցների որոնման, այսպես կոչված, «էմպիրիկ» ուղի, երբ փորձարկման են ենթարկվում անխտիր բոլոր նոր ստացված քիմիական միացությունները, անկախ նրանից, թե վերջիններս ինչ նպատակով են սինթեզվել: Վիճակագրությունը ցույց է տալիս, որ այս ճանապարհով սինթեզված 250 հազար քիմիական միացություններից միայն մեկն է ընտրվում խոր ուսումնասիրության համար: Կամ հետազոտության համար առանձնացված հինգ միացությունից մեկն է ուղարկվում կլինիկական փորձարկումների, և կլինիկա հասած երեք միացությունից մեկը ստանում կյանքի ուղեգիր: Այսպիսով, մեկ դեղամիջոցի ստեղծման համար ծախսվում է գրեթե 55—60 միլիոն դոլար:

Ավելորդ է նշել դեղամիջոցների ներդրմանը խոչընդոտող այնպիսի օբյեկտիվ պատճառների մասին, ինչպիսիք են ժամանակակից սարքերի պակասը կամ էլ հիմնարար հետազոտության արդյունքներից ոչ լիարժեք օգտվելը: Այդ հարցերը բավականին շատ են արծարծվել մամուլում և այլուր: Կուզեի խոսել այն պարագաների մասին, որոնք լրջորեն խոչընդոտում են դեղամիջոցների արագ ներդրմանը և որոնց վերացումը հրամայական պահանջ է դարձել:

Նախ, զգացվում է միութենական, հանրապետական կամ ռեգիոնալ դեղագիտական կենտրոնների բացակայությունը: Մեր ինստիտուտի հիմնադիր և առաջին դիրեկտոր, կադեմիկոս Ա. Լ. Մնջոյանը դեռ 30 տարի առաջ ապացուցեց, որ դեղամիջոցների որոնման, հայտնաբերման և ներդրման համար անհրաժեշտ է ունենալ երեք տարբեր հետազոտական օղակների համագործակցված աշխատանք մեկ ընդհանուր գիտօջախում: Դրանք քիմիկոսներն ու ֆիզիկոս-քիմիկոսներն են, բժիշկ փորձագետները և տեխնոլոգները: Այս օղակներից որևէ մեկի բացակայության դեպքում դեղամիջոցի արագ ներդրման մասին խոսելն անիմաստ է:

Մեր դիտարկումները պարզել են, սակայն, որ ինչպես Հայաստանում, այնպես էլ մյուս հանրապետություններում նոր դեղամիջոցների ստեղծման պրոբլեմով զբաղվում են ո՛չ միայն պայմաններ և փորձ ունեցող գիտօջախները: Այս բնագավառը մոդայիկ է դարձել ամենաբազմազան հետազոտական խմբերի ու հիմնարկների շրջանում: Հաճախ, երբ որոշ մասնագետներ իրենց «մշակումների» ներդրման հարցերով դիմում են մեզ, ապա համոզվում ենք, որ նրանց մեծ մասը նույնիսկ տարրական պատկերացում չունի այս բնագավառի աշխատանքների ծավալի, դժվարությունների, նրբությունների կամ արժեքի մասին:

Կոնկրետ Երևանում դեղամիջոցների որոնումներով այսօր զբաղվում են գիտահետազոտական շատ ինստիտուտներ, համարյա բոլոր բուհերը, զանազան պրոբլեմային լաբորատորիաներ: Նույնիսկ առանձին անհատներ, ընդ որում՝ ով ինչպես կարող է: Հետևանքը լինում է պետական հսկայական միջոցների աննպատակ շռայլումը, քանի որ ոչ պրոֆեսիոնալ որոնումները լավագույն դեպքում ավարտվում են միայն անպտուղ դիսերտացիաների պաշտպանությամբ: Դրա հետևանքով էլ նոր, յուրօրինակ հայրենական դեղամիջոցներ ստեղծվում են շատ հազվադեպ: Բավական է միայն նշել, որ վերջին 10 տարում հայրենական ոչ մի դեղամիջոց չի ստացել միջազգային ճանաչում, և մեր հիվանդների զգալի մասը բուժվում է արտասահմանից ներմուծվող դեղերով:

Հետևաբար, գտնում ենք, որ միութենական, հանրապետական կամ ռեգիոնալ դեղագիտական կենտրոնների ստեղծումն այսօր դարձել է խիստ անհրաժեշտություն: Դրանք բարձր որակավորում ունեցող մասնագետներին հնարավորություն կտան աշ-

խատելու համագործակցված, գիտության ամենաժամանակակից մակարդակով՝ համատեղ օգտագործելով հազվագյուտ և թանկարժեք սարքերը: Բացի այդ, կխնայվեն պետական ոչ քիչ միջոցներ, կբացառվեն խառնաշփոթ, իրար կրկնող և ոչ հեռանկարային հետազոտությունները: Մեր հանրապետությունում այդպիսի կենտրոնի ստեղծման համար կան ամենաիրական նախադրյալները, որոնց թվում պետք է նշել թեկուզև փորձ ու պայմաններ ունեցող նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտի բազան (որն, ի դեպ, այս տարի շահագործման կհանձնի միջազգային ստանդարտներին համապատասխանող, Միության մեջ առայժմ միակ կենդանիների բուծարանը) և բարձր որակավորում ունեցող սինթեզող-քիմիկոսների ու բժիշկ-դեղագետների մեծ բանակը:

Երկրորդ խանգարող հանգամանքը սոցիալական կամ պետական պատվերների բացակայությունն է: Քիչ չեն եղել դեպքեր, երբ բազմամյա քրտնաջան աշխատանքից և միութենական դեղագիտական կոմիտեի հետ ունեցած ձգձգվող գրագրություններից հետո մեր ինստիտուտի ներկայացրած նոր մշակումը մերժվել է՝ այդպիսի դեղամիջոցի ներդրման անհրաժեշտության բացակայության պատճառաբանությամբ: Մերժված դեղամիջոցներից կարելի է հիշատակել հակախոցային պրեպարատ դիմեկումարոնը, հոգեկան հիվանդությունների բուժման համար առաջարկված գումետոքսը, կիսասինթետիկ հակաբիոտիկ ֆեցիլլինը և այլն: Ելնելով թանկարժեք ժամանակը և պետական միջոցները խնայողաբար օգտագործելու նկատառումներից, վերջերս դիմեցինք միութենական դեղագիտական կոմիտե՝ առաջարկելով, որ մեր նոր մշակումները, մինչև նախակլինիկական փորձարկումները, որոնք շատ աշխատատար են և դրանց վրա կատարված ծախսերը կազմում են դեղամիջոցների ընդհանուր ծախսերի 70 տոկոսը, լրջորեն քննարկվեն հեղինակավոր փորձագետների կողմից և մեզ տըրվեն կոնկրետ միացության հետագա ուսումնասիրության պատվերներ: Դեղագիտական կոմիտեից ստացված պատասխանը, ուր վկայակոչվում էր ՍՍՀՄ առողջապահության մինիստրության համապատասխան հրամանից մի հատված, որ «… նոր դեղամիջոցը կոմիտե քննարկման կարելի է ներկայացնել միայն այն դեպքում, երբ նրա բոլոր փորձարկումներն ավարտված են», առնվազն անհամոզիչ է:

Ժամանակակից դեղագիտական կենտրոնները, որպես կանոն, պետք է աշխատեն սոցիալական կամ պետական պատվերներով: Այդ պատվերները մշակելիս ՍՍՀՄ դեղագիտական կոմիտեն պետք է օգտվի Միության հեղինակավոր մասնագետների (հատկապես կլինիցիստների) և ժամանակակից հաշվողական տեխնիկայի ծառայություններից:

Մենք առիթ ենք ունեցել ծանոթանալու Հնդկաստանում աշխատող շվեյցարական «Ցիբա Գեյգի» դեղագիտական ֆիրմայի գործունեության սկզբունքներին և կարծում ենք, որ այն որոշ առումով լավ օրինակ կարող է ծառայել նաև մեզ համար: Այնտեղ կենսաբանական ակտիվ նյութ սինթեզող քիմիկոսն ամենից առաջ իր տեսական աշխատանքների ծնունդ հանդիսացող կառուցվածքը ներկայացնում է արտոնագրային բաժին: Վերջինս, այն տեղադրելով համապատասխան սարքի մեջ, կարճ ժամանակում հեղինակին պատասխանում է. այդպիսի կառուցվածք մինչև այդ սինթեզվե՞լ է, թե՞ ոչ, եթե՝ այո, ապա որտե՞ղ և ի՞նչ նպատակով, եթե՝ ոչ, ապա նրանից մոտավորապես ինչպիսի՞ ակտիվություն կարելի է սպասել: Եթե սինթեզը հեռանկարային է, քիմիկոսը ստանում է համապատասխան ֆինանսավորում և սկսում է նոր աշխատանքը՝ մշտական կապի մեջ լինելով արտոնագրային բաժնի և փորձարկող կենսաբանների հետ: Եթե մինչև աշխատանքն ավարտելը պարզվում է, որ մի այլ ֆիրմա արդեն ստեղծել է նման կամ ավելի լավ դեղամիջոց, ապա, ավելորդ ծախսերից խուսափելու նպատակով, նախատեսված բոլոր հետագա աշխատանքներն անմիջապես դադարեցվում են:

Մեր աշխատանքների ընթացքին կնպաստի նաև մեթոդական ցուցումների հարցի կարգավորումը: Հաճախ միութենական դեղագիտական կոմիտեն դժվարին կացության մեջ է ընկնում, երբ ստիպված է լինում երկու տարբեր հեղինակային խմբերի կողմից ներկայացված նույնատիպ (ըստ ազդեցության) դեղամիջոցներից որևէ մեկին առաջնություն տալ: Պարզվում է, որ վերջիններս ուսումնասիրվել են տարբեր մոդելների վրա, տարբեր մեթոդներով և զանազան հսկիչ դեղամիջոցների հետ համեմատվելով: Սուբյեկտիվությունից խուսափելու և այս վիճակից դուրս գալու միայն մեկ ելք ենք տեսնում: Կարծում ենք, որ դեղագիտական կոմիտեն պետք է քննարկի միայն այն մշակումները, որոնք ուսումնասիրված են ՍՍՀՄ առողջապահության մինիստրության կողմից հաստատված մեթոդական ցուցումներով: Բայց, դժբախտաբար,



այդ ցուցումները զերծ չեն լուրջ թերություններից: Բացի այդ, ոչ բոլոր տիպի դեղամիջոցների որոնումներն են ապահովված համապատասխան մեթոդական հանձնարարականներով:

Հսկիչ դեղամիջոցների ու լիարժեք տեղեկատուների բացակայությունը ևս ազդում է գիտահետազոտական աշխատանքների լիարժեքության վրա: Միութենական դեղագիտական կոմիտեն իրավացիորեն դեղամիջոցներ որոնող կազմակերպություններից պահանջում է, որ նոր մշակումն իր արդյունավետությամբ գերազանցի հայտնի ամենալավագույն նմանակը: Բայց այդ նմանակը ձեռք բերելը շատերի համար գործնականորեն անհնար է, հետևապես ամեն մի նմանակի հետ կատարված համեմատական փորձի արդյունքները չեն կարող բավարարել դեղագիտական կոմիտեի պահանջը: Շատ հետազոտողներ տարիներ են կորցնում, մինչև որ զանազան զարտուղի ճանապարհներով հայտնաբերում են բաղձալի նմանակը: Բայց մեծ մասամբ այդ ժամանակամիջոցում նոր մշակումը կորցնում էր իր արդիականությունը, և անպտուղ են լինում տարիների հետազոտական աշխատանքի արդյունքները:

Ցանկալի է, որ միութենական դեղաբանական կոմիտեն ունենար մշակվող բոլոր հիմնական դեղամիջոցների լավագույն նմանակների նմուշները և, անհրաժեշտության դեպքում, համապատասխան սոցիալական պատվերի հետ միասին այն տրամադրեր մշակողներին:

Դեղամիջոցների ներդրման գործում կա մի դժվարություն ևս: Բանն այն է, որ ՍՍՀՄ առողջապահության մինիստրությունն արգելում է դեղագիտական կոմիտեում քննարկել նոր դեղամիջոցի կլինիկական փորձարկման հարցը, եթե դրա արտադրության ժամանակ կիրառվելու է արտասահմանյան հումք, որի ձեռքբերումը չի երաշխավորված հեղինակավոր կազմակերպության կողմից: Սակայն, եթե արտասահմանյան ռեակտիվների արտադրության և արժեքների մասին հեշտությամբ կարելի է տեղեկանալ համապատասխան տեղեկատուների միջոցով (որոնք անվճար ուղարկվում են բոլոր շահագրգռված ֆիրմաներին), ապա մեզ մոտ նույնատիպ կատալոգները բացակայում են և հնարավոր չէ պարզել, թե ում կողմից ինչպիսի ռեակտիվներ են արտադրվում և ինչպիսին է նրանց արժեքը:

Եվ, վերջապես, դեղամիջոցների ներդրման գործում լուրջ խոչընդոտ են հանդիսանում մարդկային հիվանդություններին մոտ կանգնած փորձնական մոդելների պակասը և ոչ լիարժեք կլինիկական փորձարկումները:

Հողագնդի համարյա բոլոր դեղագիտական օջախներում օգտագործվող մոդելների մեծ մասը, որոնց վրա իրագործվում են նոր դեղամիջոցների որոնումները, շատ հեռու են մարդկային հիվանդություններից: Այդ պատճառով էլ հաճախ փորձնական պայմաններում մեծ արդյունավետություն հանդես բերող կենսաբանական ակտիվ նյութը կլինիկայում կամ «չի աշխատում» կամ այնպես «չի աշխատում», ինչպես փորձնական պայմաններում: Այստեղ մի եզրակացության կարելի է հանգել. պետք է կատարելագործել փորձարարական մոդելները և առավելագույն չափով նրանց նմանեցնել մարդկային հիվանդություններին:

Մեր հետազոտությունները ապացուցել են, որ որոշ նոր դեղամիջոցներ կլինիկական փորձարկումների ժամանակ բարձր գնահատականի չեն արժանանում և խոտանվում են կլինիկայի կողմից ոչ օպտիմալ բուժական ռեժիմ ընտրելու պատճառով, հետևաբար ներդրվող դեղամիջոցի բախտը շատ բանով կախված է նաև բուժող բըժշկից: Ամեն մի նոր դեղամիջոցի կլինիկական փորձարկում լուրջ ստեղծագործական աշխատանք է և պահանջում է անհատական մոտեցում: Հաստատված է, որ նման դեղամիջոցները կլինիկական պայմաններում կարող են միմյանցից արմատապես տարբերվել, հետևաբար չի կարելի նոր քիմիական կառուցվածքով իրար շատ դեղամիջոցի փորձարկման ժամանակ կիրառել հայտնի նմանակի համար մշակված բուժական սխեմա:

Համոզված ենք, որ ամեն մի նոր դեղամիջոցի փորձարկման առաջին փուլում կլինիցիստի և դեղամիջոցը առաջարկող դեղագետի համատեղ աշխատանքը կարող է անգնահատելի օգուտ բերել ներդրման գործին և կանխել անուղղելի շատ սխալներ:

Մենք նշեցինք այն հիմնական ուղիները, որոնցով պետք է ընթանա վերակառուցումը դեղագիտության բնագավառում: Դա հրատապ գործ է, որին մեծ անհամբերությամբ և հավատով սպասում են միլիոնավոր հիվանդներ:

---

# ՈՒՍԱՆՈՂ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ԳԱՂԱՓԱՐԱԲԱՐՈՅԱԿԱՆ ԵՎ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

**Խ. ԵՐԻՑՅԱՆ**

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱԴՐԱԾ ստրատեգիական խնդիրները ենթադրում են հասարակական հարաբերությունների արմատական վերակառուցում, ամենից առաջ մարդկային գործոնի ակտիվացում՝ մարդկանց հոգեբանության փոփոխման, գիտակցականության բարձրացման ճանապարհով: Մեր հասարակության մեջ տեղ գտած բացասական երևույթները խիստ քննադատության ենթարկվեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան և հունիսյան պլենումներում: Այդ երևույթների վերացումը պահանջում է նորովի մոտենալ աշխատավորների կոմունիստական դաստիարակության խնդիրներին:

Նոր մարդու ձևավորման բազմաբնույթ պրոցեսում կարևորվում է գաղափարական հասմոզվածությունը՝ որպես անհատի համակողմանի զարգացման անքակտելի բաղադրատարր: Կոմունիստական համոզվածությունը կարևոր է ոչ միայն իբրև մարդու դաստիարակման արդյունք, այլև որպես մեր հասարակության հաջող զարգացման ներգործուն միջոց:

Կոմունիստական համոզվածության պրոբլեմները հանգամանորեն արծարծվել են գիտական կոմունիզմի հիմնադիրների՝ Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի աշխատություններում: Լենինը հիմնավորել է սուբյեկտիվ գործոնի վերին աստիճանի ակտիվ դերը հասարակական առաջընթացի գործում, երբ դրա նպատակաուղղվածությունը համընկնում է հասարակական զարգացման օբյեկտիվ օրենքների ներգործման միտումին: «Մարքսիզմը մյուս բոլոր սոցիալիստական տեսություններից տարբերվում է նրանով, որ նա իրերի օբյեկտիվ դրության և էվոլյուցիայի օբյեկտիվ ընթացքի վերլուծման մեջ լիակատար գիտական զգաստությունը հիանալի կերպով միացնում է մասսաների հեղափոխական եռանդի, հեղափոխական ստեղծագործության, հեղափոխական ձեռներեցության նշանակության ամենավճռական ճանաչման հետ, ինչպես նաև, իհարկե... առանձին անհատների, խմբերի, կազմակերպությունների, կուսակցությունների նշանակության ճանաչման հետ...» (**ԵԼԺ**, հ. 16, էջ 28):

Կուսակցության առջև Վ. Ի. Լենինը խնդիր էր դնում «որոշակի սոցիալիստական իդեալներ մտցնել տարերային բանվորական շարժման մեջ, այն կապակցել սոցիալիստական համոզմունքների հետ, որոնք պետք է կանգնած լինեն ժամանակակից գիտության մակարդակի վրա...» (**ԵԼԺ**, հ. 4, էջ 238): Լենինը հիմնավորեց նոր հասարակարգի կառուցման ընթացքում աշխատավորների գաղափարական համոզվածության անշեղ բարձրացման օրինաչափությունը: Հենց դրանում է կապիտալիզմի հանդեպ սոցիալիզմի հաղթանակի հիմնական աղբյուրներից մեկը. «... Որքան ավելի խորն է այն վերափոխությունը, որ մենք ուզում ենք կատարել, այնքան ավելի շատ հետաքրքրություն և գիտակցական վերաբերմունք պետք է առաջ բերել նրա նկատմամբ, նորանոր միլիոնավոր և տասնյակ միլիոնավոր մարդկանց համոզել նրա անհրաժեշտության մեջ» (**ԵԼԺ**, հ. 42, էջ 173—174):

Մեր հասարակության պատմության կտրուկ շրջադարձի արդի փուլում նորովի են դրվում ուսանող երիտասարդության կոմունիստական դաստիարակության խնդիրները: Ելնելով ունենալով 1986 թ. հոկտեմբերին կայացած հասարակական գիտությունների ամբիոնների վարիչների համամիութենական խորհրդակցությունում՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը շեշտեց, որ հասարակական գիտությունների դասավանդման նկատմամբ դիալեկտիկական մոտեցումը պետք է դառնա հիմնական մեթոդ, հարկավոր է է՛լ ավելի զարգացնել ինքնուրույնաբար դատելու ընդունակությունը, գիտական վեճ վարելու կարողությունը, որտեղ էլ հենց, ինչպես հայտնի է, ծնվում է ճշմարտությունը: «Երկխոսություն և ոչ թե մենախոսություն՝ ահա թե ինչն է երիտասարդության կրթության ու դաստիարակության իրոք ստեղծագործական պրոցեսի անհրաժեշտ տարրը»:

Դաստիարակչական աշխատանքի ողջ էությունը հանգեցվում է այն բանին, որ երիտասարդությունը մարքս-լենինյան համոզմունքներ ձեռք բերի սեփական գաղափարական որոնումների ու հայտնությունների ճանապարհով: Կոմունիստական համոզվածության դաստիարակումը պայմանավորվում է ինչպես օբյեկտիվ, այնպես էլ սուբյեկտիվ նախադրյալներով: Այն անխզելիորեն կապված է մարդկային գործոնի դերի բարձրացման հետ, որին հսկայական նշանակություն տվեց կուսակցության XXVII համագումարը: Հետևապես, ուսանողական կոլեկտիվի ակտիվացումը, ՍՄԿԿ պատմության դասախոսությունների, սեմինար պարապմունքների կատարելագործումը զգալի չափով կնպաստեն գաղափարադաստիարակչական խնդիրների լուծմանը:

Արդի հակասական աշխարհում, որը մշտապես գտնվում է գաղափարախոսական հակամարտության մեջ, չափազանց կարևոր է, որ բուհերում պատրաստվեն մարքս-լենինյան տեսությամբ զինված մասնագետներ: ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումն առանձնապես շեշտեց գաղափարական խոր համոզվածության, բարձր քաղաքական ակտիվության և երկրի ճակատագրի համար բարոյական պատասխանատվության դաստիարակման անհրաժեշտությունը: Դա բուհերի հասարակագետներին պարտավորեցնում է հետևողականորեն կատարելագործել դաստիարակչական աշխատանքի ձևերն ու մեթոդները, ուսանող երիտասարդությանը ներարկել ազնվության, օրինավորության, անկաշառության, համեստության ոգին, անհանդուրժողականություն՝ սոցիալիստական բարոյականության նորմերից ամեն տեսակի շեղումների նկատմամբ: Այսօրվա երիտասարդները չեն անցել սոցիալիզմի հաղթանակի համար պայքարելու դաժան դպրոցը, նրանք սոցիալիզմի խոշորագույն նվաճումներն ընկալում են որպես համատարած հաղթական երթի արդյունք, չխորհելով այն մասին, թե դրանք ինչպիսի անասելի դժվարություններով ու զրկանքներով են ձեռք բերվել: Ուստի և ուսանողների հետ տարվող դաստիարակչական աշխատանքում պետք է հաշվի առնել այն, որ նրանց ակտիվությունը, եռանդը, ռոմանտիկ հափշտակվածությունը, քաղաքական զգայունությունը, հետաքրքրասիրությունը, նորի ձգտումը, կուլտուրական բարձր մակարդակը երբեմն ուղեկցվում են քաղաքական փորձի, վերլուծական մտածողության բացակայությամբ:

Հոգեբանների ուսումնասիրությունները վկայում են, որ մարդը մտավոր և հուզական զարգացման վերելք է ապրում 18—30 տարեկանում: Հետևապես, անհրաժեշտ է ժամանակին օգնություն ցույց տալ ուսանողներին, քանի որ, չնայած ստացած գիտելիքներին, նրանք հաճախ չեն տիրապետում ինքնուրույն մտածողության մեթոդին:

Գաղտնիք չէ, որ մեր գաղափարախոսական թշնամին իր ակնկալիքները երիտասարդության հետ է կապում, ուստի մենք ոչ միայն պետք է նրան պաշտպանենք բուրժուական գաղափարախոսության ու բարոյականության վնասակար ազդեցությունից, այլև նպատակադիր, արդյունավետ աշխատանք տանենք՝ նրան կոմունիստաբար դաստիարակելու նպատակով:

Իր դիրքերի թուլացումը իմպերիալիզմին դրդում է մոբիլիզացնելու սոցիալիզմի դեմ պայքարի բոլոր միջոցները: Այդ մասին Վ. Ի. Լենինը նշել է. «Մեր հեղափոխության փորձով, ավելի, քան որևէ այլ հեղափոխության փորձով, հաստատվեց այն օրենքը, որ հեղափոխության ուժը, գրոհի ուժը, եռանդը, վճռականությունը, հեղափոխության հաղթանակը դրա հետ միասին ուժեղացնում են բուրժուազիայի դիմադրության ուժը» (**ԵԼԺ**, հ. 40, էջ 294):

*ԵՐԻՑՅԱՆ ԽԱՉԻԿ ՀԱԿՈԲԻ — պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր, Երևանի Վ. Յա. Բրյուսովի անվան ռուսաց և օտար լեզուների պետական մանկավարժական ինստիտուտի ՍՄԿԿ պատմության ամբիոնի վարիչ:*

Իմպերիալիզմն անցել է ՍՍՀՄ-ի դեմ հոգեբանական պատերազմի: Մոբիլիզացված են ԱՄՆ-ի և մի շարք այլ կապիտալիստական երկրների կառավարական ապարատի բոլոր օղակները: Մեր պետության դեմ գործում են գրեթե 400 հակասովետական կենտրոններ, կազմակերպություններ, կոմիտեներ, խմբեր: Ամբողջ միջազգային ռեակցիան ձգտում է երիտասարդության քաղաքական գիտակցության «ողողահարման», նրա հոգևոր անկման: Մի ամերիկացի գաղափարախոս հայտարարել է. «Մենք պետք է այնպես ներգործենք սովետական երիտասարդության վրա, որ ՍՍՀՄ-ում պատերազմ ծագելու դեպքում չլինեն նոր մատրոսովներ, կոշևոյներ, կոսմոդեմյանսկայաներ»:

Մշակվում են ուսանողության վրա ներազդելու նրբին միջոցներ, հակակոմունիստական և հակասոցիալիստական հերյուրանքները պարուրվում են նորաձև տեսություններով: Պրոպագանդվում են արդի աշխարհում երիտասարդության դերի «բացառիկության», «ինքնավար անհատի», «սոցիալիզմի սովետական մոդելի բարեփոխման ու դեմոկրատացման» անհրաժեշտության, «առանց «ափերի» դեմոկրատիայի» մասին այսպես ասած տեսությունները: Հակակոմունիզմի նմանօրինակ «նորամուծությունները» պահանջում են ուսանողների մեջ դաստիարակել ինչպես սոցիալիստական, այնպես էլ կապիտալիստական երկրներում տեղի ունեցող հասարակական-քաղաքական երևույթների նկատմամբ դասակարգային մոտեցման մարքսիստական սկզբունք:

Երիտասարդության գաղափարական համոզվածության դաստիարակության կատարելագործման ծրագիրը սահմանված է ՍՄԿԿ XXVII համագումարի, Կենտկոմի որոշումներով և կուսակցական այլ փաստաթղթերով: Ուսանողների կոմունիստական դաստիարակությունն իրականացվում է ընտանիքում, դպրոցում, բուհում, աշխատավորական կոլեկտիվում ձեռնարկվող միջոցների ամբողջ համակարգով, հասարակության օրենքներով և ավանդույթներով, իրական հասարակական հարաբերություններով, մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցներով, գրականության և արվեստի ներգործությամբ: Այդ ամենը երիտասարդությանը կոմունիստական դաստիարակության, նրա վրա հասարակության սոցիալ-քաղաքական, գաղափարական, բարոյական ազդեցության կարևորագույն գործոն է:

Բուհում ուսանող երիտասարդության մեջ գաղափարական համոզվածություն է դաստիարակվում ինչպես ուսուցման ընթացքում, այնպես էլ նրանից դուրս: Ուսումնառության ողջ բովանդակությունը պետք է համապատասխանի «մենք գլխավոր նպատակ ենք դնում ամբողջական հեղափոխական աշխարհհայեցողություն մշակել...» (**ԵԼԺ**, հ. 7, էջ 386) լենինյան պահանջին:

Ուսանողների մեջ գաղափարական համոզվածություն դաստիարակելու հզոր աղբյուր է ՍՄԿԿ հերոսական պատմությունը, որը հագեցած է հարուստ իրադարձություններով, փաստերով, հեղափոխական պայքարի և գաղափարախոսական գործունեության ուսանելի փորձով: «Լենինյան կուսակցության անցած ուղին,— շեշտված է «ՌՍԴԲԿ երկրորդ համագումարի 80-ամյակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— հիրավի պայքարի ու հաղթանակների հերոսական ուղի է: Նրա ղեկավարությամբ իրագործվեցին վիթխարի վերափոխումներ, որոնք վճռական ազդեցություն գործեցին ոչ միայն երկրի ճակատագրի վրա, այլև արմատապես փոխեցին համաշխարհային պատմության ընթացքը»: ՍՄԿԿ պատմությունը մարքսիզմ-լենինիզմն է գործողության ու զարգացման մեջ, քանի որ տեսությունը գիտականորեն հիմնավորում և ապահովում է սոցիալիստական հասարակության սոցիալ-տնտեսական և քաղաքական դինամիկ ու պլանաչափ զարգացումը, շատ տարիների համար որոշում դրա ուղղությունը, պատմական հեռանկարը:

ՍՄԿԿ պատմության ուսումնասիրումն ուսանողներին զինում է դասակարգային պայքարի, հասարակական զարգացման օրենքների, տեսության ու պրակտիկայի, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման հարցերի իմացությամբ, դնում մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման հիմքերը: Վ. Ի. Լենինը գտնում էր, որ միայն գիտական պատմությունը կարող է «մեր բոլոր որոշումներին տալ բացառապես մարքսիստական հիմնավորում» (**ԵԼԺ**, հ. 36, էջ 3): Անցյալը նա դիտում էր որպես դեպի ներկան տանող մի աստիճան, որպես փորձ, որն օգնում է իրականացնելու մեր այսօրվա նպատակները: ՍՄԿԿ պատմությունը մեր երկրի պատմությունն է, հեղափոխականների սերունդների սխրանքը: Նրանց կյանքի ու գործունեության ուսումնասիրումն ունի իր բարոյական ասպեկտը, որը երիտասարդությանը հրապուրում է անվեհեր բոլշևիկ լենինյանների, սոցիալիստական հեղափոխության հաղթանակի և նոր



հասարակարգի կառուցման մարտիկների անմահ ավանդույթներով: Կուսակցության պատմության դասընթացն ուսանողներին օգնում է ավելի շոշափելիորեն զգալու իրենց մասնակցությունը մեր հայրենիքի մեծագործություններին, հաստատելու իրենց ակտիվ կենսադիրքորոշումը, լինելու հեղափոխական, մարտական և աշխատանքային պանծալի ավանդույթների իսկական ժառանգորդներ:

ՍՄԿԿ պատմության դասընթացով ուսումնասիրվում է մարքսիզմ-լենինզմի դասականների երկերի մի մասը, կուսակցության ծրագիրը, համագումարների, կոնֆերանսների, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների նյութերն ու որոշումները, կոմունիստական և բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցությունների փաստաթղթերը: Այդ ամենն ուսանողներին օգնում է ընդլայնելու իրենց մտահորիզոնը, ուսումնասիրելու ՍՄԿԿ փորձը, ձգտելու լինել կուսակցական կյանքի իրադարձությունների հորձանուտում, իրենց գիտելիքները զուգակցելու պրակտիկայի հետ, լինելու բանվոր դասակարգի գործի համոզված մարտիկներ:

Դաստիարակչական խնդիրների հաջող լուծման հիմնական պայմանը դասախոսի մեթոդական և տեսական պատրաստականության բարձր մակարդակն է: Հարկավոր է միշտ նկատի ունենալ Վ. Ի. Լենինի ցուցումներն այն մասին, որ «Յուրաքանչյուր դպրոցում ամենակարևորը դասախոսությունների գաղափարական-քաղաքական ուղղությունն է: Ինչո՞վ է որոշվում այդ ուղղությունը: Ամբողջապես և բացառապես **դասախոսների կազմով**» (**ԵԼԺ**, հ. 47, էջ 239):

Հասարակագետ դասախոսը ուսանողական լսարանի առջև հանդես է գալիս որպես արդի մարքս-լենինյան մտքի ներկայացուցիչ, որի օգնությամբ ապագա մասնագետը մտնում է հեղափոխական գաղափարախոսության հիմնադիրների, բանվոր դասակարգի աշխարհայացքի գիտական լաբորատորիան: Այդ գործում հաջողությունը պայմանավորված է նրանով, թե դասախոսը որչափով կկարողանա ոչ միայն ուսանողներին իր գիտելիքները հաղորդել, այլև իր հեղափոխական-կուսակցական ավյունով բոցավառել նրանց սրտերը, ներարկել սոցիալիզմի, կոմունիզմի վեհ իդեալների առողջ սերմեր:

Հասարակական գիտությունների ամբիոնների վարիչների համամիութենական խորհրդակցությունում ունեցած իր ելույթում Մ. Ս. Գորբաչովը շեշտեց. «Մասնագետների պատրաստման գործում ինչպիսի՜ հսկայական պատասխանատվություն է ընկնում հասարակական գիտությունների դասախոսների ուսերին:

Ուսանողների հետ ձեր ուսումնական և դաստիարակչական աշխատանքով է մեծապես պայմանավորված, թե ապագա ինժեներներն ու գյուղատնտեսները, բժիշկներն ու ուսուցիչները ինչ չափով կկարողանան արդի գիտության բարձրագույն նվաճումների մակարդակի գիտելիքները, պրոֆեսիոնալ բանիմացությունը միավորել գաղափարական համոզվածության, քաղաքական հասունության, բարձր բարոյականության, սոցիալական ակտիվության հետ»:

Կուսակցության պատմությունը, որին ուսանողներն առնչվում են ուսումնառության սկզբից ևեթ, պետք է նրանց մեջ նպատակամետ հետաքրքրություն առաջացնի մարքսիզմ-լենինիզմի տեսության նկատմամբ, դնի նրանց աշխարհայացքի ձևավորման հիմքը, ստեղծի այնպիսի իրադրություն, որ պատանիներն ու աղջիկները ոչ միայն գիտելիքներ ստանան, այլև համոզվեն այդ ուսմունքի ճշմարտացիության, գիտական հիմնավորվածության մեջ, այն դարձնեն իրենց սեփական համոզմունքները, կարողանան մարքսիստորեն մտածել, տեսական ու գործնական հարցեր լուծելիս դրանցից ազատորեն օգտվել, ղեկավարվել, այսպես ստացած գիտելիքները կլինեն անօգուտ: Այդ կարևոր գործում դեռևս չլուծված շատ հարցեր ու դժվարություններ կան: Օրինակ, մեծաթիվ սեմինար խմբերը հնարավորություն չեն ընձեռում ուժեղացնելու ուսանողների հետ տարվող անհատական աշխատանքը, իսկ պասսիվությունն անհամատեղելի է կուսակցության արդի պահանջների հետ: Կենդանի իրականությունից հասարակական գիտությունների հեռացածությունը հաղթահարելով, գիտելիքները ուսանողների համար սեփական համոզմունքների վերածելով է միայն հնարավոր հասնել ցանկալի արդյունքների:

Գիտելիքները համոզմունքների, իսկ համոզմունքները աշխատանքային և հասարակական-քաղաքական կոնկրետ գործերի վերածելու առավել արդյունավետ ուղիների որոնումը բարդ խնդիր է: Այստեղ անհնարին է միանգամից շոշափելի արդյունքներ ակնկալել: Բայց յուրաքանչյուր պարապմունք հարկավոր է դիտել որպես

այդ բարդ պրոցեսի հերթական օղակը: Շատ բան պայմանավորված է նրանով, թե ինչպես է անցնում յուրաքանչյուր դասախոսությունը, յուրաքանչյուր սեմինար պարապմունքը, ինչպես է ամբիոնը պարապմունքներ փոխադարձաբար լսելուց հետո քննարկում դրանց արդյունքները և այլն: Հարկավոր է իրականացնել մշտական վերահսկողություն և նորացնել մեթոդական մշակումները, այն հաշվով, որ դասախոսը լավ պատկերացնի ոչ միայն ուսանողներին մատուցվող գիտելիքների ամբողջությունը, այլև դրանք հիմնավորելու համար անհրաժեշտ փաստարկները, որպեսզի ներգործությունը ուսանողների վրա լինի արդյունավետ, նրանց մեջ բուռն ցանկություն առաջացնի իրենց դրսևորելու որպես իսկական հայրենասեր, ինտերնացիոնալիստ և ժողովրդի գործի համար մարտնչողներ: Ուստի թեմայի քաղաքականապես ճիշտ շեշտադրումը չափազանց կարևոր է գաղափարական համոզվածության դաստիարակման գործում:

Քաղաքական սրության չափանիշը Լենինը համարում էր «ոչ թե այն հարցերը, որոնք տեղի կամ անտեղի շոշափել է այս կամ այն գրողը, այլ այն հարցերը, որոնք պահի պայմանների բերումով և հասարակական զարգացման օբյեկտիվ ընթացքի հետևանքով քաղաքական լուրջ նշանակություն ունեն» **(ԵԼԺ,** հ. 11, էջ 14):

Գաղափարական համոզվածության դաստիարակման գործում, բուրժուական գաղափարախոսության դեմ մղվող պայքարում ամենաուսանելի օրինակ է ցույց տվել Վ. Ի. Լենինը: Նրա աշխատություններից մենք քաղում ենք մեթոդական ու տեսական գիտելիքներ, սովորում կատարել հասարակական կյանքի երևույթների գիտական, դասակարգային վերլուծություն: Հակամարքսիստական գաղափարների և ուսմունքների լենինյան քննադատությունը հրատապ նշանակություն ունի նաև արդի գաղափարախոսական պայքարում, հակակոմունիզմի սնանկությունը վերհանելու առնչությամբ:

Ուսանողների շրջանում գաղափարական համոզվածություն դաստիարակելու կարևոր գործոնը պրոֆեսիոնալ հեղափոխականների, կուսակցությանականավոր գործիչների և ամենից առաջ Վ. Ի. Լենինի կյանքի ու գործունեության ուսումնասիրումն է: Վլադիմիր Իլյիչի վառ կերպարը մարմնավորում է պրոլետարական հեղափոխականի ամենահիանալի գծերը: Հարկավոր է թափանցել երիտասարդների սրտերը, նրանց համակել մարքսիզմ-լենինիզմի թշնամիների նկատմամբ անհաշտ լինելու, կյանքում սոցիալիստական գաղափարախոսություն մարմնավորելու ջերմ ցանկությամբ: Այս ֆոնի վրա հեղափոխական, մարտական, աշխատանքային, այդ թվում՝ տեղի կուսակցական կազմակերպությունների, ավանդույթների օգտագործումն ունի դաստիարակչական հսկայական նշանակություն:

Մարքս-լենինյան ուսմունքի ներգործունությունը Վ. Ի. Լենինը տեսնում էր պրակտիկայի հետ նրա ունեցած անխզելի կապի մեջ: «Անհրաժեշտ է **ճանաչողության և պրակտիկայի միացում» (ԵԼԺ,** հ. 29, էջ 241):

Գիտելիքները համոզմունքների վերածելու ընթացքում երկու կողմերի փոխգործողությունը՝ հասարակական գիտությունների ուսումնասիրումը և գիտելիքների կիրառումը, վճռական բնույթ է ստանում: «Ուսանողներից հարկավոր է պահանջել,— ասել է Մ. Ի. Կալինինը, դիմելով դասախոսներին,— ոչ միայն մարքսիզմի հիմնական դրույթների, այլև այն բանի իմացություն, թե ինչպես մոտենալ այս կամ կոնկրետ փաստերին, ինչպես դրանք գնահատել մարքսիզմ-լենինիզմի տեսանկյունից» (М. И. Калинин. Избранные произведения. М., 1975, стр. 432):

Մարդկային գործոնն ակտիվացնելու ՍՄԿԿ XXVII համագումարի առաջադրած խնդրի լույսով ամբողջ սրությամբ ծառանում է այն պահանջը, ըստ որի բուհում պետք է ուժեղացնել ուսանողական կոլեկտիվի դերը, օրինակելիորեն անցկացնել հասարակական-քաղաքական պրակտիկան, որի ընթացքում բացահայտվում է պատանիների ու աղջիկների ակտիվությունը ուսման մեջ, առաջադրանքների կատարման գործում, ուսանողական աշխատանքների մրցույթում, օլիմպիադաներում և այլուր: Հասարակագետի ողջ գործունեությունը պետք է ուղղված լինի այն նպատակին, որ ուսանողները համակվեն սոցիալիստական հասարակության կատարելագործման և հաջողությամբ դեպի կոմունիզմ առաջշարժման գործում նաև իրենց վարքագծի, այդ թվում՝ ուսման մեջ իրենց առաջադիմության, կարևորության համոզմունքով:



Ուսանողների դաստիարակությունը կոմունիստական գաղափարական համոզվածության ոգով պետք է լինի բուհերի կուսակցական, կոմերիտական կազմակերպությունների, պրոֆեսորադասախոսական կազմի ամբողջ գործունեության առանցքը: Այդ խնդրի հաջող լուծումը հնարավոր է առողջ գաղափարաբարոյական իրադրության առկայությամբ, որը դեռ չենք ապահովել հանրապետությունում, ինչի համար էլ ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունիսյան պլենումում հանրապետական կուսկազմակերպությունը և նրա ղեկավարությունը արդարացիորեն ենթարկվեցին սկըզբունքային քննադատության: Դա ամբողջապես և լիովին վերաբերում է նաև բուհերին: Այսօր, ինչպես երբեք, հրամայական անհրաժեշտություն է դարձել բուհերում ստեղծել այնպիսի մթնոլորտ, որը բացառեր ամեն տեսակի բացասական երևույթները, ըստ ամենայնի նպաստեր ուսանողների ճիշտ դաստիարակությանը:

Մարքս-լենինյան տեսության գաղափարներով ուսանողությանը համակելը երիտասարդության կոմունիստական դաստիարակության անքակտելի մասն է: Հասարակական գիտությունների, մասնավորապես, ՍՄԿԿ պատմության դասավանդման ընթացքում գաղափարապես համոզված մասնագետների պատրաստումը պետք է ուղեկցվի դասախոսությունների և սեմինար պարապմունքների մակարդակի բարձրացումով, մարքսիզմ-լենինիզմի դասականների երկերի ուսումնասիրության նկատմամբ ստեղծագործական մոտեցման ծավալումով, սոցիալիստական շինարարության պրակտիկային հեղափոխական տեսության սերտ կապակցումով: Միայն այս դեպքում մեր դասախոսական գործունեությունը կլինի արդյունավետ, և մենք կկարողանանք ակնկալել, որ ուսանողները բուհն ավարտելուց հետո ակտիվորեն կներգրավվեն հասարակական կյանքի բոլոր ոլորտների վերակառուցման և երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման պրոցեսի մեջ:

---

# ԻՄԱՍՏԱԼԻ ԿՅԱՆՔ, ՈՐ ԴԱՍ Է ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

**Ռ. ԶԱՐՅԱՆ**

Ամեն անգամ, երբ միտք եմ անում, թե ինչ է տաղանդ կամ հանճար ասվածը, աչքիս առաջ է կանգնում Վահրամ Փափազյանը: Հիշում եմ նրան կյանքում, հիշում բեմում իր լավագույն տարիներին: Ձեռքս եմ առնում «Հետադարձ հայացքը» ու շփոթվում բոլորովին, խճճվում՝ անելով լոկ այն հետևությունը, թե, երևի, տաղանդը և մանավանդ հանճարն այն է, երբ բնությունը մի մարդու մեջ կենտրոնացնում է մի շարք մարդկանց հավաքական շնորհները և նրան մղում իր ժամանակի գեղարվեստական մտածողությունը մի քայլ առաջ տանելու կամ գոնե նրա շառավիղները նոր ուղղություններով ընդարձակելու:

Ու եթե այսօր, Փափազյանի մասին խոսք ասելիս, չեմ հիշում նրա ունեցած և չունեցած տիտղոսները, ապա ավելի շատ այն պատճառով, որ Վահրամ Փափազյան երևույթը կամ, ինչպես հիմա ընդունված է ասել՝ ֆենոմենը դուրս է բոլոր կոչումներից ու տիտղոսներից, ինչպես բեմի իր բոլոր իտալացի թե ֆրանսիացի ուսուցիչները՝ Էլեոնորա Դուզե թե Սառա Բեռնար կամ հայ թատրոնի վարպետները՝ Սիրանույշ և Մարտիրոս Մնակյան, որ, ինչպես հայտնի է, ոչ մի տիտղոս չեն ունեցել:

Փափազյանի ամենաբարձր կոչումն այն էր, որ նա ծնվել էր թատրոնի համար: Կամ, եթե Մխիթարյանի ուսուցիչների լեզվով խոսենք, պետք է ասենք՝ «Նա դերասան էր ի վերուստ» կամ «Դերասան էր ողորմածությամբ աստծո»:

Փափազյանի կյանքի պատմությունն իր մեծ մասով ուսանելի է բոլոր ժամանակների երիտասարդության համար, մանավանդ նրանց, ում մտքին է թատրոնին նվիրվել, արվեստին՝ ընդհանրապես:

Փափազյանի կյանքի պատմությանը բնորոշ է բնության բարձրագույն օժտվածություն և հետն էլ հազվագյուտ բախտ:

Սա էլ մտածելու բան է, ոչ այնքան պարզ մի ըմբռնում, որ պետք է ասել ու անցնել: Ասում են, թե ամեն մարդ իր բախտի տերն է: Ամեն մարդ էլ անցած-գնացածին անդրադառնալիս, միշտ էլ մտածում է, որ եթե իր կյանքի այս քայլն այսպես արած չլիներ, իր կյանքն այլ կերպ ընթացած կլիներ: Այո՛, իհարկե: Բոլորն էլ միշտ խելոք են հետո: Ուրեմն՝ բախտը նաև այդ խելքն է, որ մեկն ունի, մյուսը՝ ոչ: Բացի այդ՝ ես համոզված եմ, որ բնությունը մեծ մասամբ մարդուն կայծ չի տալիս ու մի կողմ քաշվում: Բնությունը, որ մեկին օժտում է, համարյա միշտ նրա կողքին է լինում որպես ճիշտ կողմնորոշող ներքին ձայն: Դա ենթագիտակցությունն է, գեղարվեստական առողջ բնազդը: Ստեղծագործող անհատը, ըստ Փափազյանի, պետք է կարողանա «ենթարկվել իր ներքին ձայնին, այն անդավաճան, անսխալ ու բարեկամ ձայնին, որ դերասանի բևեռային աստղն է, հարազատ և ճշմարիտ ուղեցույցը, որին հետևելով՝ ստեղծագործության նավը դուրս կգա ամենաանհուսալի փոթորկից դեպի բարեբար նավահանգիստ, նույնիսկ եթե նավուղին կողմնացույց չունի»:

Բախտը. Փափազյանին Կոստանդնուպոլսից տարավ Վենետիկ: Դա բախտի տնօրինությունն էր՝ անշուշտ: Վենետիկից Փափազյանը Միլան է գնացել: Դա իր ներքին ձգտումի թելադրանքն էր: Եթե Միլան չգնար, ոտքի տակ չէր առնի ամբողջ Իտալիան, չէր տեսնի այդքան քաղաքներ, այդքան բնավորություններ, այդքան նիստուկաց և չէր իմանա, որ հոգեկան բարձր ներշնչումների կողքին ապրում են ստոր բնազդներ, չար ու նախանձ կրքեր:

---

ԶԱՐՅԱՆ ՌՈՒԲԵՆ ՎԱՐՈՍԻ— *ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս:*



Պատանի Փափազյանը երկրորդական դերեր է կատարել՝ անխոս կամ մեկ-երկու խոսքանի: Ավելի շատ ազատ է եղել, քան զբաղված: Բայց արի տես, որ իր ազատ օրերին ու ժամերին նա չի թողել ներկայացումը, ներկայացման փորձերը և իտալացի իր հասակակիցների օրինակով չի թափառել փողոցներում, չի որոնել գիշերային վայելք ու արկածներ: Այնքան խելք է ունեցել, որ ներկայացման յուրաքանչյուր փորձ համարել է դերասանի վարպետության դաս, որից բացակայելը նկատել է մեղք: Աչքերը չորս արած նայել է, թե իր վարպետն ինչպես է դերը մշակում, ինչպես է համապատասխան արտահայտություններ գտնում, որպեսզի գրական կերպարը բեմական դառնա, պատկերացումը ամբողջանա, ասելիքը բյուրեղանա:

Ինչու՞ 16—17 տարեկան մանչուկը, որ չորս կողմից գովեստներ է լսել իր արտաքին ու ներքին անհաշվելի հարստության վերաբերյալ, պետք է ունենար այդքան ուշիմություն, ուրիշներից սովորելու պահանջ և անհրաժեշտություն: Դա հաստատումն է մի ճշմարտության, որ պատանի Փափազյանի ներքին աշխարհի հասունությունը իր տարիքի համեմատ ավելի խորն է եղել: Թեև գիտենք նաև, որ Մուրադ-Ռափայելյան վարժարանի սան եղած ժամանակ բոլոր տեսակ անկարգությունների ոգին է եղել Փափազյանը, որից դաստիարակները կազատվեին սիրով, եթե նկատի չունենային նրա ուսումնական գերազանց առաջադիմությունը:

Փափազյանը եղել է անզուգական գեղեցկության տեր, ունեցել է անդիմադրելի հմայք, հրաշալի ձայն, բնածին խորաթափանց միտք, զգայուն սիրտ: Բնության այս հարուստ շնորհների հետ հասել է շատ մեծ զարգացման: Սովորել է մի շարք լեզուներ՝ ֆրանսերեն, իտալերեն, հունարեն, հին լեզուներից՝ գրաբար, լատիներեն, արաբերեն: Սրա հետ միասին իմացել է փիլիսոփայություն, պատմություն, հոգեբանություն, տրամաբանություն, բանաստեղծություն, նկարչություն, երաժշտություն, ճարտարապետություն, կրոնների պատմություն, նախ և առաջ՝ Աստվածաշունչ և Ղուրան, մի խոսքով՝ հանրագիտական լայն պատրաստություն, որ մինչև հիմա էլ զարմանք և հիացում է հարուցում:

Այս բոլորից բխում է մի շատ ուսանելի եզրակացություն. Փափազյանը եղել է մոլի ընթերցող, ուրեմն՝ անդուլ աշխատասեր:

Դիմենք հանճարների օրինակին:

Ով ծանոթ է Միքելանջելոյի կյանքի պատմությանը, նրան հայտնի պետք է լինի արվեստագետի ահռելի աշխատասիրությունը: Վկա՝ «Ահեղ դատաստանի» ստեղծման ժամանակները: Օրեր, շաբաթներ, ամիսներ շարունակ տախտակամածից չի իջել արվեստագետը, որ որմնանկարի: Ու՞մ հայտնի չէ, թե Տոլստոյը քանի անգամ է արտագրել իր «Պատերազմ և խաղաղություն» վեպի չորս հատորը: Նույնը և մյուս վեպերը:

Ուրեմն, ուսանելի եզրահանգում՝ եթե հանճար է, ուրեմն նաև աշխատասեր է:

Ես չէի շեշտի սա, եթե մեր այժմյան գեղարվեստական երիտասարդությունը ենթարկված չլիներ այն սխալ ազդեցությանը, թե ընթերցանությունը, մտքի զարգացումը, աշխատասիրությունը դատարկ բաներ են, կարևորը մարդու մեջ բնության դրածն է: Այո՛, իհարկե, հիմնականը կոչված լինելն է, բայց բնության պարգևած շնորհները կարիք ունեն մշակվելու, հղկվելու, խորանալու, այլապես օժտվածն իսկ կդատապարտի իրեն անհորիզոն կյանքի:

Հերքելու համար միայն բնությանն ապավինելու ցավալի հույսը, աչքի առաջ ունեմ հայ դերասանական արվեստի մեծագույն կյանքի այս օրինակը, որին բնությունը օժտել էր շատ ավելի, քան մի ուրիշին, ըստ էության ոչինչ չխնայելով: Եվ դրա հետ միասին, բնությունից առածը ճիշտ կառավարելու խելքն ու բնազդը, որ նրան հասցրին արվեստի կատարելության բարձրերը:

Բնական մի հարց է հետևում. ուրեմն, եթե այդպես է, Փափազյանին ծանոթ չեն արգելք, դիմադրություն, դավադրություն, դառնություն ու խափանում, որովհետև ինչ կամեցել է՝ կատարվել է, ինչ նպատակի որ հետամուտ է եղել՝ հասել է:

Բնավ ոչ:

Երբ 1915-ին հայրենի ժողովրդի համարյա կեսը բնաջնջվեց, ողբաց Փափազյանի սիրտը, չկային սիրելի անունները՝ Գրիգոր Զոհրապ, Երուխան, սրտագին ընկերները՝ Վարուժան, Սիամանթո... 20-ական թվականներին, երբ պետք է որոշվեր Փափազյանի կոչման հարցը, հայրենի հանրապետությունը հրաժարվել էր կոչում տալ, կոչում տվել է նրան վրացական եղբայրական հանրապետությունը: Որքան էլ մեծ լինեին Փափազյանի բեմական հաջողությունները, որքան էլ բախտավոր կյանքի ընթացքը՝ նա չէր կարող իրեն դժբախտ չզգալ, որ եղել է 1937-ի ողբերգության

ժամանակակիցն ու տեսել արվեստակից ընկերների, մեծ ու համբավավոր արվեստագետների կալանումը: Ահ ու վախի մեջ էր նաև ինքը, մանավանդ որ կասկածի տակ էին հատկապես արտասահմանում եղած մարդիկ: Հեգնանքի նման չէր, որ Երևանում 1944-ին կազմակերպվել է շեքսպիրյան համամիութենական փառատոն և Փափազյանը, որ պաշարված Լենինգրադում էր, չի հրավիրվել, թեև նույն փառատոնի ժամանակ Լևոն Քալանթարը հայտարարել է, թե իր մարմնավորած Մավրով Փափազյանը դարձել է «Օթելլոյի լավագույն դերակատարներից մեկը համայն աշխարհում»:

Հերոսական էջ է Փափազյանի կյանքում պաշարված Լենինգրադը, բայց նաև հոգեկան մեծ տառապանք— սով, չար բնազդների արթնացում, ավերմունք, չորս կողմը մահ, հարազատի կորուստ— դե արի ու վառ պահիր հավատի կանթեղը հոգուդ մեջ:

Մի՞թե թատրոնի պատմության մեջ կմոռացվի, որ պաշարված Լենինգրադից 1945-ին վերադարձած հայ թատրոնի մեծագույն արտիստը փակ է գտել իր առաջ մայր թատրոնի դռները և հնգամյա բացակայությունից հետո ստիպված է եղել Երևանում հանդես գալ որպես կոնցերտանտ: Մինչդեռ, մի կողմ թողած մեծագույն արտիստին, թվում էր, թե պետք է սրտագին հպարտությամբ, շուքով ու հանդիսավորությամբ շրջապատեին պաշարված Լենինգրադում հերոսացած Փափազյանին:

Ո՞րն ասեմ, որը չասեմ: Ավելի լավ է վերադառնանք բախտին:

Ի՞նչը ստիպեց ուսման մեջ Իտալիայում գտնվող Փափազյանին 1908-ին գալ Պոլիս և ներկայացում տալ: Ի՞նչ էր դա: Բախտի կույր ընթա՞ցք: Նա հիշում էր, որ Պոլսո հայ մտավորականությունը, լինեի առիթ թե ոչ, գալիս էր ուսումնական ավարտական հավաքույթներին՝ բեմից հայոց խոսք լսելու համար, քանի որ 30 տարուց ի վեր արգելված էին հայոց ներկայացումները Պոլսում, Թուրքիայում ընդհանրապես: Եվ ինչու չկարծել, թե 20-ամյա Փափազյանը հասկանում էր կամ գոնե զգում, որ սահմանադրության շնորհիվ ազատության խանդավառ մթնոլորտում ինչ էր լինելու հայոց լեզվով տված առաջին ներկայացման պատմական իմաստը:

1913-ին Փափազյանը հրավեր է ստացել Թիֆլիսից: Ինչու՞ է որոշել գնալ: Թող առոք-փառոք մնար ծննդավայրում, հարազատների, ընկերների ու իր ապահովված հաջողության հետ: Բայց նա սիրտ է արել ու գնացել: Գնացել է անծանոթ միջավայր, որտեղ կային շատ մեծ դերասաններ: Չկա՞ր, արդյոք, այստեղ պատմական փորձի ստույգ ըմբռնում: Ֆասուլաճյանները Կովկասում չեն մնացել: Մնակյանը եկել է ու վերադարձել: Նույնը՝ Գարագաշյան քույրերը: Մեծ գործի տեր եղան այս արտիստները, բայց չեղան այն, ինչ գուցե լինեին, եթե մնային Կովկասում: Բայց նրանց հակառակ՝ այդ բնական վճիռն ունեցան Ադամյանը, Սիրանույշը: Նաև ուրիշներ, որոնց մեջ՝ Արուս Ոսկանյանը և Հրաչյա Ներսիսյանը, որ իրենց անուններով զարդարեցին մեր բեմի պատմությունը: Սա ի՞նչ անվանենք՝ բա՞խտ, թե՞ սեփական կյանքի ճիշտ կառավարում:

Փափազյանը գիտեր, թե վիթխարի ինչ մեծություններ են Սիրանույշն ու Հովհաննես Աբելյանը: Գիտեր, որ Թիֆլիսում է հրաշքներ գործելու ընդունակ Հովհաննես Զարիֆյանը: Լսել էր Արշավիր Շահխաթունու գեղեցկության մասին: Ուրեմն՝ անխուսափելի էր լինելու գեղեցկության տիպար երկու այր դերասանների մրցակցությունը: Այս բոլորն իմանալով, Փափազյանը մեկնել է: Ի՞նչ էր սա՝ մեծամիտ ինքնավստահությու՞ն, թե՞ բնազդական ըմբռնումն այն բանի, որ իր ուժերը կզորանան մեծ արվեստագետների շրջապատում, ստիպված կլինի թևերը քշտել, հոգեկան աշխարհը միշտ արթուն պահել, լինել արտիստական կյանքի մի ընթացքի մեջ, երբ իր ներքին հնարավորությունները չեն ծուլանա, կյանքի կկոչվեն կրկնապատկված չափերով, ու ինքը կսովորի, կառաջադիմի՝ լավ իմանալով, որ այսօրվա չունեցածը վաղն իր անկապտելի սեփականությունն է լինելու:

Մի այլ փաստ:

Ասում են արվեստի մեծերը որքան հանդուգն, նույնքան էլ անհամարձակ են ու շատ բան չեն անի, եթե շրջապատը չմղի, սիրտ չտա, չոգևորի: Հիշենք Պետրոս Ադամյանի Օդեսա գնալու պատմությունը: Չէր կամենում գնալ, սրտում մի երկյուղ էր նստած Օդեսայի նկատմամբ, որ ցարական Ռուսաստանի թատերական կենտրոններից էր: Ընկերները հորդորելով, խաբելով են տարել Օդեսա: Եթե ռուս դերասան Ռոսսին չլիներ, եթե Փափազյանին ոգևորող հայ բարեկամները չլինեին, 1928-ին Փափազյանը կգնա՞ր Մոսկվա: Չէ՞ որ այդ շոնդալի հաջողությունն էր Լենինգրադ գնալու պատճառը, իսկ այնուհետև՝ Ռիգա, Տալլին, Փարիզ, Թեհրան:



Որքան էլ Փափազյանը վստահ լիներ իր վրա, որքան էլ նրան գոտեպնդած լինեին մոսկովյան և լենինգրադյան հաջողությունները, սիրտ կանե՞ր Փարիզում հանդես գալ Օթելլոյի դերով, այն էլ ֆրանսերեն, երբ ինքը լավ գիտեր, թե որքան դժվարահաճ է Փարիզը և որքան փառաբանված կուռքեր է վայր բերել: Բայց գնացել է և վերադարձել մեծ հաղթանակով: Սա ինչ է՝ բա՞խտ: Թե բախտ է և բախտի տնօրինում:

Փորձ անենք մի փոքր ավելի խորանալ Փափազյանի թատերական կյանքի երկու իրադարձության մեջ:

Նախ՝ Մոսկվան:

Մոսկվան շատ էր տեսել շեքսպիրյան ողբերգակներ, սկսած ամենահռչակվածներից՝ Թոմազո Սալվինի, Էռնեստո Ռոսսի, Մունե-Սյուլի, Այրա Օլրիջ... Ուրեմն՝ պետք էր կարողանալ եթե ոչ գերազանցել, ապա գոնե չզիջել: Դյուրին գործ չէր դա, և կարելի է հասկանալ արտիստի վարանումները. մեկ հանդգնությունն էր համակում նրան, ուզում էր նետվել բեմ՝ համոզված, թե կկարողանա շահել իրեն սպասող դժվարին ճակատամարտը: Մեկ էլ, ճիշտ հակառակը, պաշարում էր նրան տագնապ ու կասկած՝ ի վիճակի՞ է լինելու իրեն ենթարկել աշխարհահռչակ շատ արվեստագետներ տեսած հանդիսատեսին: Նա գիտեր, որ դա հաջողվել է իր մեծ նախնուն՝ Պետրոս Ադամյանին: Բայց նա հանդես էր եկել համեստ մի սրահում, իսկ այժմ իր վրա էր դրված մեծ պատասխանատվություն, բացառություն էր արված և տրամադրված էր Մոսկվայի Մեծ թատրոնը, և իրեն նայելու են ոչ թե մի քանի հարյուր մարդ, այլ երկու հազարից ավելի հանդիսատես:

Երկյուղի մի այլ պատճառ ևս ուներ: Ադամյանի և Փափազյանի ապրած թատերական դարաշրջանները տարբեր էին: Հյուրախաղերով հանդես եկող դերասանի ժամանակներն անցել էին, մշակվել էր թատերարվեստը որպես հավաքական ջանքերի ապարեզ՝ անսամբլային արվեստ, և հյուրախաղերը դիտվում էին իբրև դժվարությամբ նվաճվածի վնասակար խաթարում: Եվ հեղափոխությունից հետո, եթե չհաշվենք Սանդրո Մոիսիին, ապա 20-ական թվականների Մոսկվան չէր հիշում մեծությունների անհատական այցելություններ:

Վերջապես, տակավին զորեղ էր պրոլետկուլտական միտումը, որ ժխտումն էր ամեն տեսակի դասականի:

Մի խոսքով, ամեն ինչ, կարծես, Փափազյանի օգտին չէր: Ուրեմն՝ հայ ողբերգակը ինչպիսի ուժ ու զորություն պիտի ունենար հաջողության հասնելու համար՝ իր համար այդպիսի հակացուցիչ մթնոլորտում: Փափազյանը այս բոլորը հասկանում էր, բայց ուրիշ ելք չուներ, ոչ էլ՝ հետադարձ ճանապարհ: Ներկայացումները հայտարարված էին, փորձերը արված, տոմսերը վաճառված: Ուրեմն՝ մնում էր, իրավիճակի գիտակցությունն ունենալով, զգալ պատասխանատվություն՝ հասկանալով, որ իր «Օթելլոն» Մոսկվայի Մեծ թատրոնի բեմում սովորական ներկայացում չի կարող լինել: Փափազյանը բեմի այն վարպետներից էր, որոնք ընդունակ են հավաքագրել իրենց բոլոր ուժերը՝ և՛ միտք, և՛ սիրտ, և՛ կամք՝ նպատակին հասնելու համար:

«Իմ գիտակցության խորքում զգում էի,— հիշել է Փափազյանը տարիներ անց,— որ այդ գիշերվա ո՛չ հաղթանակը, ո՛չ էլ պարտությունը միայն իմը չէին և չէին կարող լինել. մի հնամենի բարի ու աշխատող ժողովուրդ կար կանգնած իմ հետև, և դափնեճյուղը, որը վճռել էի անպայման խլել, նույնքան նրանն էր, որքան իմը»:

Ահա այս պատասխանատվությունն ասեմ, թե ազգային խորհուրդը, որ երևի ժամանակին ունեցել է նաև Ադամյանը նույն Մոսկվայում կամ Պետերբուրգում, հարկադրել է Փափազյանին լարել իր տաղանդը մինչև հնարավորության վերջին սահմանները, և զգայնությունն էլ սրել այնքան, որ իր մտածած, քանիցս խորացված դերակատարությունը բեմական կյանք է առել այդ գիշեր: «Ինձ շատ քիչ անգամներ է հաջողվել այդպիսի մի արտիստ լինել, ինչպես այդ գիշեր»,— խոստովանել է Փափազյանը՝ մոսկովյան Օթելլոյի դերակատարումը հիշելիս:

Հաղթանակը Փափազյանինն էր այդ գիշեր: Նաև հայրենի ժողովրդինը: Ինչպես տասնամյակներ առաջ՝ Ադամյանին, այնպես էլ հիմա Փափազյանին հաջողվել է հաստատել, որ աստվածային դրոշմով է վավերացված հայ հանճարի ճակատը:

Տարբեր առիթներով շատ եմ բերել մոսկովյան մամուլից քաղվածքներ՝ հաստատելու համար, թե պատմական ինչ մեծ նշանակություն ուներ Փափազյանի մոսկովյան այցը: Երկու մեջբերում միայն. Նեմիրովիչ-Դանչենկոն Փափազյանին հռչակեց համաշխարհային փառքին արժանի ողբերգակ: Վերջապես՝ Միխայիլ Չեխովը, որ «այն ժամանակվա Մոսկվայի լավագույն դերասանն էր», որի մեծության առաջ շատ

հեղինակություններ են խոնարհվել, Փափազյանին դասել է իր ուսուցիչների շարքը:

Այս բոլոր պատմությունն անելով՝ ուզում եմ նույն հարցն արծարծած լինել. Մոսկվա գնալու և չգնալու, իր ոգևորության և տագնապների մասին անկեղծ պատմել է Փափազյանը: Ես հարց եմ տալիս՝ ինչպե՞ս եղավ, որ հաղթեց Մոսկվա գնալու հանդուգն որոշումը: Չլինեն Մոսկվան, թերևս չէին լինի լենինգրադյան հյուրախաղերը: Չէր հետևի դրան և փարիզյան այցը: Ուրեմն, մեծ արվեստագետի բնազդը միշտ ճիշտ է կողմնորոշում նրանց, մղում գեղարվեստական հանդգնությունների:

Այս բոլորը հասկանալի կլինի, եթե նկատի առնվի արտիստի խառնվածքը, որ չէր սիրում խաղաղ և անդորր ծով, սիրում էր փոթորկված ծովը, նրա ահ ու սարսափ ազդող ալեկոծումները, մութն ու անհայտը, երբ չգիտե, թե ինչ է սպասում իրեն՝ պարտությու՞ն, թե հաղթանակ...

Կարող եմ ասել, որ լենինգրադյան այցը ոչ պակաս նշանակալի էր, քան Մոսկվայինը, այն տարբերությամբ միայն, որ Մոսկվան բավականացավ Փափազյանի Օթելլոն տեսնելով, իսկ Լենինգրադի հանդիսատեսը տեսել է նրա նաև Համլետի, Քինի, Ուրիելի, Դոն-Ժուանի դերերի անձնավորումը: Այն էլ ասեմ, որ Լենինգրադը Փափազյանի Օթելլոյի մեջ համամարդկայինի հետ տեսավ ազգային ճակատագրի ցոլացում... Վերջապես, Լենինգրադում, ուր նա մնաց շուրջ կես տարի, ստեղծվեց փափազյանականների ընկերությունը:

Գանք Փարիզին:

Փարիզի հետ կապված է մի իրողություն, որ հաստատում է ասածս: Փափազյանը, որպես կանոն, միշտ ճիշտ է որոշել դժվարին վիճակներից դուրս գալու ելքը՝ միշտ հավատարիմ մնալով մեծ արվեստի պահանջներին, երբեք, կամ գրեթե երբեք, տուրք չտալով արվեստի հետ կապ չունեցող նկատումներին, զգուշությանը և հոգեկան այն տագնապներին, որոնք ի վիճակի են ճախրող արծվի թևերը կտրել:

1932-ի հունիսի 12-ին նշանակված է Փափազյանի «Օթելլո» ներկայացումը Փարիզի «Ատելյե» թատրոնում:

Ներկայացումը սկսվելուց առաջ սովետական դեսպանատնից զանգահարել են և խորհուրդ տվել՝ հիվանդության պատրվակով հետաձգել ներկայացումը, որովհետև մահափորձ էր կատարվել Ֆրանսիայի պրեմիեր մինիստրի վրա և, ըստ թերթերի մեկնաբանության, կոմունիստների գործն է դա: Ըստ դեսպանատան տվյալների՝ Փափազյանի այսօրվա ներկայացումը որոշված է ձախողել: Երկմտությունը մի պահ համակել է դերասանին, բայց կարճ ժամանակից նա որոշել է չնահանջել՝ ներկայացումը պետք է տեղի ունենա: Վարագույրը բացվելուց առաջ, Օթելլոյի զգեստ հագած և դիմահարդարված Փափազյանը դուրս է եկել բեմառաջք և, դիմելով հասարակությանը, իր անունից, ինչպես նաև այն երկրի ու ժողովրդի, որի ներկայացուցիչն էր ինքը Փարիզում, դատապարտել է մահափորձը:

Սկսվել է ներկայացումը և, ինչպես հայտնի է, ունեցել է անօրինակ հաջողություն:

Պատասխանատվությունը կրկնակի էր այստեղ: Եթե Մոսկվայում նա Հայաստանի պատվի պաշտպանն էր, ապա այստեղ, դրա հետ միասին, նաև՝ խորհրդային դպրոցի, որի ողբերգական ճյուղի հեղինակությունը հաստատելու խորհուրդն իր վրա էր:

Ես չեմ ուզում ո՛չ մեջբերումներ անել ֆրանսիական մամուլից, որ լի է հիացմունքի ու մեծարանքի ձևակերպումներով, ո՛չ էլ բացատրել դրա նշանակությունն ավելի, քան քիչ առաջ ասվածն էր, բայց, վերադառնալով արծարծվող խնդրին, հարց եմ տալիս՝ ինչու՞ Փափազյանը չենթարկվեց դեսպանատան առաջարկին: Երևի նրա այդ սրտոտ քայլի պատճառը արվեստի ուժի հանդեպ իր անդրդվելի հավատն էր: Ոչ թե մտածում էր, որ ինքը մեծ տաղանդ է, ուրեմն՝ բոլոր դռները բաց են իր առաջ: Ընդհակառակը՝ հավատարիմ իր խառնվածքին, նա գերադասել է փակ դռներ բացել, հրապուրել իր դեմ տրամադրված հանդիսատեսին: Ի վերջո, ինչպես արդեն ասվեց, համոզված էր, որ հանդիսատեսն անկարող է անտարբեր մնալ Մավրի անկեղծ սիրո և նրա կորցրած սիրո պատճառած խոր տառապանքի հանդեպ:

Եվ այդ գիշեր Փափազյանի արվեստը հանդիսատեսին տարել է իր հետևից ու շատերին՝ դյուրահավատ դեռատի պատանի լինի, թե կյանքի ճանապարհն անցած ծերունի, այր թե կին,— ստիպել է հոգեպես ցնցվել այն աստիճան, որ նրանք Օթելլոյի հետ սիրել են, Օթելլոյի հետ համահավասար տառապել և զգացել, թե ինչպես են արցունքները անարգել թափվում իրենց աչքերից...

Արվեստի մաքրագործող ուժն էր դա, որ իր հազվագյուտ թռիչքների պահին,



հրաշապատում լինելով, մարդկանց տուն է վերադարձրել մի հարստությամբ, որ չունեին մինչև թատրոն գալը...

Ինչու զարմանալ, որ թատերական Փարիզը ականկալել է մի նոր հանդիպում Փափազյանի հետ՝ հիացած լինելով, թե ինչպես է չափավորում իր ամենի բռնկումները արտիստը, ստեղծում Մավրի բյուրեղացած ավարտուն մի պատկեր, որի նմանը երկար տարիներ չէին տեսել:

Այս բոլորն ապացույց չէ՞ արտիստի ներաշխարհի նպատակամղման: Թատրոնից դուրս նրա համար կյանք չկար: Եթե Գյոթեի մտքերին արժեք տանք, իսկ ոչ մի հիմք չունենք իմաստունին չհավատալու, ապա այս սևեռուն կենտրոնացման ընդունակությունը պետք է ընկալվի որպես ընդունակությունների ընդունակություն, շնորհների շնորհ, ձիրքերի ձիրք, իբրև հիմքերի հիմք:

Այս առիթով հիշեմ Փափազյանի կյանքից մի բնորոշ օրինակ ևս:

Իր զրույցների ընթացքում Փափազյանը, տարբեր անգամներ, ասել է, թե երիտասարդ տարիներից նորավեպեր է գրել, եթե այդ բոլորը հավաքի, մշակի և հրապարակի, մի ստվար հատոր կլինի:

Հաճախ է խոսել իր նորավեպերի մասին, թեև դրանցից ոչ մեկը նա ասպարեզ չի բերել:

Հայտնի են նաև փաստեր, որ Փափազյանին խրախուսել են, ոգևորել, որ հրատարակի իր նորավեպերը, այսինքն՝ հանդես գա նաև որպես գրող: Բայց նա չի արել և չի արել երկար տարիներ, նույնիսկ տասնամյակներ և գրիչը ձեռքն է առել միայն 50-ական թվականների կեսերին՝ «Հետադարձ հայացքը» գրելու համար:

Ինչու՞ չի արել:

Չի կամեցել երկփեղկվել, երկպառակություն ապրել, կամեցել է ողջ ներքին աշխարհը կենտրոնացնել թատրոնի վրա, չշեղվել, անհավատարիմ չլինել, իմանալով կամ, գուցե չիմանալով, որ արվեստը՝ լինի թատրոն թե մի այլ ասպարեզ, խանդոտ է, չներող և պատժող:

Ի՞նչ է սա:

Իհարկե՝ կենտրոնացման խոր անհրաժեշտության ըմբռնում: Ո՛չ աջ նայիր, ո՛չ ձախ, միայն դեպի նպատակ, դեպի գերագույն նպատակ: Եթե սրան հավելենք և այն, որ, ի տարբերություն իր արվեստակից ընկերների, Փափազյանը չէր սիրում նոխ խնջույքներ, գինի և օղի, հարբեցողություն, նույնիսկ գինովցած վիճակ, ավելին՝ ներկայացման օրը կուշտ ստամոքս, համարելով դա հակաստեղծագործական վիճակ, ինչպես նաև սիրահար չէր խաղաքարտի կանչող սեղանների, ապա հասկանալի կլինի նվիրվածության այն անպատկերանալի պաշարը, որ նա ունեցել է թատրոնի հանդեպ:

Իսկ ինչու՞, այնուամենայնիվ, գրել ու հրապարակել է «Հետադարձ հայացքը»:

Փափազյանը գրիչը ձեռքն է առել, երբ տակավին Համլետի թիկնոցն իր ուսերին էր, Մավրի խալաթը վրան, բայց ինչ ասելու էր մարդկանց և աշխարհին այդ դերերի բեմական անձնավորումով, ասել էր արդեն, սպառվել... Բայց իր փոթորկաշունչ կյանքը պատմելու պահանջ ուներ, շատ ասելիք, տաք ու ջերմ հույզեր, խոր մտքեր և խորհրդածություններ՝ կյանքից, մարդկանցից, շրջապատից, գրքերից: Ու երբ թատրոնն իր կյանքում չուներ առաջվա հափշտակող ուժը, գրիչն առել է ձեռքը:

Փափազյանը միշտ էլ քաշել է հայրենի տան կարոտը: Նրան հաճախ են քննադատել օտարության մեջ շատ լինելու համար: Իր «Հետադարձի» շատ էջերում նա այդ մասին խոսել, բացատրել է, փորձել է հավատացնել, հազար ու մի պատճառ բերել՝ համոզված, որ իրեն կհասկանան ու ներողամիտ կլինեն:

Մի մեջբերում իր անկեղծ խոստովանությունից, որքան էլ դառն ու տառապալի, նույնքան հասկանալի, ուրեմն և՝ ներելի, եթե ներելու բան կա այստեղ:

... Ծակատագրի Ագասֆերն եմ ես, և մի՞թե արվեստը ճակատագիր չէ: Եվ եթե պանդուխտ է որդիդ, ինչ է, իր հոր զավակը չէ՞... Ներիր, հանցավոր չեմ, որ ուզեցել եմ բազում վաստակով տնից ներս մտնել, հարազատներիս ուրախացնելու: Լա՛վ հասկացիր այս մեկը, իմ մտերիմ, և մի՛ սրտմտիր, թե իրիկնամուտին եմ տուն վերադառնում, նիզը մի՛ դնի և կանթեղդ վառի դռան հետևում»:

Անկախ այն բանից, թե ինչ պահանջներ են իրեն ներկայացրել, արտիստը միշտ էլ զգացել է հայրենի տան կարիքը, իր համար պատգամ է համարել՝ չմոռանալ «խաղաղ ու հանգիստ հանգրվանը իմ հայրենի տան, ուր զգում էի, որ ես պետք է

վերադառնայի հաճախ, նորոգելու և ոչ միայն թարմացնելու համար իմ գոյության հիմքերը, այլև միշտ վարար պահելու համար իմ ոգևորության աղբյուրը»:

Իմ այս խոսքում Փափազյանի կյանքից հիշեցի այն փաստերը, որոնցից արվող եզրահանգումները ուսանելի են սկսնակ դերասաններին, ինչպես նաև բոլոր երիտասարդներին, անկախ նրանից, թե որպես ապագա ինչ ասպարեզ կընտրեն իրենց համար: Ուստի, հարկ եմ համարում, նաև խոր խրատական և օգտակար, հիշել այստեղ այն, ինչ բեմի անզուգական վարպետը կտակել է երիտասարդներին՝ որպես մաղթանք.

«Աշխարհը տեսնող աչքեր ունենալ: Իր ներքինը ճանաչել այնքան, որ հնար լինի ամենահեռու և ամենախոր արահետներով ինքն իր մեջ մտնել, անսայթաք քայլել առանց լապտերի: Անդուլ, անդադար մարդը սովորել, սիրել նրան, հասկանալ, ներել, հավատալ նրա գալիքին և նրանով էլ ոգևորվել և այդ ուսումը դարձնել իր հոգու միակ սնունդը: Անընդհատ հղկել, միշտ պատրաստ պահել իր սեփական արտաքին մարդը, իր ներաշխարհը՝ հանդիսատեսին միշտ հաղորդակից պահելու համար: Աչքեր ունենալ, որ հորիզոններ կարողանա գրկել, սիրել մեր լեզուն, հավատալ նրա անբավ հարստությանը և ուսումնասիրել նրա անցյալը՝ միշտ ավելի սուր, ավելի ճկուն դարձնելու համար լեզուն, այն զենքը, որը միակն է բեմական մարդու համար, թեկուզ հազարապատիկ բարեմասնություններով օժտված լինի դերասանը:

Ոգևորության աղբյուրներ որոնել, գտնել միշտ ինքն իր մեջ, առանց արտաքին խթանումների: Չհուսահատվել ո՛չ անկումներից, ո՛չ էլ գոռոզանալ հաղթանակներով. զգույշ, հեռատես վարքագիծ պահել դեպի հանդիսատեսը և նրա խնկարկումներն ընդունել միշտ խոնարհ սրտով և միշտ տոկոսով, միշտ հեռվից բարեկամություն անել նրա հետ, նրան միշտ քոնը և քեզ էլ նրանը պահելու համար: Արվեստը սիրել իր ողջ էությամբ, ոչի՛նչ չսիրել, բացի արվեստից, և նրան պաշտել այնքան ջերմեռանդ, նույնիսկ մոլեռանդ մի պաշտամունքով՝ իր ժամանակին կարենալու համար նրանից հեռանալ, նախքան նա հեռանա քեզնից: Եվ երբ հասնի այդ դժնդակ ժամը, չփաթաթվել նրա ոտներին, չխնդրել, չարտասվել, չփորձել նրան հետ վերադարձնել, և նրա պարգևած անբավ երջանկության համար լուռ ու խոնարհ սրտով երախտապարտ լինել նրանից:

Եվ, վերջապես, դու՛ք, իմ հոգու հարազա՛տ զավակներ, տարեք մայրենի բեմը ուսերի վրա անխոնջ, անսայթաք, մի՛շտ քաջ և մի՛շտ հաղթական և մի՛շտ արժանի զավակը մնալով նոր ժամանակների, բարձր պահելով մեր երջանիկ երկրի քաղաքացու կոչումը, որպես տիտղոսը բոլոր տիտղոսների»:

Ես չեմ կարող ասել, որ բերածս օրինակները, արձանագրածս փաստարկները պարզեցին, թե որն է տաղանդի կամ հանճարի սահմանումը: Բայց երևի մի բան անտարակույս է. Փափազյանի կյանքը թեև գլխապտույտ մի վազք էր և նրա ճանապարհները աշխարհի տարբեր ծայրերը իրար բերող մի կենտրոնացում, եղել է արվեստի և գեղեցկության տոն, թատրոն թատրոնում, երբ ողբերգականը և կյանքի ընկալման հեգնական հայացքը միախառնվել են: Եվ նրա կյանքը եղել է մի պատգամ, որի թարգմանությունը, իր իսկ խոսքերով ասած, իմաստավորվել է՝ աշխարհի որ անկյունում էլ լինի, չմոռանա հայրենի տունը: Շնորհները, որոնցով հպարտ է եղել միշտ հայ անհատը, սեփական բարօրության կամ անձնապաստ գոռոզության միջոց չի համարել: Փառքը տարածել է իր ժողովրդի վրա և ինչպիսի փառապսակ էլ կյանքը դրել է իր հպարտ ճակատին՝ ընդունել է որպես մի ավանդ իր ժողովրդից և, բազմապատկելով այն հարյուր տոկոսով, վերադարձրել է նրան, ով տվեց իրեն այդ շնորհը իր ծնված օրից:

Այս նույն խոսքերով բնութագրելի են այնպիսի դարակազմիկ դեմքեր, ինչպես Եղիշե Չարենցը, Մարտիրոս Սարյանը, Ալեքսանդր Թամանյանը: Փափազյանը, ինչպես այս մեծություններից որ մեկն էլ լինի, այն օղակն է, որից եթե բռնում ես, ապա աշխարհի և մարդկության ի տես է ներկայանում հայ արվեստի ոսկյա շղթան:

---

*Հանձնված է շարվածքի՝ 26.02.88 թ.: Ստորագրված է տպագրության՝ 28.03.88 թ.: ՎՖ 03880: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրությունը՝ բարձր, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակը՝ 16932: Պատվեր՝ 437:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան-23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:*